ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ՃԼԹ.

# ԵՐԵՄԻԱ ՉԵԼԵՊԻ ՔԵՕՄԻՒՐՃԵԱՆ

## ԿԵԱՆՔՆ ԵՒ ԳՐԱԿԱՆ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԻՒՆԸ

ՄԱՏԵՆԱԳՐԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ

ԳՐԵՑ

Հ. ՆԵՐՍԷՍ Վ. ԱԿԻՆԵԱՆ
ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ






ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1933

EREMIA ČELEBI

# KÖMÜRDJIAN

## SEIN LEBEN UND SEINE LITERARISCHE TÄTIGKEIT

EINE LITERARISCH-HISTORISCHE STUDIE

VON

P. NERSES AKINIAN

MECHITHARIST



WIEN

MECHITHARISTEN-BUCHDRUCKEREI

1933

# ԵՐԵՄԻԱ ՉԷԼԷՊԻ
# ՔԷՕՄԻՒՐՃԵԱՆ

ԿԵԱՆՔՆ
ԵՒ ԳՐԱԿԱՆ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԻՒՆԸ

**ՄԱՏԵՆԱԳՐԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ**

ԳՐԵՑ

**Հ. ՆԵՐՍԷՍ Վ. ԱԿԻՆԵԱՆ**
ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ



**ՎԻԵՆՆԱ**
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1933

ԲԱԶՄԱՎԱՍՏԱԿ

ԵՒ ԳՐԱԳԷՏ ԲԺԻՇԿԻՆ

ԴՐ. ՎԱՀՐԱՄ Յ. ԹՈՐԳՈՄԵԱՆԻ

ՅԱՆՄՈՌԱՑ ՅԻՇԱՏԱԿ

ԻՐ ՎԱՂԱՄԵՌԻԿ ՈՐԴԻՈՅՆ

ԱՐԱՄ Վ. ԹՈՐԳՈՄԵԱՆԻ

ԾՆԱԾ 22 ՕԳՈՍՏՈՍ 1891 Ի Կ. ՊՈԼԻՍ
† 9 ՆՈՅԵՄԲԵՐ 1933 Ի ԼԻՈՆ

ԿԸ ՁՕՆԷ ՍԳԱԶԳԱԾ

ՀԵՂԻՆԱԿԸ

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Դոկտոր Վահրամ Թորգոմեանի հրապարակի վրայ դնելով Երեմիա Չէլէպիի Ստամպօլոյ պատմութիւնը՝ առաւել ուշադրութեան արժանի ըրաւ ժէ. դարու վաստակաւոր մատենագիր մը, որ այնքան արդիւնաւոր եղած էր ազգային պատմութեան եւ հայ գրականութեան մատուցած իր ծառայութիւններով։

Թորգոմեանի մեղուաջան աշխատասիրութեամբ հաւաքած էր իւր յիշեալ աշխատութեան մէջ Երեմիայի կեանքին եւ գրական վաստակներուն հայող բազմաթիւ հին եւ նոր նիւթեր։ Բայց անոնք որովհետեւ յընթացս երկար տարիներու հասած էին իր ծանօթութեան, այս պատճառաւ ալ իր երկհատոր աշխատութեան մէջ տեղ գտած էին երկու եւ երեք խումբերով։ Որչափ ալ պրպտող եւ հարցասէր եղած է Թորգոմեան, բայց եւ այնպէս անմատչելի մնացած են իրեն կարգ մը ձեռագրական աղբիւրներ, որոնց օգտագործումը պիտի նպաստէր Երեմիայի կեանքին եւ գրական գործունէութեան առաւել լուսաւորութեան։

Ի սկզբան իմ մտադրութիւնս էր այս նոր նիւթերը համադրել եւ իբրեւ յաւելուած կցել Թորգոմեանի աշխատութեան Բ. հատորին։ Մերձենալով գործին նկատեցի շուտով, թէ օգտակար ծառայութիւն պիտի չմատուցանէի գիտութեան աղբիւրներու կցկտուր համա-

դրութեամբ․ աւելի նպատակայարմար համարեցայ ծանօթ նիւթերու յօրինուածական դասաւորութեամբ ամփոփ տեսութիւն մը տալ Երեմիա Չէլէպիի կեանքին եւ գրական գործունէութեան մասին։

Այս մտածմունքս տուաւ աշխատութեանս ներկայ ծաւալը։ Երբ լոյս կը տեսնէր այն՝ երեք մասով Հ ա ն դ է ս Ա մ ս օ ր ե ա յ ի էջերու մէջ[1], Նշանեան Մեսրոպ Սրբազան յԵրուսաղէմ ինքնաբերաբար հաճած էր հաղորդել ինձ մանրամասնութիւններ Երեմիայի գործերու Երուսաղեմեան ձեռագիրներու մասին։ Այս հաղորդագրութիւնները մեծապէս նպաստեցին լրացնելու Երեմիայի գրուածքներու ցանկը։ Քաղցր պարտք կը զգամ այս տեղ ալ յայտնելու Սրբազանին իմ խորին շնորհակալութիւնս։

Շնորհիւ թէ՛ այն յաւելուածական տեղեկութիւններու, զորոնք ընդունեցայ Մեսրոպ Սրբազանէն, եւ թէ՛ այն նոր անդրադարձութիւններու, զորոնք ունեցայ յօդուածաշարքիս հրատարակութենէն ետքը, հարկ համարեցայ ինչ ինչ փոփոխութիւններ՝ ուղղումներ եւ լրացուցումներ ներմուծել արտատպութեանս մէջ։

Յաւելուածները, զորոնք զետեղած եմ գործիս վերջը, նպատակն ունին մասամբ հրապարակի վրայ դնել Երեմիայի անտիպ գործերը, եւ մասամբ ծանօթացնել ընթերցողնե-

---

[1] Հանդէս Ամսօրեայ, 1932, էջ 510—536, 624—677․ 1933, էջ 94—114։

բուս Երեմիայի ոնր՝ չափական եւ արձակ գրութեանց մէջ: Այն տեղ տուած եմ նաեւ տեղեկութիւններ Երեմիայի մէկ քանի ձեռագիրներու մասին: Որովհետեւ Երեմիա հետաքրքրուած է Ապրոյեանց Ազգաքանութեամբ, փափագեցայ առանձին գլխով ներկայացնել այս տոհմին ազգաքանութիւնն ալ մինչեւ ԺԸ. դարու վերջը:

Չեմ համարիր, թէ հատորս լրիւ կը ներկայացնէ Երեմիա Քէօմիւրճեանի կեանքն եւ գրական գործունէութեան պատկերը: Եթէ գրգիռ ըլլար աշխատութիւնս ուրիշներուն, երեւան բերելու Երեմիայի անծանօթ կամ քիչ ծանօթ գործերը, ինձ հետ ուրախ պիտի ըլլայ նաեւ հայ բանասիրութիւնը:

Եթէ գրուածքս իւր ընդարձակութեան պատճառաւ չկրցաւ մասը կազմել Դկտ. Թորգոմեանի աշխատութեան, պիտի փափաքէի որ գոնէ առանձին հատորով լոյս տեսած ժամանակ կապուած ըլլար մտերիմ բարեկամիս ազնիւ Անուան հետ. այս պատճառաւ ալ երկս կը նուիրուի բազմավաստակ Բժիշկին՝ բարեկամական յարգանաց հաւաստեօք:

Երբ կը յանձնէի տողերս թղթի, անակնկալ բօթ մը կու գար զուժել յարգոյ Բարեկամիս սիրասնունդ որդւոյն Արամի մահը: Ծնողաց սուգին ազակից թոյլ կու տամ ինձ արձանագրել հանգուցելոյն անունն ալ Յուշարձանիս վրայ, յանմոռաց յիշատակ անոր բարեհամբաւ Անձին:

Վիեննա, 16 Նոյեմբ. 1933:

# ՑԱՆԿ ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԵԱՆ



## ՅԱՒԵԼՈՒԱԾ

# ԵՐԵՄԻԱ ՉԵԼԵՊԻ ՔԷՕՄԻՒՐՃԵԱՆ

## ԿԵԱՆՔՆ ԵՒ ԳՐԱԿԱՆ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԻՒՆԸ

### 1. ԱՂԲԻՒՐՆԵՐ

Երեմիա Քէօմիւրճեան ինքնին աղբիւրն է իր կենսագրութեան համար իր ինքնագիր աշխատութիւններուն մէջ: Այդ աշխատութիւնները սակայն, դժբախտաբար, ըստ էական մասին կը մնան գիտութեան անմատչելի, պահուած Երուսաղէմի Ս. Յակոբեանց եւ Վիեննայի Մխիթարեանց Մատենադարաններուն մէջ: Այս պատճառաւ ալ թերեւս վաղաժամ է դեռ փորձը ձեռնարկել գրել ամբողջական կենսագրութիւն մը: Առձեռն նիւթերը սակայն, զորոնք ի մի հաւաքած է Թորգոմեան Երեմիայի Ստամպօլոյ պատմութեան կցած Ներածութեան եւ Վերջաբանին, նաեւ Ծանօթագրութիւններուն մէջ, եւ դարձեալ անոնք, որոնք այլ եւ այլ տպագիր եւ ձեռագիր աղբիւրներէ ծանօթ են ինձ, կու տան համարձակութիւն գոնէ ամփոփ տեսութիւն մ'ընելու հեղինակի մը մասին, որ կէս դար շարունակ ապրեցաւ հայ կեանքի բազմավրդով մէկ միջավայրի մէջ, ոչ միայն իբրեւ դիտող, այլ եւ իբրեւ գործօն անդամ: Իբրեւ

այսպիսի արդէն իսկ հրաւիրած է Երեմիա ուշադրութիւն իր վրայ եւ այսպէս շատերն ունեցած են առիթ ի մերձուստ եւ ի հեռուստ զբաղելու անով :

Ունիմ աչքի առաջ հետեւեալ գրութիւնները, որոնք խօսած են Երեմիայի վրայ ընդարձակ կամ համառօտ .

1. Հ. Մ. Չամչեան, Պատմութիւն Հայոց, Գ. (Վենետիկ 1784), էջ 723 եւն:

2. Աւգէրեանց Գերապայծառ Ստեփաննոս վարդապետ, Ալլահըն ապիզ քուլու Քէօմիւրճեանց տէր Կոմիտաս քահանայնըն վարքը վէ նահատակութիւնու: Թրեստէ 1798, էջ 9—11:

3. Mons. Placido Sukias Somal, Quadro della storia letteraria di Armenia. Venezia 1829, p. 159—160.

4. C. F. Neumann, Versuch einer Geschichte der armenischen Literatur. Leipzig 1836, էջ 251—252:

5. Հ. Մատթէոս Վ. Մաղաք—Թէոփիլեան, Կենսագրութիւն երեւելի արանց. Հատոր Ա. Վենետիկ 1839. հմմտ. Թորգոմեան, էջ 731—732:

6. Հ. Գ. Զարպհանալեան, Պատմութիւն Հայերէն դպրութեան, Բ. Վենետիկ 1878, էջ 442—444. Բ. տպ. 1905, էջ 360—362:

7. Տրդատ Վ. Պալեան, Երեմիա Քէօմիւրճեան. Բիւրակն 1898, էջ 611—613:

8· Հ. Ղ. Ալիշան, Հայապատում, Վենետիկ 1901, Մասն Ա., էջ 336—337:
9· Հ. Ս. Երեմեան, Երեմիա Չէլէպի, Տարեգրական պատմութիւն. Բազմավէպ, 1902, էջ 367—369, 473—479:
10· Լէօ, Հայկական տպագրութիւն. Ա. հատոր, Բ. տպ. Տփղիս 1904, էջ 366—378:
11· Յ. Գ. Մրմրեան, Ստուերք հին դէմքերու. Կ. Պոլիս 1908, էջ 5—11:
12· Երեմիա Չէլէպի. Անահիտ, 1903, էջ 188—192:
12ա. Մեսրոպ Վ. Նշանեան, Օրագրութիւն Երեմիա Չէլէպի Քէօմիւրճեանի. Շողակաթ Ս. Էջմիածնի, հայագիտական ժողովածու. Գիրք Ա. Վաղարշապատ, 1913, էջ 47—65:
13· Մաղաքիա արքեպ. Օրմանեան, Ազգապատում, Բ. Կ. Պոլիս 1914, էջ 266—267:
14· Ո. Կ., Ծանօթութիւնք ինչ զմարուց Երեմիայ Չէլէպւոյ յերանելոյն Կոմիտասայ յեղբօրէ իւրմէ: Բազմավէպ, 1926, էջ 197—198:
15· Դոկտ. Վ. Թորգոմեան, Երեմիա Չէլէպիի Քէօմիւրճեան Ստամպօլոյ պատմութիւն: Վիեննա, Ա. հատոր, 1913. Բ. հատոր, 1932: Արտատպուած Հանդ. Ամսօրեայ ուսումնաթերթէն. 1908—1931: Մկրտիչ եպ. Աղաւնունի, Միաբանք եւ այցելուք հայ Երուսաղէմի. Երուսաղէմ 1929, էջ 135—137:

## 2. ՔԷՕՄԻՒՐՃԵԱՆ ԸՆՏԱՆԻՔԸ

Քէօմիւրճեան տոհմին ծագումը այսպէս կը ներկայացնէ Երեմիա իւր հօրը՝ Տ. Մարտիրոսի վրայ երգած Գանձին մէջ[1].

Սեռից տեսակից սա ի մեծ գարմից
յազնուականից.
Նախ յԱրեւելից, ի պապանց տոհմից
գան յԱրեւմտիս,
Ի Դարանաղիս բնակեալք ի շինիս
անուամբ Խօճայից.
Անդ յորդւոց յորդիս զարմ եւ զաւակից
ըստ ժամանակից.
Յետոյ ճէլալից, նեղութեանց վշտից
չուեալ հայրն անտից.
Գայ ի կողմանիս, ի Կելիպոլիս
տեսեալ զծնունդն արուիս:
Մինչ նոր հանգստիւ, նոր օթեւանից,
տրոհեալ եւ յաստից:

Դժբախտաբար ցանկալի պայծառութեամբ չէ բացատրած Երեմիա իւր միտքը, թէ ի՞նչ կը հասկնայ «յԱրեւելից» ըսելով. Պարսկակա՞ն Հայաստանն ընդհանրապէս, թէ Ազուանից աշխարհը մասնաւորապէս կամ Գանձակ քաղաքը: Յամենայն դէպս Տաճկահայաստանը Արեւմուտք համարելով՝ Արեւելքը Պարսկական իշխանութեան տակ գըտ-

[1] Թորգոմեան, էջ 750:

նուած հայկական գաւառներու համար բռուած ընդհանուր բացատրութիւն մ'առնելու է:

Անոնք «յԱրեւելից» գաղթած են Դարանաղիք եւ հաստատուած Խօճայից գիւղը: Այս անուամբ չէն կամ գիւղ ի Դարանաղիս ծանօթ չէ ինձ: Ավքէրեան, եւ իրեն հետեւելով ուրիշներ՝ Քէօմիւրճեան ընտանիքին նախահայրերու բնակավայրը ցոյց կու տան Ակն (Էկին) քաղաքը: 1640ին Սարգիս դպիր Մահտեսի Ամբակումի յանձնարարութեամբ եւ ծախքով կ'օրինակէ ի Կ. Պոլիս Յայսմաւուրք մը «ի դրան սրբոյն Սարգսի զօրավարին եւ որդւոյն նորա Մարտիրոսին». ուր կը խնդրէ յիշել յաղօթս «զԿամխայ երկրէն ի գեղջ(էն) Ապուշտայ զտէր Մարտիրոս քահանայն, որ բազում աշխատանք ունի վասն Այսմաւուրքիս եւ վերակացուն նա էր[2]»: Խօսքը առանց տարակուսի Քեօմիւրճեան տէր Մարտիրոսի, Երեմիայի հօրը մասին է. ուստի պիտի հետեւցնենք թէ Քեօմիւրճեան ընտանիքի իսկական հայրենիքն էր Դարանաղեաց Ապուշտայ գիւղը:

Կ'երեւայ թէ գիւղիս մէջ երկար դադար առած են Քէօմիւրճեանք. վասն զի «անդյորդւոց յորդիս» աճած եւ բազմացած են:

ԺԶ. դարու վերջին քառորդին, երբ Ճէլալիները իրենց ասպատակութիւններով եւ հարստահարութիւններով քանդեցին եւ աւե-

[2] Ճանիկեան, Հնութիւնք Ակնայ, էջ 97—98:

րեցին օսմանեան պետութեան արեւելեան
նահանգները, անտանելի դարձուցին հայա-
բնակ վայրերու մէջ կեանքը. ինչպէս շատ
Կամախեցիներ, նոյնպէս Ապուշտայ գիւղի
բնակչութիւնը թողուցին իրենց տունն ու
տեղը եւ գաղթեցին դէպի արեւմուտք՝ սուլ-
թաններու քաղաքին հովանաւորութեան տակ
հանգիստ փնտռելու: Կամախեցիները ըստ
մեծի մասին հաստատուեցան ի Ռոդոստոյ.
ուրիշներ, որոնց թուին մէջ նաեւ Քէօմիւր-
ճեանք դադար առին ի Կէլիպօլի: Սիմէոն
դպիր Լեհացի 1611ին, երբ կ'այցելէր Կէլի-
պօլի, «կացաք անդ, կ'ըսէ, ամիս մի, զի
շատ հայ կայր. հաբեղայ մի եւ էրէց. եւ ի
տաշխանն օտայ մի ժամ կ'առէին»[3]:

Երեմիա Չէլէպի չի յիշեր յանուանէ Կէ-
լիպօլի գաղթող Քէօմիւրճեան տոհմին ան-
դամները: Ավքէրեան[4] կը պատմէ թէ ԺԸ.
դարու երկրորդ քառորդին, երբ Աթանաս
եպիսկոպոս եւ երանելի Տ. Կոմիտասի թոռ-
նիկը՝ պարոն Կոմիտաս ի խնդիր եղան Քէօ-
միւրճեան ընտանիքի ճիւղագրութեան մասին
տեղեկութիւններ հաւաքելու, նոյն ընտանիքի
կենդանի շառաւիղներէն լսած են թէ անոնց
նախահայրն եղած է Սարգիս, որմէ ծնած է
Նահապետ եւ անկէ Մարտիրոս՝ Տ. Կոմի-

---

[3] Ուղեգրութիւն. Հանդ. Ամս., 1932, էջ 681: Հմմտ. եւ Գրիգոր Դարանաղեցի, Ժամանակագրութիւն, էջ 484:

[4] Ավքէրեան, 9:

տասի հայրը[5]. եւ թէ անոնք 1600էն քիչ յետոյ Ակնէն գաղթած եկած հաստատուած են Կ. Պոլիս: Այս տեղեկութիւններու մէջ կան ճիշդ եւ անճիշդ կէտեր: Քէօմիւրճեանց սերումը Ակնէն ուղիղ է միայն Տ. Կոմիտասի մայրական գծին համար: Իսկ միւս կէտերու մէջ միաբանութիւն մը գտնելու համար Երեմիայի տողերուն հետ, որոնք անշուշտ աւելի հաւատարիմ են, պէտք է ըսել, թէ Սարգիս Դարանաղիքէն հեռացած է իբր 1590ին. եկած է Կէլիպօլի եւ հոն վախճանած: Իր որդին՝ Նահապետ մնացած է հոն մինչեւ իր կնոջ մահը, որմէ ետքը միակ որդւոյն Մարտիրոսի հետ տեղափոխուած է Կ. Պոլիս:

«Քէօմիւրճեան» անշուշտ գաղթականութեան մէջ ժառանգուած տոհմանուն է, Սարգսի գործածած արուեստէն այսպէս կոչուած: Նահապետ կ'երեւայ թէ երէց էր. եւ թերեւս նա ըլլայ Սիմէոն դպրի 1611ին տեսած երէցն ի Կէլիպօլի: Իւր Ստամպօլոյ պատմութեան մէջ կը յիշէ Երեմիա «Քէօ-

---

Տէր Կոմիտասի իտալերէն գրուած վարքի մը մէջ, զոր ունիմ աչքիս առաջ ձեռագիր, կ'ըսուի թէ «Nahabiet figlio di Sergio fu il primo degli Ascendenti di Der-Comidas, che abbandonato Eghin, si trasfesi in Costantinopoli circa l'anno 1623 e quivi abitando nel quartiere detto Vlanga, ebbe per prote un figlio e quattro figlie, cioè Mardiros, Ascghin, Choran, Sofia e Gariane». այսինքն Նահապետ ունեցած է մէկ ուստր եւ չորս դուստր, որոնք են՝ Մարտիրոս, Աշխէն, Խորան, Սոփիա եւ Գայիանէ: Այլուստ անծանօթ:





միւրճի պապա» մը, որ երէց կ'երեւայ եւ կարող է նոյնացուիլ Երեմիայի պապին՝ Տ. Մարտիրոսի հօրը (Նահապետի) հետ. կ'ըսուի[6].

«Իրիցներն օր մի միաբան
ի ծովս ինչ շրջիլ խնդրեն,
Հետ տարեալ զՔէօմիւրճի պապան...

Ծովասէր նաւորդները կը հանդիպին «Պոստանճու պաշուն» բարկութեան, որ կը հրամայէ գանալից ընել երէցները կարգաւ.

Գայ կարդ Քէօմիւրճի պապին,
որ սկսաւ զմօրուսն ղօվական,
Բայաթ արա՛ ալեացս իմ՝
զի գալն իմ ընդ այսց յակամայն:

Ճչվալ տայ թէ դու ծեր ես,
ի խրատել զդոսա պարտական.
Պարապ մի գնար յինէն,
քեզ պաղչիչ բիրք իմ չորս միայն»:

Ու Քէօմիւրճի պապան երէցներու հետ խառն իր ծովագնաց պտոյտը կ'ընէ, կը հետեւի թէ նա եւս երէցներու թուին մէջ էր, սպիտակացեալ ալեօք:

Ի Կէլիպօլի կը ծնանի Մարտիրոս, Երեմիայի հայրը: Դեռ չորս տարեկան էր Մարտիրոս, երբ կ'որբանայ. Երեմիա կը գրէ[7].

---

6 Թորգոմեան, 104:
7 Թորգոմեան, 750:

*Եղեւ որբացեալ հայրս մեր անուանեալ*
*Մարտիրոս կոչեալ․*
*Չորս տարւոյ մնացեալ, յարհեստ շատ փոխեալ,*
*մինչ յարբունս հասեալ։*

Այս տողերէն որոշ չի հասկցուիր, թէ ո՞վ է մեռնողը, Մարտիրոսի հա՞յրը թէ մայրը․ հաւանօրէն մօրը մահուան մասին է հոս խօսքը։

Ընտանեկան յարկին տակ տեղի ունեցած այս փոփոխութիւնը պատճառ կ՚ըլլայ, որ Մարտիրոս, անշուշտ իր հօրը հետ, հեռանայ Կէլիպօլիէն։ Կը տեղափոխուի Կ․ Պոլիս․ ուր կը ձեռնարկէ այլ եւ այլ գործերու։ Թէ իր աշխատասիրութեան եւ թէ բարեկրթութեան պատճառաւ «շատերուն սիրելի» կ՚ըլլայ։ Երբ յարբունս կը հասնի, կ՚ամուսնանայ բարեկամներու յորդորմամբ․ Երեմիա կը գրէ[8]․

*Բազումք սիրեցեալ եւ յոմանք ժտեալ*
*կարգ յաշխարհ մտուցեալ․*

Կին կ՚առնէ Ակնեցի հացագործ Ամբակումի քրոջ դուստրը՝ Յուղիտան[9]։ Այս նկատմամբ կը գրէ Մարտիրոս ինքնին[10]՝ խօսելով Ամբակումի բարեգործութիւններու

8 Անդ։
9 Ավքէրեան, 11․ այլուր անյիշատակ թողուած։
10 Թորոս Աղբար, Բ․ 403։

մասին. «Եւ զհարազատ քեռն իւրոյ զդուստրն ետ ինձ՝ Մարտիրոս երէցիս հրամանաւն Աստուծոյ ի կնութիւն»:

Ծանօթանանք հոս մահտեսի Ամբակումի հետ:

Ժամանակակիցները միաբերան կը հիւսեն մահտեսի Ամբակումին գովութիւնը[11], որ իւր բարեգործութիւններով բազմավիշտ ժամանակին հայ ժողովրդեան մխիթարութիւնն եղած է եւ իբրեւ այսպիսի հռչակը հնչուած նաեւ շատ հեռուներ: Նա հովանաւորած է Տ. Մարտիրոսը, Երեմիայի հայրը. իսկ զԵրեմիա նոյն իսկ որդեգրած է: Կարեւոր կը համարիմ այս տեղ ի մերձուստ նկատի առնել անոր անձը:

Տ. Մարտիրոս կը գրէ անոր մասին.

«Մահդասի Ամբակումս բարեմիտ եւ հաւատարիմ այրս էր ի բնիկ յԱկնայ ձորակէն՝ ի գեղջէն որում Նավրէր կոչիւր, ի մանկութենէ որբացեալ ի ծնողաց, որոց տէր Քրիստոս ողորմեսցի. եւ յաղագս անճարակութեան եւ աղքատութեան եկեալ ի քաղաքս Ստամբօլ եւ բազում վշտաց եւ տառապանաց տարեալ, ի գործս հացեփեցութեան օտարաց ծառայելով, մինչ յարբունս ի կարգ աշխարհիս ամուսնացեալ, եւ այլ իմիք ոչ կարաւտացաւ՝ բայց յանդաւակութենէ: Զի հաւատամ որ Աստուած էր վերակացու տան

[11] Աղաւնունի, 14—15:

սորա ըստ Աբրահամու, զի ձրի ընկալեալ եւ ձրի շնորհէր եկեղեցեաց, վանօրէից, աղքատաց եւ կարօտելոց, զոր եւ տէրն ամենայնի ընկալցի» [12]» :

Իսկ Երեմիա կը գրէ [13]· «Սա ի ժամանակի Ծելալոց հարբ իւրով գայ յայս աշխարհ (Կ· Պոլիս) մտեալ ի հացագործութիւն պետ լինէր նոցա եւ երեւելի ի քաղաքիս: Զիք վանք որ գլխատակ նորա ոչ վայելէ: · · · Յաւուրս սորա փոքր մասն քաղաքիս պակասաւորք սփոփէին ի ձեռս տրոց սորա: · · · Պատուեցաւ ի մեծէն Փիլիպպոսէ եւ հրաւիրեցաւ թէ եկեսցես յԵրուսաղէմ, զի ի միասին արասցուք զուխտն»:

Էջմիածնի Թ· 348 Աստուածաշունչը [14], զոր Ամբակում օրինակել տուած է Փիլիպպոս կաթողիկոսի համար, յիշատակարանին մէջ այսպէս կը ներկայացնէ Ամբակումի տոհմածառը·




[12] Թորոս Աղբար, Բ· 403:

[13] Տարեգրութիւն, հմմտ· Թորգոմեան, 145:

[14] Տեսած եմ 1925ին· յիշատակարանը, զոր օրինակած եմ քաղուածաբար, տե՛ս էջ 219—224· հմմտ· M. Brosset, Rapports sur un voyage archéologique, St.-Pétersbourg 1849, t. I, p. 34—35:

Մանուշակ, Վարդեծոց եւ Թուրվանտ Ամբակումի քոյրերն են․ թէ ո՞ր քրոջ դուստրն է Յուղիտա, Մարտիրոսի կինը եւ Երեմիայի մայրը, ծանօթ չէ:

Մարտիրոսի ամուսնութիւնը տեղի ունեցած է 1636ին: Ամբակում 1634ին ուխտագնացութիւն մը կատարած էր Երուսաղէմ․ վերադարձէն ետքը, «յետ ամաց զհարազատն (զհայրն) մեր առաքէ առ հայրապետն (Երուսաղէմի առ Գրիգոր Պարոն–Տէր յԵրուսաղէմ)՝ առնելով քահանայ»․ այսպէս կը գրէ Երեմիա իր Տարեգրութեան մէջ[15]: Իսկ Օրագրութեան մէջ[16] աւելի կը ճշդէ այս դէպքին ժամանակը․ «Այս աստուածասէր (Ամբակում) առաքէ զհարազատն իմ յԵրուսաղէմ յետ ծնանելոյ չուառխ ամսոց երից․ եւ գրէ առ Հայրապետն, զի ձեռնադրեայ քահանայ: Եւ յորժամ եկն՝ զամենայն ընթրիսն տեսեալ (Ամբակումայ, ասէ) թէ յանուն ննջեցելոց իմոց մատուցի պատարագ»: Նոյնը կը կրկնէ ինքնին Տ․ Մարտիրոս թէ մահտեսի Ամբակում «մեր անարժանութիւն (արժանի առնելոյ) քահանայութեան ի սուրբ քաղաքն Երուսաղէմ ձեռամբ Գրիգորի սուրբ հայրապետին փոխեցելոյն առ Քրիստոս († 1648), մահտեսի հայրս ինքն եղեւ (պատճառ), որոյ մասն շնորհաց հոգեպէս յինքն

15 Թորգոմեան, 145:
16 Թորգոմեան, 754:

կրեսցէ. ամէն»[17]: Երեմիա երրորդ անգամ կ'անդրադառնայ այս դէպքին իր հօրը մահուան առթիւ երգած Գանձին մէջ[18].

«Ի Սադիմ յղեալ, տէր Գրիգորն ընտրեալ,
Հայրապետն յարեալ,
Նա եւս ընկալեալ, երկու ամս պահեալ,
ընտրեալ եւ փորձեալ,
Էրէց ձեռնադրեալ եւ նամակ շնորհեալ,
եւ կղձս իր գրեալ.
Ամանաթ իմ լեալ հազարապատկեալ,
զնորընծայդ պատուեալ,
Զի ըստ Աստուծոյ է իմ պղա օրհնեալ,
այսպէս ծանուցեալ»:

Այս տուեալներու համաձայն Մարտիրոս ամուսնացած է 1636ին. անդրանիկը ծնած է 13 Մայիս 1637ին. մեկնած է Երուսաղէմ 1637 Յուլիսին եւ ձեռնադրուած է 1638/39ին[19]:

Տէր Մարտիրոս կ'ունենայ երեք արու եւ մէկ աղջիկ զաւակ. անդրանիկն է Երեմիա (ծնած 13 Մայիս 1637), միջինն է Գէորգ եւ կրտսերն՝ Կոմիկ. իսկ դստեր անունն է Երիճեկ, այն է Իրենէ:

---

17 Թորոս Աղբար, 403:

18 Անդ, 750—751: Երեմիա կ'երեւայ թէ աչքի առջեւ ունեցած է Գրիգոր պատրիարքի ձեռնադրութեան կոնդակը:

19 Պալեան, Բիւրակն, 1897, էջ 611 կը գրէ. «Տէր Մարտիրոս անուամբ քահանայ ձեռնադրուած է Ս. Երուսաղէմի մէջ 1638ին, ձեռնադրութեամբ Գրիգոր Պարոն–Տէր... պատրիարքին Երուսաղէմի»:

Գէորգ կ'երեւայ թէ հօրը մահէն ետքը քահանայացաւ եւ կոչուեցաւ Մարտիրոս[20]. ըստ Ավքէրեանի Մարտիրոս կարգուած է Ս. Աստուածածին Եկեղեցւոյ աւագ քահանայ[21]: Իսկ Կոմիկ, այն է Կոմիտաս, նոյնպէս քահանայացաւ եւ նշանակուեցաւ Սուլու Մանաստիրի Ս. Գէորգ Եկեղեցւոյ աւագերէց, որ եւ ապա նահատակուեցաւ (1707):

Տէր Մարտիրոս կը քահանայագործէր Վլանկայի Ս. Սարգիս եկեղեցւոյ մէջ[22]: 1651ին, երբ Եղիազար Այնթափցի Կ. Պոլիս կու գայ եւ «յոյժ հռչակեալ գովեցաւ քաղցրաբան վարդապետութիւն եւ անձանձիր քարոզութիւն եւ գեղեցիկ ըստ Աստուծոյ քաղաքավարութիւն վարդապետիս, մինչ զի հարկեալ յիշխանաց եւ ի ռամկաց նաեւ յայլազգի երեւելեաց քաղաքիս բռնութենէ՝ տարի եւ

---

[20] Ավքէրեանի անծանօթ մնացած է Գէորգ. բայց գիտէ Տէր Կոմիտասի միջին եղբայրը Մարտիրոս անուն: Հոս անպատճառ անուանափոխութիւն մը պէտք է ենթադրել՝ Գէորգ = Մարտիրոս: 1664ին որովհետեւ տակաւին չէր քահանայացած Գէորգ, յիշուած է աւազանին անուամբ. բայց հօրը՝ Տ. Մարտիրոսի մահէն յետոյ երբ հրաւիրուած է ձեռնադրութեան, կ'երեւայ թէ իւրացուցած է հօրը անունը: Պէտք չէ շփոթել Երեմիայի «հարազատն իմ» ասութենէն եւ ուր խօսքը իր «Տէրտէրի», այն է հօրն մասին է՝ մերձեցնել համանուն եղբօր: Ըստ այսմ իմանալու է Թորգոմեան, 140 եւ 729—730: Տես վարը էջ 142:

[21] Ավքէրեան, 9:

[22] Թորգոմեան, 719—720, ուղղելով էջ 139 յայտնուած կարծիքը, թէ «ի Սամաթիա, Ս. Գէորգ պատրիարքանիստ եկեղեցւոյ մէջ» կը պաշտօնավարէր: Հմմտ. եւ Ավքէրեան, 10, ուր Տ. Կոմիտասի ծնունդը «Վլանկա սէմթինտէ» կը նշանակուի:

կէս ի պատիւ պատրիարքութեան հոգեւոր առաջնորդ եկաց ի քաղաքս: Եւ զբաղում պէսպէս եղծեալ եւ ապականեալ զկարգ եկեղեցւոյն վերստին պայծառացոյց· ընդ նմին եւ զպարտք պատրիարքարանին եւ այլ նորադիւտ չարիք որ ի վերայ ժողովրդեան եւ եկեղեցւոյն ի բաց բարձան յաւուրս առաջնորդութեան վարդապետիս, եւ համօղեալ զամենեսեան պահեաց խաղաղութեամբ ոչ կարօտացեալ այլազգեաց հրամանի կամ իշխանութեան, այլ իւրովի կարողութեամբ եւ հանճարովն վարէր զամենայն· այսքան սիրեցեալ եղեւ ի բազմաց: Եւ մեք Ս. Սարգիս եկեղեցւոյս տէր Մարտիրոս եւ տէր Ովանէս քահանայքս... հարեալ էաք ի սէր վարդապետիս եւ միշտ ընդ նմա շրջէաք զցայգ եւ զցերեկ անանջատ կալով յեկեղեցական եւ յայլ ծառայական գործ [23]»:

Տողերս գրուած են տէր Մարտիրոսի բերնէն 1651ին «ի դուռն Ս. Սարգսի զօրավարին եւ որդւոյ նորա Մարտիրոսին» ի Կ. Պոլիս, ի ձեռն Յովհաննէս դպրի, մահտեսի Ամբակումի յանձնարարութեամբ Տիգրանակերտի Բարձրահայեաց Ս. Աստուածածին վանքին համար օրինակուած Յայս[illegible]օրին յիշատակարանին [24] մէջ, որուն ստացիչը [illegible]ի ըլլար Եղիազար վարդա-

---

23 Թորոս Աղբար, [illegible]

24 Տես ամբողջութեամբ [illegible] Աղբար, Բ. 398—402:

պետ, առաջնորդը լինելով վանքին։ Տէր Յովհաննէս եւ Տ. Մարտիրոս երկու հաւատարիմ եւ մտերիմ ընկերներ էին, նոյն գաղափարներով ոգեւորուած։

Նոյն տարին Խաչատուր, Յովհաննէս եւ Մարտիրոս քահանաները կ՚օրինակեն եւ կը մանրանկարեն ուրիշ Յայսմաւուրք մ՚ալ Փիլիպպոս կաթողիկոսի համար։ Յիշատակարանին մէջ կ՚ըսուի. «Արդ գրեցաւ սա ի մեծ... քաղաքն Կ. Պօլիս, ի դուռն Ս. Սարգսի զօրավարին եւ որդոյ նորա Մարտիրոսին ի թվականիս մերում Ռ եւ Ճ. ի սոյն ամի լրացելոյ, ի հայրապետութեան տեառն Փիլիպպոսի, արժանապէս բազմեցելոյն ի նոյնում աթոռի, որոյ զընծայս նուիրեցաք»։ Ձեռագիրը կը պահուի այժմ Էջմիածին, Թ. 1502։

Յաջորդ տարին, երբ Փիլիպպոս Կաթողիկոս Կ. Պոլիս եկաւ, անուանուեցաւ Տ. Մարտիրոս «մեծ երէց», ինչպէս կը գրէ Երեմիա, իւր Գանձին մէջ[25].

Մեծն ի կարգն յարգեալ, Փիլիպպոսն գովեալ,
հայրապետն ընտրեալ,
Յորժամ աստ եկեալ, մեծ էրէց կարգեալ
եւ պատուասիրեալ.
Հայր հանուրց եղեալ, բարունեաց ազդեալ,
եւ այնք ընկալեալ.
Իշխանք սիրեցեալ, ժողովուրդ բերկրեալ,
ռամիկք մեծարեալ։

---

25 Թորգոմեան, 749—753։

Այս նկատմամբ աւելի բացայայտ են Երեմիայի տողերը Օրագրութեան մէջ, ուր յառաջ բերելով Փիլիպպոս Կաթողիկոսի 1653 Մարտ 26ին Ս. Նիկողայոս Եկեղեցւոյ մէջ խօսած հրաժեշտի քարոզին բովանդակութիւնը կը գրէ[26] «...եւ վասն հարազատին իմոյ ասաց թէ Տէր Մարտիրոսն Ս. Սարգսայ՝ ինձ վէքիլ եւ աւագերէց Ս. Էջմիածնայ, որպէս զի ի վերայ զանձանակին լիցի եւ նորին ձեռամբն հասանիցէ ինձ»:

Անշուշտ նախ եւ յառաջ մահտեսի Ամբակումի փեսան էր որ կը պատուուէր Կաթողիկոսէն. բայց Տ. Մարտիրոս ալ իր բարի համբաւով ձգած էր իր վրայ կաթողիկոսին եւ ժողովրդեան վստահութիւնն եւ սէրը:

Երեմիա, որ այնպէս մանր դէպքերու եւ դիպուածներու արձագանգն ու ժամանակը կ'արձանագրէ իր Տարեգրութեան եւ Օրագրութեան մէջ, ինչպէս կ'երեւայ դիտմամբ լռութիւն պահած է իր հօրը մահուան ժամանակի մասին. որ պէտք է պատահած ըլլայ 1664էն ետքը եւ 1666էն յառաջ. վերջին Թուականին գրած Յիշատակարանի մը մէջ, զոր Ապրօ Չէլէպիի խնդրանքով կցած է հնագիր Աւետարանի մը վերջը, իր ծնողքը արդէն մեռած գիտէ[26].

---

26 Ան[illegible]

Զծրնօղս իմ տեսի մեռաւ
եւ զծնունդս եղին ի տապան,
Զհամայն եկեալսն գիտացի,
զի այնպէս յաշխարհէս անցան:

Հօրը մահուան առթիւ երգած է Երեմիա Գանձ մը, ուր այսպէս կը գրուատէ Տ. Մարտիրոսի առաքինութիւնները[27].

Քաջաջան կանգնեալ, ամենայնք հաճեալ,
համայնց ձօն գտեալ.
Զի անուն ստացեալ, յաշխարհ տարածեալ
եւ փառաւորեալ.
Որբոց հայր եղեալ, այրեաց նպաստեալ,
պանդխտաց օգնեալ.
Զօտարս ժողովեալ, պաշտօնաւորեալ,
իբրու զառաքեալ:
Ի վաղճան հասեալ, յաշխարհ համբարեալ
Քէմուրճիս կոչեալ...

Երիցուհին Յուդիտա մեռած էր արդէն՝ 1663ին: Այս մասին կը գրէ Երեմիա[28].

ՌՃ Երկոտասան (1663) թուականն հասեալ,
Եւ մեր այրէն որ ի քաղաքըս մնացեալ,
Մերս սիրեցեալ պատահեաց յոյժ վշտացեալ,
Եւ բօթ մահու կսկծաբեր մեզ հանդիպեալ,
Ծնողիս մերոյ յանկարծ ուրեմըն վախճանեալ,
Անտանելի սուգ եւ աղէտ մեզ պաշարեալ:

---

27 Թորգոմեան, 750—751:
28 Վիպասանութիւն յԱպրօ Չէլէպի. տե՛ս Թորգոմեան, 721:

Զայս կ'ակնարկէ նաեւ Տ. Մարտիրոս 1664, Սեպտ. 14ին առ Եղիազար կաթողիկոս յԵրուսաղէմ թղթին մէջ[29]. «...ի Քեզ յանձնեմ զգաստասանն իմ. զերեխայն Կօմիկ ո՞րպէս թողում, եւ զպակասաւորն Երինեկ ո՞րպէս յետս ընկրկեմ, եւ որ զայն՝ զայլսն յաչաց կորուսանեմ, զի վրան նոցին տառապեցաւ որ պահէրն ի ջերմութենէ եւ սայլանն ի ծըւէնս հերձաւ, զի ծածկէրն ի ցրտոյն եւ անդառնալին ճանապարհ յերկարեցաւ եւ ի հող լուծաւ սգալից տունն արարեալ. պակասեցան որդիքն ի մօրէն եւ անտիրացան ի գորովոյ ծնողացն»: Խօսքը առանց տարակուսի Երիցուհւոյն մահուան մասին է:

## Յ. ԵՐԵՄԻԱ ՉԷԼԷՊԻ ՔԷՕՄԻՒՐՃԵԱՆԻ ԿԵԱՆՔԸ

Քէօմիւրճեան տոհմին վերջին առու չաւաւիղն էր Մարտիրոս: Անիկա պանդխտութեամբ եկած էր Կ. Պոլիս բախտ որոնելու: Շատ արուեստներ փորձած էր պատանին. այս առթիւ ծանօթացած էր նաեւ հայագործ, կարողութեամբ եւ բարեգործութիւններով անուանի մահտեսի Ամբակումի հետ: Սա տեսնելով պատանւոյն ուշիմութիւնն եւ յաջողակութիւնը, կ'առնէ զանիկա իբրեւ փեսայ իւր քրոջ դստեր՝ Յուղիտայի՝ իւր տունը: Այն տեղ երիտասարդ զոյգը կը վայելէ մահ-

[29] Սիոն, 1932, էջ 278—280. Հրտ. Մ. Եպ. Նշանեան. Հմմտ. եւ Թորգոմեան, 730:

*տեսի Ամբակումի սէրն եւ խնամքը առատութեամբ: 1658ին, Նոյեմբ. 23ին, երբ իր մահուան անկողնին մէջ էր Ամբակում, ինչպէս կը գրէ Երեմիա[1], կ'ուղղէր անիկա իր փեսային եւ դստրիկին հետեւեալ խօսքերը.*

*Ա՜յ էֆէնտի, հոգի եւ ճան տէրտէր իմ,*
*Զկարգս բոլոր կատարիա եւ զկըտակ իմ...*
*Իրիցկին դու, քաղցրիկ իմ դուստր, բարով*
*մնայ:*

*Տողերս ցոյց կու տան, թէ ո՛րքան անձուկ եւ սեռն էր սիրոյ կապը մահտեսի Ամբակումի եւ Քէօմիւրճեան ընտանիքի մէջ:*

*Այսպիսի յարկի տակ կը տեսնէր մանուկն Երեմիա արեւի առաջին լոյսը: Ծննդեան տարին եւ օրը հաղորդած է ինքնին Երեմիա իր Օրագրութեան մէջ[2]. «ՌՃԵ (1656), Մայիս 13. օրս գժթ. տարին լցի եւ ի Ի. տարին մտայ. այլ այս չէ՛ պարծանք, թէ կու մեծանամք, այլ այն լիցի՝ որ բարեխօսութեամբ սուրբ Աստուածածնին զմիտս եւ զսիրտս մեր փոխեմք ի բարին եւ ի նոր առաքինութիւնն մտանեմք, որպէս որ զհին տարին լցաք եւ ի նորն մտաք»: Ասկէ կը հետեւցնէ իրաւամբ Թորգոմեան, թէ «Երեմիայի ծննդեան ճիշդ ժամանակն է 1637*

---

[1] *Թորգոմեան*, 746:

[2] *Անդ*, 719: *Հմմտ. նաեւ էջ* 141. 1645*ին «յամն ինններորդ նոր էի մտեալ» կը գրէ Երեմիա իր Տարեգրակ*[illegible]*տմութեան մէջ:*

Մայիս 13, շաբաթ, ըստ նոր տոմարի 1637 Մայիս 22, երկուշաբթի»: Սոմալեան[3] եւ ուրիշներ կը նշանակէին՝ 1635:

Մանկան ծնողքը խնդութեամբ ողջունեց իւր անդրանկին ծնունդը. խնդաց մանաւանդ զաւակասէր, բայց անծնունդ Ամբակում, որ ունեցաւ համարձակութիւնը խնդրելու երիտասարդ զոյգէն նորածինը իրեն որդեգիր: Իւր մօրեղբօր բարի փափագը չուզեց մերժել տիկին Յուղիտա, եւ առանց ընդդիմանալու տուաւ իւր հաւանութիւնը պարոն Մարտիրոս: Մանկան հայրն է, որ կ՚արձանագրէ 1651ին տողերս, թէ «զանդրանիկ որդեակն իմ, մերս յօժարութեամբ, զԵրեմիա դպիրս, շնորհեալ եմք ինքեան (մահտեսի Ամբակումի) որդեգրութեան»[4]: Փոխարէն այս շնորհին մահտեսի Ամբակում իւր որդեգրին ծնունդէն երեք ամիս ետքը ճանապարհ կը հանէր իւր փեսան յանձնարարական գրերով առ Գրիգոր Պարոն–Տէր յԵրուսաղէմ, խնդրանօք որ հաճի ձեռնադրել քահանայ: Երկու տարի յետոյ Տէր Մարտիրոս կը վերադառնար օծուած յիւղ անոյշ (1638/39):

Երիցուհւոյն կաթով կը սնանի Երեմիա. եւ կրկին ծնողաց խնամքին տակ կ՚աճի եւ կը զարգանայ ի Վլանկայ Կ. Պոլսոյ, ուր ունէր Ամբակում իւր բնակարանը, եւ կը պաշ–

---

[3] Quadro, 159:
[4] Թորոս Աղբար, Բ, 403:

տօնավարէր Տ. Մարտիրոս, իբրև երէց Ս. Սարգիս եկեղեցւոյ:

Ինը տարեկան էր տակաւին երբ սկիզբ կ'ընէ «սովորել դպիրս ի ձեւսն աշխատելով»: Հետաքրքրական է լսել այս շրջանէն յիշողութիւն մը, զոր գրի կ'առնէ Երեմիա իւր Տարեգրական պատմութեան մէջ. խօսելով 1645ի Կ. Պոլսոյ մեծ հրդեհի մասին, որուն զոհ կ'երթայ նաև Հայոց Ս. Նիկողայոս եկեղեցին, կը գրէ Երեմիա. «Յորժամ շրջեցուցանէին զիս պապն իմ եւ հայրն իմ զձեռանէ կալեալ... Թաքնաբար ընդ նոցին հեղեղացն արտասուաց եւ ես լայի, զի յամն իններորդ նոր էի մտեալ. զի՞նչ ես կարէի յայնժամ զտեսեալն իմ ի գիր առնուլ տհասս մտօք, թէպէտ նոր էի սկսեալ սովորել դպիրս ի ձեւսն աշխատելով»[5]:

Մանուկ Երեմիայի դաստիարակութիւնը կը յանձնուի տէր Յովհաննէսի խնամքին. որ բարենախանձ եւ քաջագրիչ անձնաւորութիւն մ'էր, համախորհուրդ պաշտօնակից մը տէր Մարտիրոսին Ս. Սարգիս եկեղեցւոյն մէջ[6]: 1660ին Աստուածաշունչի յիշատակարանին մէջ[7] կ'ըսուի. «Եւ նոյն ինքն Երեմիան բարի ժառանգ նորին (Ամբակումայ) եւ ուղղաշաւիղ շառաւիղն հանդերձ հարազատ ըստ մարմնոյ ծնօղաւ իւրով Մարտիրոս իրիցաւ եւ

---

5 Բազմավէպ, 1903, էջ 368. Թորգոմեան, 141:
6 Տես վերը, էջ 25—26:
7 Ձեռ. էջմ. 348, Թղ. 604 բ:

վարժապետաւն տէր Յովաննիսի *քահանայիւք, որ էին գործակալ ի վերայ բարի արդեանց առն Ամբակումայ»: Կը գրէ նաեւ ինքն Երեմիա* 1670*ին Կրետէի Ս. Յովհ. Մկրտիչ Եկեղեցւոյ կոնդակին մէջ*[8]. *«Յիշեցէք...* զմարմնաւոր ծնօղն մեր զտէր Մարտիրոս քահանայն, եւ ըստ հոգեկանին զտէր Յովաննէս քահանայն: Եւ եւս զստացողն մեր յիստեանց՝ ի մօր ազգառուէ զպապն եւ ծնօղ եւս հոգեպէս զմահտեսի Ամբակումն, որք բազում երկասիրութեամբ երախտաւորեցան ի վերայ մանկահասակ տկար տհասութեան մերում տքնեցուցանել ի մարգարանս գրոց մակացութեան. *որ վասն սերտ սիրոյ եւ աղօթից նոցա տէրն տերանց՝ առատաձիրս շնորհեաց...»:*

*Ուշիմ եւ աշխատասէր ի բնէ՝ արագ կը յառաջանայ Երեմիա տէր Յովհաննէսի առաջնորդութեամբ դրագիտութեան մէջ:* 1656*ին սկիզբ կ՚ընէ սորվելու տաճկերէն լեզուն. իւր Օրագրութեան մէջ, նոյն տարւոյն ապրիլ* 15*ին կ՚արձանագրէ. «Եւ օրս պրծայ զՏաճկաց «էլիփպէն» եւ մտայ ի նոր բան, որ կոչի «ամմէ» եւ «դէլիֆն» ըստ Բչի ըսկսայ ի յողորմութիւնն Քրիստոսի ապաւինելով. զի բազում անգամ ի մանկութենէ ի հետ հարկեալ ի ծնօղաց եւ շատ նախատինս կրեալ վասն բանիս, զի պիտանի էր հանապազ. եւ*

---

[8] *Գրութեանս մասին պիտի խօսինք յետոյ առանձին:*

այժմու ձեռս արկաք բանիս. միթէ Աստուած յառաջացուցէ»: Շողակաթ, էջ 54:

Տէր Մարտիրոս իր 1651ի յիշատակարանին մէջ կ'անուանէր իր որդին «դպիր»: Ուստի կ'երեւայ թէ Երեմիա ժամանակի անբարի սովորութեամբ 12—13 տարեկան հասակին արդէն ընդունած է եկեղեցական չորս փոքր կարգերը. աւելի բարձր կարգերու չմերձեցաւ Երեմիա. այս նկատմամբ լսենք իր անձին խոստովանութիւնը, գրի առնուած Օրագրութեան մէջ[9]. «ՌՃԵ (1656) ապրիլ 12 Շբ. օրս Վարդապետն (Եղիազար) ասէր Տէրտէրիս (տէր Մարտիրոսի) թէ ‘րե՛ր որ աւագ սարկաւագ օրհնեմ, նուաստիս համար. եւ Տէրտէրս ոչ է առնեալ կամք. եւ իրիկունս ասաց ինձ Տէրտէրս եւ ես այլ չկամեցայ[10]. քանզի կարողութիւն պիտի քաշելու», այսինքն կարեւոր է արժանաւորութիւն ունենալ բառնալու քահանայական կոչման պարտականութիւնները, որուն համար անբաւական զատած է իր ուժերը Երեմիա:

Տասներեք տարեկանին հազիւ թեւակոխած էր Երեմիա, երբ իր պապը՝ մահտեսի Ամբակում զինքը հետը առած կ'երթար ուխտի Երուսաղէմ, հոն Փիլիպպոս կաթողիկոսին պատահելու, «լուսեղբայր» ըլլալու[11]:

---

9 Թորգոմեան, 720:

10 Սխալ է հետեւաբար Ալքէրեանի տեղեկութիւնը (էջ 10) թէ «Երեմիա Ս. Գէորգ Եկեղեցւոյ աւագ սարկաւագ» եղած ըլլայ:

11 Այս ուխտագնացութեան կ'ընկերանային Կ. Պոլ-

*Իւր Տարեգրական պատմութեան մէջ այս ճանապարհորդութեան մասին այսպէս կ'արձանագրէ Երեմիա*[12]. *«Պատուեցաւ (Ամբակում) ի մեծէն Փիլիպպոսէ եւ հրաւիրեցաւ, թէ Եկեսցես յԵրուսաղէմ, զի ի միասին արասցուք զուխտն: Որ եւ սուրբն Փիլիպպոս յամեալ եղեւ եւ ինքն ել՝* տանելով ընդ իւր եւ զիս *ի Թվականին ՌՂԸ»* (1649): *Գրեթէ տարի մը կ'երկարի այս ուղեւորութիւնը.* 1650, *մայիս* 27*ին կը վերադառնան բարեաւ Կ. Պոլիս. «ՌՂԹ, մայիս* 27, *ընդ մտանել արեգական մտաք եւ մեք ի քաղաքն մեր եւ գնացեալ յեկեղեցի Ս. Սարգսի եւ անտի ի տուն ամենայն բարեկամօք»*[13]:

*Փիլիպպոս կաթողիկոս չէր կրցած նոյն տարին հանդիպիլ Երուսաղէմ. երկու տարի ետքը միայն ի գլուխ հանեց իւր ուխտը. վերադարձին հանդիպեցաւ Կ. Պոլիս* (1652). *«Եւ ի դառնալ Փիլիպպոսի ՌՃ եւ Ա յԵրուսաղէմէ ի Ստամպօլ՝ սորա (Ամբակումայ)*

---

*սոյ վեց եկեղեցիներէն* 90 *անձեր, ինչպէս կը պատմէ Երեմիա իւր Օրագրութեան մէջ. հմմտ. Աղաւնունի,* 135:

[12] *Թորգոմեան,* 147: *Հմմտ. եւ Տէր-Յովհաննէսեանց. Պատմ. Երուսաղէմի. Ա.* 347. *«Գրէ (Երեմիա) ի տաճկաբարբառ գիրս իւր ընդդէմ Յունաց՝ այսպէս Հապէշք ի տաճարն Ս. Յարութեան ի Թափօրէն զկնի Հայոց չրջին... եւ նա ինքն Երեմիա Չէլեպի յուխտաւորութեան անդ իւրում ինքնին բացեալ է զդուռն մատրան Ս. Աստուածածնի (յանուն Մարիամու Եգիպտացւոյ) ի ներքոյ մատրան Լատինաց, ի դաւթի տաճարին Ս. Յարութեան, եւ լուցեալ զկանթեղս նորա յերեկոյեան ժամուն»:*

[13] *Օրագրութիւն, հմմտ. Թորգոմեան,* 721:

բաղում սէր եցոյց. եւ սա Աստուածաշունչ մի ոսկեզարդ ընծայ նմա շնորհեաց»: Այս թանկագին Աստուածաշունչի օրինակութիւնը հազիւ 1660ին աւարտեցաւ եւ ուղարկուեցաւ Փիլիպպոսի յաջորդ Յակոբ Կաթողիկոսին[14]:

Փիլիպպոս կաթողիկոս, որ մտերմացած էր տէր Մարտիրոսի հետ, իր առատաձեռնութենէն նաեւ Երեմիայի բաժին կը հանէ. կ՚արձանագրէ Երեմիա (Օրագրութիւն, յամին 26 Ապրիլ 1653). «ինձ ետ մի փէշկիր մահրամա՝ չինած» (Ծողակաթ, 60):

Յաջորդ օրը (27 Ապր.) կը կատարէ կաթողիկոսը փոքրիկ ծովային ճանապարհորդութիւն մը դէպի Պրուսա: Ճանապարհին իրեն հետ էր Երեմիա[15]:

1657ին յարբունս հասած էր արդէն Երեմիա. եւ կ՚ամուսնանայ: Իր կնոջ անունը անծանօթ կը մնայ մեզի:

Մահտեսի Ամբակումի փափագն էր, որ առաջին առու զաւակը յաւազանէ անուանակոչուէր Ամբակում: Բայց մահտեսին մեռաւ Երեմիայի անդրանիկին ծնունդէն վեց ամիս յառաջ († 1658, Նոյեմբ. 23)[16]: Ի մահն

---

14 Ձեռ. էջմ. թ. 348: Հմմտ. Թորգոմեան, 747, ծ. 25:

15 Ծողակաթ, էջ 60: Կը յիշէ նաեւ Սամպօլոյ պատմութեան մէջ. Թորգոմեան, 104—105. հմմտ. եւ 148:

16 Տապանագիրն՝ Երեմիայէն յօրինուած՝ տե՛ս Թորգոմեան, էջ 739:

Մահտեսի Ամբակումի երգած Ողբին մէջ կը գրէ Երեմիա հանգուցելոյն բերնէն[17].

Ա՜յ սիրասնունդ որդեակ իմ դու Երեմիա, …
Քեզ Աստուած որդեակ արու յորժամ տայ,
Խնդրեմ զանունըն Ամբակում անուանեա՛,
Անզաւակիս զյիշատակ միշտ պահեա՛:

Նոյն իմաստով կ՚ըսուի նաեւ Աստուածաշունչի յիշատակարանին մէջ (Էջմ., Թ· 348)· «Այնքան էր կամք նորա առ ի սէր եւ ի ջան յիշատակի· քանզի անկարօտ գոլով յամենայնէ բաց ի մարմնական ծննդոց, որ եւ պահէր առ իւր ի տանէ զսիրասունն Երեմիաս զաւակ ըստ հոգւոյ առնելով· ուստի եւ ի նոյն փոյթ եւս ոչ շատացեալ զնոյն եւ առնէր անդարձ· Եթէ տացէ քեզ Աստուած որդի, յանուն իմ լիցի անուն նորին· վասն զի մի ջնջեսցի անունն իմ ի միջի ձերում եւ ազգաց յազգս առ յաղինս ձեր: Ուստի եւ ի լրանալ զկնի վախճանելոյն նորին, յամսեանն վեցերորդի, ետ Աստուած արու զաւակ Երեմիայի, որ եւ Ամբակում կոչեցաւ ըստ կտակի ծերունոյն Ամբակումայ, զոր եւ տէր Քրիստոս անփորձս եւ ամբողջս պահեսցէ յերկար ամօք»: Երուսաղէմի Թ· 1042, Թղ· 37 ա Գր· Կեսարացւոյ ի մահն Սրապիոն կաթողիկոսի Ներբողին վերջը կը կարդամ· «Եւ զեղկելի գրողս Ամբակում զպըրիկս (յիշեցէք)· եւ որք

[17] Թորգոմեան, 748:

յիշեալ լինիջիք եւ վարձս ի Քրիստոսէ առնուցուք : ամէն : ամէն : ամէն» : Չեմ կասկածիր թէ սա Երեմիայի որդին է․ ուստի Ամբակում բարեաւ աճած է եւ դպրութեան հասած : Ձեռագիրը, որ ըստ մեծի մասին Երեմիայի ինքնաձեռագիրն է, գրուած ըլլալու է ոչ յառաջ քան 1680 :

Որովհետեւ Երեմիայի «անդրանիկ որդին» Գրիգորիս վարդապետն է, կ'երեւայ թէ Ամբակում քահանայութեան ժամանակ անուանափոխուած եւ կոչուած է Գրիգորիս :

Բաց ի Ամբակում-Գրիգորիսէ ունեցած է Երեմիա երկու զաւակ եւս՝ Յովսէփ, որ 14ամեայ կը կորուի արեւէն[18], եւ Մաղաքիա, զոր 1686ին կը յիշէ Զաքարիա Սարկաւագ[19] իւր բարեկամներու թուին մէջ․ «զԲիւզանդացի պարոն Երեմիայ զիտնականն եւ զորդի նորա զՄաղաքիա պատանի զնկարիչ պատկերաց եւ զոսկեծաղիկ արարող, որք են բուն բարեկամք ինձ թչուառացեալ Զաքարէիս» :

---

[18] Երեմիայի Օրագրութենէն «Կ'ուսանինք, կը գրէ Թորգոմեան (էջ 726) թէ երկու արու զաւակ ունեցած է (Երեմիա) եւ նաեւ աղջիկներ : Անոր անդրանիկ զաւակն էր Գրիգորիս վարդապետ, որ Եղիազարի կաթողիկոսութեան ժամանակ Էջմիածին կը մնար, Հայրապետին հովանաւորութեան տակ․ բայց յետոյ կը վերադառնայ ծնողացը քով՝ Կ․ Պոլիս, ուր կը վախճանի ծաղիկ հասակի մէջ : Երկրորդ արու զաւակն էր Յովսէփ, որ վաղամեռիկ եղած է 14 ամսու» : Չորս նամակ ունի Երեմիա գրուած իւր որդւոյ մահուան առթիւ, որոնք չեն հրատարակուած տակաւին․ Հմմտ․ Թորգոմեան, 726—727 :

[19] Ձեռ․ Էջմ․ Թ․ 158, թղ․ 365 ա :

Կը գրէ նաեւ Երեմիա (Ալիշան՝ Այրարատ, 174).

Էր ընդ իմ եւ որդին իմ
որ Մաղաքիա անուանեալ,
ԶԱստուածաշունչ ծաղկէր
սուրբ Յովհաննավանքս հռչակեալ:

Մինչ այս թուին կը յիշուի Էջմիածնի մէջ Մաղաքիա մը, որ մանրանկարած է Նահապետ Կաթողիկոսի գրել տուած Աստուածաշունչը (Ձեռ. Էջմ. 349). յիշատակարանին մէջ կ՚ըսուի. «Բայց ոսկէնկար յօրինեցաւ ի յերկիրս արեւելեան, ընդ հովանեաւ սրբոյ եւ մեծի աթոռոյս Էջմիածնի եւ սրբոյն Յովհաննու Կարապետի (Կարբւոյ), որ ի գաւառիս Արարատեան, ձեռամբ Մաղաքիայի որ ի քաղաքէն Կոստանդնուպօլսէ»: Խօսքը առանց տարակուսի Երեմիայի որդւոյն մասին է: Մաղաքիա 1686ին պատանի է տակաւին. թէ ի՞նչ եղաւ այս թուականէն ետքը իր բախտը, կը լռէ պատմութիւնը: Կայ Երեմիայի ժամանակակից, անոր «ծանօթ եւ մտերիմ[20]» Մաղաքիա դպիր մը «որդի Գրիգորի եւ թոռն Թորոսի, ի Ձնքուշ աւանէ՝ Խարբերդ գաւառի սահմաններէն»[21]: Սա հաւանօրէն կապ չունի Երեմիայի որդւոյն հետ:

---

[20] Չամչեան, 723:
[21] Հայապատում, Ա. § 141:

Երեմիայի գուսարներու անունները անծանօթ կը մնան :

Մահտեսի Ամբակումի մահը լացաւ Երեմիա : Անոր բարեմիտ եւ բարեգործ անձնաւորութեան շատ բան կը պարտէր Երեմիա, եւ առ հասարակ Քէօմիւրճեաններու սերունդը : Ամբակում իր կտակակատարը նշանակած էր Տ. Մարտիրոսը. որ երկար ժամանակ եղած էր իր գործակալը : Անշուշտ Երեմիա որդեգրութեան իրաւունքով եղաւ ժառանգ Ամբակումի ստացուածներու, ինչպէս եւ պարտքերու : Ի մէջ այլոց կը կտակէ Երեմիայի.

Ա՛ռ, սիրելի իմ, գլխաչս սրբոյն Հռիփսիմեայ,
Քեզ յօգնութիւն. ի վերայ քո լաւ պահեա՛.
ԶԱստուածաշունչն հոգեւոր Տեառն ընծայեա,
Վասն իմ հոգոյս աղօթեսցէ, բարով մնայ :

Երբ Փիլիպպոս կաթողիկոս Կ. Պոլիս կը գտնուէր, խնդրած էր մահտեսի Ամբակումէն, որ իրեն համար Աստուածաշունչ մը գրել տար. Ամբակում յանձն առած էր : Օրինակութիւնն եւ մանրանկարումը աշխատաւորներու անհոգութեամբ — Երեմիա կ՚անուանէ զանոնք «պարսաւելի նոտարք քաղաքիս եւ ծաղկողք» — երեք չորս տարի կը ձգձգուի : Փիլիպպոսի մահէն ետքը (1655) յաջորդն Յակոբ Ջուղայեցի կը յիշեցնէ մահտեսի Ամբակումին իր նախորդին տուած խոստումը. ինչպէս կը գրէ Երեմիա իր Օրագրութեան

մէջ՝ օրինակութեան այս յետաձգութիւնը սրտի ցաւ կ՚ըլլայ Ամբակումին, որ մահուան անկողնոյն մէջ իր շրջականերուն կ՚ուղղէ խօսքերս. «Ո՜վ փառաւոր որդեակք իմ, գի՞րք ոչ եղէ արժանի տեսանել զԱստուածաշունչ յիշատակն իմ առ հօգևոր Տէրն եւ կարօտ մնացի յօրհնութենէն»[22]: Երեմիա իր վրայ դրուած պարտքը կը կատարէ, ուղարկելով 1660ին յիշեալ Աստուածաշունչը Էջմիածին, Յակոբ կաթողիկոսին: Յիշատակարանը[23], ինչպէս կ՚երեւայ, Երեմիայի գրչէն է: Ձեռագիրը կը պահուի մինչեւ օրս Էջմիածնի Ձեռագրատան մէջ (Թ. 348):

Մահտեսի Ամբակումի փոխանակէն ետքը Երեմիա իրեն հզօր պաշտպան գտաւ յանձին Աբրահամ (Ապրօ) Չէլէպիի: Սա մեծ կարողութեան տէր վաճառական մըն էր եւ խաղաց ժամանակակից պատմութեան մէջ ազդեցիկ դեր: Ծանօթանալով Երեմիայի հետ սիրեց զանիկա եւ խառնեց իր հարազատ որդւոց թուին մէջ: 1658ին Ապրօ Չէլէպի ձեռք կը բերէ ընտիր գրչագիր աւետարան մը, գրուած 1251ին եւ կը խնդրէ Երեմիայէն, որ կցէ անոր յիշատակարան մը: Կատարելով իր բարերարին խնդիրը՝ կը գրէ ի վերջոյ Երեմիա հետեւեալ տողերը (Թորգ., 794—795):

[22] Թորգոմեան, 747:
[23] Տես վարը՝ էջ 219—224:

«Երեմիաս Դարանաղեաց Բիւզանդիէ
Եղէ ծանօթ այնմ որ գըրոցս ասի տէր է,
Բոտեալ ընդ որդիսն հոգիածին զմեզ հայրա–
բար,
Ինքն եւ բամբիշն ընկալեալ զմեզ ծնընօղա–
բար,
Էառ ի գիրկս ընդ գորովոյն որ անտեսն է
Եղեւ տածող ի ծոց սիրոյն որ արժանն է.
Մայրն որ երկուց որդւոց էր լեալ յոգնա–
փարթամ
Լինել երից զիս համադոյդ կայր ըղձակամ.
Իմ երախտեաց ո՞ւր թէ հնար է հատուցի
Ի յերկու կեանսն ի յԱրարչէն փոխադրեսցի..
Սոցուն ծառայ տի՛նա որդեակս հոգեսարաս
Սոյն չարադրող նօտար չնչին Երեմիաս»:

Նոյն իմաստով կը գրէ նաեւ 1670ին Կրետէի Եկեղեցւոյն Կոնդակին մէջ. «Դարձեալ եւ յիշեսցի պարոն Աբրահամ Չէլէպին. եւ վասն իմս անարժանութեան որ նորուն բարերութեան՝ սէր ցուցեալ ընտանեցոյց»:

Թէպէտ երիտասարդական տարիքի մէջ էր այժմ (1660) Երեմիա, բայց եղաւ միջամուխ ազգային եկեղեցական–քաղաքական խնդիրներու մէջ: Մահտեսի Ամբակումի եւ Ապրօ Չէլէպիի տուները, ուր ապրեցաւ Երեմիա, կ՚ընդունէին իրենց յարկին տակ շատ հիւրեր, բարձր խաւերէ, ազգային եւ օտար, եւ չկար քաղաքին մէջ անցուդարձ, որուն արձագանգը չլսուէր այն տեղ: Եղիազար

վարդապետ (այս՝ կաթողիկոս), Մարտի-
ռոս Ղրիմեցի (պատրիարք), նոյն իսկ Փի-
լիպպոս Կաթողիկոս, Գրիգոր Պարոն–Տէր
եւն մտերիմ բարեկամներ էին այդ տունե-
րուն: Պատանի հասակէն արդէն ականատես
եւ ականջալուր էր Երեմիա ամէն անցքերու
եւ խօսակցութեանց, նոյն իսկ անձամբ շօ-
շափման մէջ այդ գործիչներուն հետ: Կը
տեսնուի իր Օրագրութենէն եւ Տարեգրական
պատմութենէն, որ Երեմիա ուշադրութեամբ
կը հետեւէր ամէն անցուդարձերուն:

Եղիազար վարդապետի հիացողներէն էին
մահտեսի Ամբակում, Ապրօ Չէլէպի, Տ.
Մարտիրոս եւ Տ. Յովհաննէս, Երեմիայի
մարմնաւոր եւ հոգեւոր ծնողները. Նոյն հա-
մակրութիւնը կը տածէր անոր հանդէպ նաեւ
Երեմիա, առանց նուազեցնելու յարգանքը
ուրիշներու հանդէպ:

1660ին, Կ. Պոլսոյ մեծ հրդեհին այրեցան
Հայոց Ս. Նիկողայոս եւ Ս. Սարգիս եկեղե-
ցիները: Ապրօ Չէլէպի հաւանութեամբ ժո-
ղովրդեան ձեռնարկեց ի հիմանց շինել Ս. Նի-
կողայոսը: Շինութեան հոգը կը յանձնէ Երե-
միայի: Հազիւ աւարտած էր Եկեղեցին, երբ
Բարձրագոյն Դռնէն հրաման կ՚ելլէ, որ քա-
կուին բոլոր նոր, անհրաման կառուցուած
եկեղեցիները: Հրամանը կը սպառնար նաեւ
Ս. Նիկողայոսի: Ապրօ Չէլէպի, որ այս մի-
ջոցին Մոռա կը գտնուէր գործով, որպէս
զի Ս. Նիկողայոս զերծ մնայ այս հրամանէն,

գաղտնի պատուէր կը ղրկէ Երեմիայի, քակել եկեղեցւոյն խորաններն եւ վերածել զայն փութապէս դպրոցի: Թէպէտ առժամապէս ձեռք չառին Թուրքերը դպրոցին (1662 Զատիկ)․ բայց քիչ յետոյ ոչ միայն քրիստոնէից ձեռքով քանդել, կործանել տուին բոլոր նորակառոյց եկեղեցիները, անոնց թուին մէջ նաեւ Ս. Նիկողայոսը, այլ եւ սկսան փնտռել շինողները[24]: Այս հալածանքը կ՚ակնարկէ Երեմիա Աւետարանի Յիշատակարանին մէջ.

Զքառասունսն սուրբ Յարութեան ազով ան-
ցուցեալ.
Ի յՈւսկիւտար ի տան միում եւ մեր թաքեալ.
Տէր Մարտիրոս որ ըստ մարմնոյ հարազա-
տեալ.
Տէր Յովաննէս որ ըստ հոգոյ վարժապետեալ.
Ես ընդ նոսին մնացեալ անդէն յոյժ տառա-
պեալ
Զելից իրացն իմանալոյ կայաք թախծեալ.
Յաւուր սրբոյ Պէնտէկոստին յոր ժամանեալ
Յորում աւուրս արանց խուզումն սաստկա-
ցեալ.
Ի նոյն տանէն տուն մի յարգի մեր փոխար-
կեալ
Ուր Երեքեանս վարանապատ նրսեմացեալ.
Զայս ոչ սրտեմ այլ յիրաւի իմ հաստատեալ.
Գոյր անդ էջ մի որ գրոալումն ընկերացեալ...

---

[24] Հմմտ. Հանդ. Ամս., 1911, էջ 474:

Ս. Նիկողայոսի շինութեան տարիներուն է, որ կ'այցելէ Երեմիա իւր հօրը՝ Տ. Մարտիրոսի հետ Արմաշի Չարխափան Ս. Աստուածածնի վանքը (1661). այս առթիւ կը նուիրէ նորակառոյց Ս. Գէորգ եկեղեցւոյն Մաշտոց մը յանուն Խասկալցի Ղումրիին: Յիշատակարանին մէջ, ուր կը պատմէ Երեմիա համառօտիւ Եկեղեցւոյն շինութեան պարագաները, ի մէջ այլոց կը գրէ[25]. «Եւ ես չնչինս ամենայնի եւ տրուպ Երեմիաս համդերձ հարազատաւ (= հարբ) իմով Մարտիրոս երիցաւ թվին ՌՃԺ յաւուրն համբարձման եկաք ի նաւակատիս եկեղեցւոյս եւ ի պատճառս ուխտի սուրբ վանիցն Տիրամօրն Աստուածածնի եւ զթերին լցաք որպէս եւ ի կոնդակն բացայայտեցաք եւ զայս ես բերաք յԻստամպօլու եւ եկեղեցւոյս շնորհաւոր տեսաք, որպէս եւ զյիշատակն ի սկզբանց պատմէ»:

Երկու տարի ետքը միւսանգամ եկած է Երեմիա Արմաշ (1663, Ապր. 26). այս անգամ «առ կսկիծ սրտին», որովհետեւ նոյն տարին (1663) վախճանած էր իր սիրեցեալ Մայրը, եւ կը կարօտէր սփոփանքի: Ի դարձին այցելած է Պրուսա եւ կղզիները[26]:

Եղիազար վարդապետ, որ Երուսաղէմեան գործերով հալածական կ'ապրէր,

---

[25] Թորգոմեան 159: Այս մասին տես նաեւ վարը, էջ 120:

[26] Թորգոմեան, 723, ծան.:

1660ին եկած էր Կ. Պոլիս եւ բանտարկուած ծանր մեղադրանքներով: Իր բարեկամները, որոնք կը հետեւէին իր քայլերուն, անկարող կը զգային իրենց ոյժերը օգնելու բանտարկեալին: Երեմիա միայն գտնուեցաւ, որ աներկիւղ համարձակեցաւ մտնել բանտ, եւ մխիթարութիւն տալ մահուան սարսափի մատնուած վարդապետին եւ առած հետը երուսաղէմապատկան 500 ոսկի գումարն ու կնիքները դուրս գալ բանտէն յանձնելու զանոնք Ռուհիջան իշխանին: Կը յաջողի ապա նաեւ հանել Եղիազարը բանտէն[27]:

Այսուհետեւ ստէպ կը տեսնենք զԵրեմիա ազգային խնդիրներու մէջ[28], միշտ հաշտարարի դերի մէջ:

1663ին գաղտնի ծրագիրը կը մշակէր Եղիազար Տաճկաստանի հայկական թեմերը բաժնել Էջմիածնէն եւ ինք զինքը անոնց կաթողիկոսը հռչակել: Առ այս շահած էր Սսոյ Խաչատուր կաթողիկոսին հաւանութիւնը, որ Կ. Պոլսէն վերադարձին ի Բերիա պիտի ձեռնադրէր զԵղիազար կաթողիկոս:

Որչափ ալ Խաչատուր խոստացած էր Եղիազարին իր գործակցութիւնը, բայց երբ մօտալուտ էր գործադրութեան վայրկեանը,

---

27 Չամչեան, 682—692· Թորգոմեան, 153—154· Տէր-Յովհաննէսեան, Ժամանակագրական պատմութիւն Երուսաղէմի, Ա., 358 եւն:

28 Չամչեան, 688· Թորգոմեան, 156:

վարանեցաւ յանկարծ. ուզեց Կ.Պոլսէն չմեկնած՝ գաղտնի խորհուրդը յայտնել երեւելի ազգայիններէն ոմանց. անոնց թուին մէջ էր նաեւ Երեմիա: Խորհուրդին ներկաները զարմացմամբ լսեցին կաթողիկոսին յայտնութիւնները. եւ միաբերան յորդորեցին զանիկա, խափանել Եղիազարի ծրագիրները. խոստացան իրենք ալ յետս պահել Եղիազարը այս խորհուրդէն: Երեմիա, որուն վրայ ունէր Եղիազար վստահութիւն, եւ զոր իրեն մօտ ունենալ ուզած էր[29], անմիջապէս ճանապարհ հանուեցաւ դէպի Բերիա (14 Սեպտ. 1664), որպէս զի համոզէ Եղիազարը հրաժարիլ իր փառասիրական եւ ազգին համար վնասակար ձգտումներէ: Երեմիա մեկնեցաւ շտապով, իրեն ետեւէն ալ Խաչատուր: Զուր տեղ աշխատեցաւ Երեմիա Եղիազարը եւ

---

[29] Ի սկզբան խնդրած էր Եղիազար որ Տ. Մարտիրոս իրեն երթայ. հակառակ դէպքին թոյլ տայ, որ Երեմիա «վասն լինելոյ յաջողակ ի գիր եւ ի բան» (Զամչ. 700) փոխանակէ զինքը: Տ. Մարտիրոս իւր առ Եղիազար թղթին մէջ այսպէս կ'արտայայտուի այս մասին. «... բայց աւասիկ ի սոյն սէր տարփացեալ եւ քո սիրուդ ոչ ժուժեալ, փոխանակ իմ առաքեցի առ Սրբութիւնդ զՈրդեակն իմ եւ զծառայ քո, զանդրանիկն իմ եւ զկրտսերն քո, զպատանեակն իմ եւ զհուսկն քո, զանձնակալն իմ եւ զխնդրելին քո, զանձնածինն իմ եւ զհոգեծինն քո... եւ զորդիդ իսկ ըստ հոգւոյ, զոր սնուցեր հաւատով, զարդացուցեր յուսով, զարդարեցեր սիրով Աստուած սուրբ Հոգւոյն եւ մարդեալ ի ներքոյ ամենայն առաքինութեանց հոգւոյ եւ մարմնոյ ի լրումն կատարնութեան բարեաց գործոց ճանաչելոյ աշխարհի՝ զդա. եւն» (Սիոն, 1932, էջ 279. Թորգոմեան, 730:

կեցնել խորհուրդէն: Չհետեւեցաւ իր ազդարարութիւններուն նաեւ Խաչատուր. 1664ին ընդունեցաւ Եղիազար կաթողիկոսական ձեռնադրութիւնը[30]:

Աննպաստ համարեցաւ այնուհետեւ Երեմիա մնալ Բերիա. անցաւ Երուսաղէմ եւ յաջորդ տարին (1665) վերադարձաւ Կ. Պոլիս[31]: Հոն հասաւ քիչ յետոյ Էջմիածնէն Յակոբ Կաթողիկոս, բողոքելու Եղիազարի արարքներու դէմ: Երեմիա կ՚աջակցի Կաթողիկոսին[32]:

Նոր շփոթութիւններ ծագեցան այժմ շնորհիւ Մարտիրոս Ղրիմեցւոյ Եղիազարի դէմ բռնած ընթացքին: Սա ինքնագլուխ առաջնորդութիւն մը հիմնած էր Երուսաղէմ, հակառակ Եղիազարի. եւ ի Կ. Պոլիս պատրիարք անուանած էր Կարապետ (Կրպօ) Կեսարացին, անուս եւ ապասում մէկը: Այս կարգադրութեան դէմ ի զուր ձայն բարձրացուց Երեմիա. ոչ միայն չլսուեցաւ իր բողոքը, այլ եւ չահեցաւ իրեն դէմ Մարտիրոսի եւ Կարապետի թշնամութիւնը: Ստիպուեցաւ

---

30 Զամչեան, 700 եւ յջ.: Օրմանեան, Բ., 2554: Թորգոմեան, 163: Տ. Մարտիրոս հաւան էր Եղիազարի խորհուրդներուն. երբ վերահասու եղանք կը գրէ, «ծածկեալ խորհրդոյն, զոր արարեր ընդ Խաչատուր կաթողիկոսին, որում փոքր ի շատէ տեղեկացաք, ցնծացաք ի յոգի եւ ուրախացաք ի մարմնի վասն խորհրդեանդ այդ ազդմամբն Աստուծոյ եւ ոչ ի քէն». Սիոն, 1932, էջ 279:

31 Թորգոմեան, 662:

32 Անդ, 168—169:

Երեմիա առ ժամանակ մը հեռանալ հրապարակէն: Բայց անբարի ժամանակը հրաւիրեց զինքը դարձեալ հաշտարար մտնել Եղիազարի եւ Մարտիրոս Ղրիմեցւոյ մէջ, առիթմամբ Ապրօ Չէլէպիի եւ ուրիշներու[33]:

Հազիւ թէ խաղաղեցան վէճերը Եղիազարի եւ Մարտիրոս Ղրիմեցւոյ մէջ, ձեռնարկեց Երեմիա կարեւոր գործի մը, որ ոչ միայն իր սրտին մօտ էր եւ պատուաբեր իր անուան համար, այլ եւ պիտի ընծայէր առիթ պոլսահայ շրջաններուն, թողուցած ազգակործան վէճերը պարապելու մտքի լուսաւորութեան աշխատանքներու: Խորհեցաւ Երեմիա բանալ հայաշատ Կ. Պոլսոյ մէջ հայկական տպարան մը: Այս մասին կարեւոր տեղեկութիւններ հաղորդած է մեզի Գրիգոր դպիր իւր 1706ին Կ. Պոլիս տպագրած Յայսմաւուրքին վերջը[34], ուր կը գրէ· «Եւ օրհնեալ հոգի Քէօմիւրճիպաշէ հռետոր... Երեմիա Չէլէպի: Զի եւ նա յառաջագոյն բազում ջանս եւ աշխատանս կրեցեալ էր վասն գործարանին եւ յառաջ ածեալ: Եւ տպագրեալ վասն փորձարանաց գրոյն՝ փոքրիկ գրքուկս երկուս· այս ինչ՝ Գովասանութեան իւրոյ յարմարեալ ի սուրբ անօրինականացն

---

[33] Անդ, 170—173:

[34] Հ. Գ. Զարբհանալեան, Մատենագիտութիւն, էջ 446. Համմտ. եւ նոյն հեղինակին Պատմութիւն հայկական տպագրութեան, Վենետիկ 1895, էջ 133—134:

*Քրիստոսի. եւ միւսն տաղս գեղեցիկս: Սակայն գլխս նորին էր նուազ եւ նիհար: Որոյ կաղապարն տեսեալ վերծանուցի, եւ նոր իմն սկիզբն եղի»:*

*Ի՞նչ խորհրդով կամ ուսկէ՞ դրդեալ ձեռնարկեց Երեմիա տպագրական արուեստիս եւ ինչո՞ւ այնպէս շուտ ետ կեցաւ ձեռնարկութենէն: Այս մասին կը պակսի ամէն տեղեկութիւն: Երեմիայի տպագրած յիշեալ երկու տետրակներն ալ կը լռեն այս նկատմամբ տալ թեթեւ բացատրութիւն իսկ:*

*Այս կէտի լուսաւորութեան համար ազօտ նշոյլ մը կը տեսնեմ Երեմիայի* Հարցմունք եւ պատասխանիք *կոչուած աշխատութեան մէջ, որուն համաձայն զայն աշխատասիրած են Երեմիա Քէօմիւրճեան եւ «Թադէոս երէց Համազասպեան որդի տէր Սարգսի Սպահանոյ Երեւանցւոյ»*[35] 1681*ին ի Կ. Պոլիս «ընդ հովանեաւ Ս. Լուսաւորչին»:*

*Թադէոս երէց Համազասպեան* 1669*էն սկսեալ Եւրոպա կը գտնուէր եւ Ոսկանի հետ ընկերացած կը պարապէր տպագրական գործով:* 1673*ին Ոսկանի հետ ի միասին հրատարակած էր Ատենի Ժամագիրքը: Յաջորդ տարին, երբ վախճանեցաւ Ոսկան, ինքը իբրեւ բաժնեկից տպարանին՝ խնդիր ունեցաւ Ոսկանի ժառանգներու՝ մասնաւորապէս Սողոմոնի հետ: Թէեւ յայտնի չէ թէ ինչպէս*

---

[35] *Այսինքն Նոր-Ջուղայի Երեւանեան թաղէն:*

լուծուեցաւ Թադէոսի եւ Սողոմոնի միջեւ ծագած վէճը, բայց գիտենք որ 1676ին՝ ի բացակայութեան Թադէոսի՝ Սողոմոն հրապարակի վրայ դրաւ յանուն Ոսկանի կեղծ Կտակ մը, ուր կծու եւ թշնամական խօսքերով յարձակում կը գործէր Թադէոսի վրայ, առանց պատճառը բացատրելու[36]:

Այժմ երբ զԹադէոս Կ. Պոլիս, Երեմիայի հետ անձուկ յարաբերութեան մէջ կը գտանենք, 1681ին, կրնանք ենթադրաբար մտածել, թէ Թադէոս Մարսէյլէն Կ. Պոլիս եկաւ եւ յորդորեց զԵրեմիա ձեռնարկել տպագրական շահաբեր եւ օգտակար գործի, ընծայելով ինք զինքը պատրաստ դարձնելու գործարանը: Միջոց չէր պակսեր անշուշտ Երեմիայի: Տպարանը բացուեցաւ (1676), որ այնուհետեւ մրցակից մը պիտի հանդիսանար Մարսէյլի տպարանին: Թադէոսի այս մրցակցութիւնը, որ պիտի խափանէր Մարսէյլի տպարանին արտադրութեանց վաճառումը արեւելեան շուկայի մէջ, անշուշտ տհաճութեամբ պիտի նկատուէր: Կը կարծեմ թէ այս եղած է պատճառը, որ Սողոմոն փութացած է ճիշդ Բէօմիւրճեան տպարանի բացման տարւոյն հանել հրապարակ պարսաւագիր մը, «Կտակ Ոսկանայ», այս ինքն բարեհամբաւ Ոսկան վարդապետի անուան վերագրուած, ուր Թադէոս Սպահանցւոյ դատա-

---

36 Հմմտ. Հանդ. Ամս., 1887, էջ 196—197:

պարտութիւնը կը բանաձեւուէր Ոսկանի բերնով:

Կա՛մ այս եւ կա՛մ ուրիշ անյայտ պատճառով երկար կեանք չունեցաւ Քէօմիւրճեան տպարանը:

Նոր տպարանին անդրանիկ երախայրիքը կ՚ըլլայ Ներսէս Կլայեցւոյ (վրիպակաւ բռուած «Տարսոնեան», ինչպէս ունին ինչ ինչ ձեռագիրներ ալ) Բարձրացուցէքի տաղաչափութիւնը: Լոյս կը տեսնէ 1677 Սեպտ. 14, Խաչի տօնին, այսպիսի խորագրով.

«Գիրք որ ի հնացորդացն Յիսուս Որդւոյ գրոցն Տեառն Ներսէսի Կլայեցւոյ, անօրինեալ ատանօր իմն ի տպագրութիւն շնորհօք Տեառն, որ ի ծննդենէն Քրիստոսի ՌՈՀ եւ Է., եւ ի Հայոց ՌՃԻ. եւ Զ. թուական գոլ. ի սեպտեմբերի Ժ եւ Դ, դիպեցելոյ տօնի եւ գրուատ Խաչին Յիսուսի երախայրեցաւ ի փառս բարերարութեանն: Եւ զցանկն գրոցս ի վերջքն գտցես, եւ կամեցելոյն սիրեցելովդ գրօնուցուս, ով ուսումնասէր հոգիս, փէտերի ազիզ Սաեւլ Թէմ նաջիս Քէրլէնտի Յարիս:

Ներբողեանք կենսատու սուրբ Խաչին, զոր մեծ քահանայապետն Աստուծոյ, եւ հովիւ քաջ Տէր Ներսէս Տարսոնեան շարայարեալ ստանաւոր չափաւ ի սուրբ հօրէն մերմէ Դաւթի Անյաղթ Փիլիսոփայէ՝ որ ասէ. Բարձրացուցէք»...:

Այս տպագրութենէն օրինակ ծանօթ չէ:

Կը յիշատակէ Գրիգոր դպիր Մարգուանցի՝ Յայսմաւուրաց յիշատակարանին[37] մէջ։

Երկրորդ գրոց վրայ, որ է Գովասանութիւն յարմարեալ ի սուրբ տնօրինականացն Քրիստոսի, պիտի խօսիմ յետոյ Երեմիայի գրութեանց շարքին։

1685ին իր որդւոյն՝ Գրիգորիս վարդապետի կարօտէն ձգուած կ՚ուղեւորի էջմիածին։ Բայց չի գտներ հոն իր որդին, որովհետեւ նաեւ ասիկա մղուած հօրը անձուկէն մեկնած էր դէպի Կ. Պոլիս։ Այս առթիւ կը գրէ Գրիգորիս[38].

«Ամենաթշուառ անուամբ Գրիգորիս,
Բարունի կոչիմ, եղուկ ու վայ զիս.
Զի չեմ արժանի շնորհացն որ կայ յիս,
Զի միշտ չարչարեմ կամաւս զխիղճ զհոգիս։
Որդի եմ գոլով զՈղբս Թարգմանօղիս,
Բանաստեղծ Բեմեա կոչի մեր ազգիս.
Այժմուս բնակի ի Կոստանդնուպօլիս,
Ես փափաք առ նա, նա կարօտ առ իս.
Զի յէջմիածնայ վասն այսըմ բանիս,
Ելի թէ տեսից զմխիթար սրտիս,
Նա եսափափաք զիմեալ գայ առ իս,
Զմիմեանս ոչ տեսաք ի ճանապարհիս։

---

[37] Հմմտ. Զարբանալեան՝ Մատենագրութիւն, էջ 176. Նոյն՝ Պատմութիւն հայկ. տպագրութեան, էջ 134։

[38] Ձեռագիր Վիեննայի Մխիթ. Մատենադարանի, Թ. 408, 115բ—116ա. Տաշեան՝ Ցուցակ, էջ 859—860։

*Մտնուլն իմ Բիւզանդ չգտի զսիրելիս,*
*Հայեցեալ մնացի տասն 'ւ երեք ամիս,*
*Վտագեալ չունեցի Տեառն իմոյ Փրկչիս,*
*Թէ համբուրեցից զոտնակոխ տեղիս:*
*Ղուրսանաց զլպեալ ի ճանապարհիս,*
*Թալնեցին զամէնն զինչ որ կայր ընդ իս.*
*Մնացաք տառապեալ խիղճ 'ւ ողորմելիս,*
*Դարձաք տխրութեամբ զՍպարթ քաղաքիս:*
*Եռ չաբաթ կացի մէջ Հայոց խանիս,*
*Աւաք սուրբ պահոց նախկին չաբաթիս,*
*Զկտակս գրեցի գիւրութեան սրտիս,*
*ՁԵՌԱՄԲՆ*[39] *պահպանէ Տէրն ըզմեզ Թվլիս»:*

*Պատահած եմ Էջմիածնի Թ.* 114 (*Թղ.* 449 *ա*) *Ձեռագրին՝ Գր. Աստուածաբանի Առ Որս գրոց եւ Դիոնեսիոս Արիսպագացւոյ գրութեանց* (*յամէ* 1495—1497) *վերջը յիշատակագրութեան մը, որուն համաձայն ՌՃԼԴ* (1685) *թուին Երեմիա «հայր Գրիգորիս վարդապետի Կ. Պոլս(եցւ)ոյ գրոցս սրբոյ ստացողի» կը վկայէ թէ գիրքս կը վերաբերի «անդրանկին իմոյ Գրիգորիս րաբունւոյ», եւ*

---

[39] *Տաղիս գրութեան թուականն է ՁԵՌԱՄ(բ)Ն* = 80 + 5 + 1000 + 1 + 200 + 400 = 1687. *«բ» ապահովապէս պէտք չէ հաշուել: Երեմիա մեկնած էր Կ. Պոլսէն* 1685 *Մայիսին. իսկ Գրիգորիս հաւանօրէն Յուլիսին հասած Կ. Պոլիս. մնացած է հոն* 13 *ամիս, այն է* 1685 *Օգոստ.*—1686 *Սեպտ. անկէ մեկնած է Երուսաղէմ. ճանապարհին հանդիպած է ձախող բախտի եւ վերադարձած Սպարթա* 1687, *ուր երեքշաբաթ մնացած է, այն է Փետ.–Մարտ* 19 *մօտաւորապէս:*

թէ գնած է զայն Գրիգորիս սեպհական ծախքով են :

Հաստատագիրս հաւանօրէն էջմիածին ի բացակայութեան Գրիգորիսի տուած է Երեմիա :

1685ին կ'այցելէ Երեմիա «յաշխարհն Արարատեան՝ մերձ ի գիւղն Կարբւոյ» Հայոց Կուսաստանը, որուն մէջ կը տեսնէ «համախմբութիւն մը 'սրբուհեաց անձանց... հոգեկեցոյց հաւատովք եւ յուսով ի վանքս ժողովեալ,. որոց առաքինական կենցաղին վրայ զմայլած, կը նուիրէ անոնց ներբողական երկար քերթուած մը: Յետոյ արձակի կը դարձնէ եւ կը հայցէ անոնց աղօթքը, 'որպէս երբեմն արարիք, ըսելով, խնամս ախտացեալ անկելոյս օտարիս եւ նժդեհիս ի պանդխտութեանս՝ որ ի մեծափառ մենաստանն սուրբ Կարապետին Քրիստոսի, գեղեցկաւ մրգօք ընծայելով առ ի կամակ հիւանդիս. նաեւ աղօթանուէր մաղթանօք հասայք յօգնութիւն կրկնակի տկարութեանս. եւ յանապատում ձեր (ի) սեղան կոչեալ կերակրեալ՝ մխիթարութեամբ մեծարեցիք» [40] :

Այցելած է նաեւ Կարբւոյ Յովհաննավանքը, ուր ծանօթացած եւ բարեկամացած

---

40 Հ. Վ. Հացունի՝ Կուսաստանք Հայաստանի մէջ. Բազմավէպ, 1923, էջ 76. յառաջ բերուած Ս. Ղազարու Թ. 509 ձեռագրէն, որ է Գիրք պատմութեան: Այս գրուածքը կ'անուանէ Հ. Ղ. Ալիշան՝ Այրարատ, 189, «Պատմութիւն Նորից Նահատակաց». Հմմտ. եւ Թորգոմեան, 729:

է բանաստեղծ եւ դրաստեղծ Զաքարիա Սարկաւագի հետ. վերջինս կը գրէ այս առթիւ իր 1686 թուին գրած Ցիշատակարանին մէջ ի Կարբի[41] հեռեւեալը, զոր վերադոյն կարդացինք արդէն. «...ընդ նոսին յիշեցէք եւ զԲիւզանդացի պարոն Երեմիայ գիտնականն եւ զորդի նորա զՄաղաքիա պատանի զնկարիչ պատկերաց եւ զոսկածաղիկ արարօղ, որք են բուն բարեկամ ինձ թշուառացեալ Զաքարէիս»:

Եղիազար կաթողիկոսի հովանաւորութեան տակ վայելեց Երեմիա անշուշտ ուրախ ժամեր: Այս առթիւ ծանօթացաւ նաեւ Հայրենեաց շատ հնավայրերու հետ. «Տեսաք, կը գրէ Երեմիա, աչօք փոքր տեղիս՝ զԱնի քաղաք եւ զգաւառն, զԿարս եւ զգաւառն, եւ զԿարին եւ զսահմանսն Պարսից ամայի»[42]. այս վերջիններս անշուշտ երթալու եւ վերադարձի ժամանակ տեսած է:

Իբր տարի մը դեգերելէ յետոյ Հայաստան, դարձաւ Երեմիա Կ. Պոլիս, ուր գտաւ ազգային եկեղեցական գործերը աւելի խանգարուած: Այս առթիւ գրեց, իր համբաւեալ Թուղթն առ Եղիազար, 1690[43]: Հոս ի մէջ այլոց կը գրէ Երեմիա.

«Այլ ես, որ կամիմ հնարս գտանել խաղաղութեան, անգոսնիմ յանոպայ անձանց,

---

[41] Զեռ. Էջմիածնի, Թ. 158, Թղ. 366 ա:
[42] Ալիշան, Շիրակ, էջ 180. Թորգոմ., 724:
[43] Թորգոմ., 174—177:

յասել նոցա թէ ո՞ կացոյց զքեզ իշխան եւ դատաւոր ի վերայ մեր. նմին իրի եւ անյոյս լեալ լուեցի ի խօսելոյ. եւ իբրեւ վերջին ազդարարութիւն գրեցի զայս թուղթ զի անպարտ եղէց առաջի Աստուծոյ»[44]:

Իրօք ալ լուեց Երեմիա: Այս թուականէն յետոյ չենք տեսներ զինքը հրապարակի վրայ. ապրեցաւ իր գրքերու մէջ:

Երեմիա վախճանեցաւ 1695ին. կ՚ըսուի ի վերջ Ստամպօլոյ պատմութեան.

«Քէօմիւրճիւ օղլու Երեմիա չէլէպին, եղբայրն տէր Կոմիտասին հանգեաւ ՌՃԽԴ.[45]»:

Մինաս Համթեցի Երուսաղէմի պատրիարքը 1696 մարտ 18 եւ 20 թուակիր Կ. Պոլսէն գրուած նամակներէն կ՚իմանայ առաջին անգամ «զմահ Քօմուրճի Երեմիային»[46]:

Կը գրէ նաեւ Եփրեմ պատրիարք Կ. Պոլսոյ ի վերջ Դիւան. Արխապագացւոյ գրոց.

«Զայս գիրքս յետ վաղջանելոյ տեառն Մովսէսի (Բջնեցւոյ) աստուածաբանութեան րաբունապետին անկեալ էր ի ձեռաց ի ձեռք եւ եղեալ էին ի պատանդի, այս ինքն ի գրաւի, ձեռամբ ըՍտամպօլցի Քէօմիւրճի տէր Մարտիրոսի որդւոյ Երեմեայ Չէլէպուն, զոր յայսմ ամի եղեւ հանգուցեալ. որում տէրն ողորմեսցի հոգւոյ իւրում: Վասն որոյ

---

44 Զամչ., 722. Թորգոմ., 177:

45 Թորգոմեան, 178/79: Այսպէս նաեւ Վիեննայի Թ. 779, Թղ. 8ա:

46 Անդ, 757:

*եւ ես ետու զդրամ պատանդին եւ հանեալ առի զայս գիրքս եւ ստացայ...: Զայս եղեւ ՌՃԽԴ թուականիս Հայոց ի յարքայանիստ մայրաքաղաք Կոստանդնուպոլիս»[47]:*

*Թաղուեցաւ Կ. Պոլիս. գերեզմանին տեղն անյայտ է:*

## 4. ԵՐԵՄԻԱՅԻ ՆԿԱՐԱԳԻՐԸ

*Երեմիա անվիճելիօրէն իր դարուն նշանաւորագոյն անձնաւորութիւններէն մին էր եւ իր բազմակողմանի հմտութեամբը իրաւամբ կը շարժէ մեր գերագոյն զարմանքը: Նա բանաստեղծ է եւ գիտնական, միաժամանակ նաեւ հասարակական գործիչ: Եւ այս հանգամանքներու մէջ աշխարհական մը: Վայելեց իր դարուն մէջ ազգայնոց եւ օտարաց առջեւ ճոխութիւն եւ համակրանք եւ ձգեց պատմութեան մէջ բարի անուն եւ անթիւ գրական աշխատութիւններ: Դժբախտաբար դեռ անտիպ կը մնան իր գրական երկերը, որոնց մէջ թաղուած է իր կեանքը. եւ իր նկարագիրը գծելու համար ստիպուած ենք կցկտուր տեղեկութիւններ միայն աղբիւր ունենալ:*

*Ի սանդղեաց հարուստ եւ բարեգործ պաշտպանի մը՝ մահուանէ Ամբակումի հոգածութեան տակ դէպի երախտապարտութիւն զարգացած, չտեսաւ Երեմիա կարօտութիւն: Մեծահարուստ պաշտպանին ստացուածնե-*

[47] Ձեռագիր Էջմիածնի, Թ. 2503:

րուն ժառանգն եղած եւ ապա մեծ վաճառական Աբրահամ Ջէլէպիի բարեկամութիւնը վայելած՝ չմտահոգուեցաւ Երեմիա կեանքի ճանապարհի վրայ:

Բարեպաշտ ընտանիքէ իր կաթը ծծած, եկեղեցասէր շրջանակի մէջ մեծցած, աստուածավախ եւ բարեկիրթ դաստիարակութիւն մ'ըմբոշխնեց: Ասիական բարքը մեղմացաւ իր մէջ, կենցաղագէտ եւ նուրբ բնութեամբ զարգացաւ:

Հագիւ թեւակոխած պատանեկական հասակ՝ դէպ ի եկեղեցական ասպարէզ առաջնորդեցին անոր քայլերը ծնողք, մինչեւ դպրութեան (կիսասարկաւագութեան) բարձրացնելով զինքը: Հասակի աճումը սակայն եւ ինքնագիտակցութեան զարթնումը իր մէջ ետ կեցուցին իր քայլերը անդրագոյն վերելքէ· յանձն չառաւ Երեմիա ըլլալ կուսակրօն քահանայ, զգալով այս աստիճանին համար իր ոյժերը տկար: Թէպէտ հրաժարեցաւ քահանայութենէ, բայց ապրեցաւ մինչեւ կեանքին վերջը քահանաներու եւ բարձրաստիճան եկեղեցականներու շրջանակին մէջ, Եկեղեցւոյն մերձաւորութեան:

Իր մտքի կրթութիւնը առ ոտս Յովհաննէս քահանայի սկսած, զարգացուց ինքնօգնութեամբ· ինչպէս էր ընթերցասէր, նոյնպէս եղաւ գրասէր, բանասէր եւ բանաստեղծ:

Միակողմանի չէր իր կրթութիւնը·

հմուտ էր եկեղեցական գիտութիւններու, ներհուն պատմագիտութեան, ծանօթ բազմաթիւ լեզուներու, յատկապէս հայերէնի, թուրքերէնի եւ յունարէնի նաեւ «եւրոպական լեզուներու»[1], հետաքրքիր ներքին եւ արտաքին, ազգային եւ միջազգային քաղաքական իրադարձութիւններու:

Բարեհամբոյր էր բնաւորութեամբ, խաղաղասէր, անանձնախնդիր, ընդունակ գրաւելու սրտեր, հաշտեցնելու թշնամացած ոգիներ: Դէպի ընտանիք եւ հարազատներ խանդաղակաթ էր իր սիրտը, եւ դէպի արտաքս մարդասէր եւ ազգասէր: Մեղմական բնութեան հետ ունէր կորով, հաստատամտութիւն, աներկիւղութիւն, երբ մանաւանդ հասարակաց շահը, ազգին օգուտը վտանգի մէջ էր:

Ունէր իրեն հիմ Կրօնն եւ Ազգը, Եկեղեցին եւ Հայութիւնը: Եկեղեցւոյն պայծառութեան անձնազոհ էր, Ազգին շահերուն նախանձախնդիր: Կ՚ատէր կուսակցական ոգին[2],

---

[1] „Uomo detto e peritissimo delle lingue europee”, perchè Dragomano, ed amico intimo di tutti gli ambasciatori europei presso la sublime Porta ottomana“ (Quadro, 259).

[2] Խօսելով Թովմաս պատրիարքի սպանման մասին կը գրէ Երեմիա իր Տարեգրական պատմութեան մէջ. «Ով մեծի յիմարութեանս. եթէ իցէր հերձուածող՝ ոչ էր մեծ քան զԱրիոս, որոց վրէժխնդիր Աստուած է. եթէ չար էր՝ ընդէ՞ր ոչ չահեցաք. եւ թէ ոչ ընդունիցիք, ընդէ՞ր վարեցիք ի գիւղօրէից: Բայց կամէին տեղացիքս թէ տաճկանայր...». Բազմավէպ, 1902, էջ 479:

անձնասէր, փառասէր ձգտումներ: Բովանդակ անձով պաշտպան կանգնած էր Ազգային Եկեղեցւոյն, Ազգային շահերուն. ինչ կ՚ընդդիմանար այս կէտերուն, հոն կը ծառանար իր անձը. կը բողոքէր ապատադէմ, աներկիւղ, անձնազոհ: Երկու իրար պատառող կողմերու մէջ համոզկեր կը մատչի, հաշտարար կը կանգնի. Թէպէտ կ՚ընդունի հարուածներ, բայց յանձն կ՚առնէ ամէն վիշտ, առանց տեղէն խուսելու: Ճշմարտութիւնն եւ ազգին շահը նկատի ունի, անշահախնդիր, անկաշառ, անաչառ:

Կը յարգէր Եղիազարը. բայց երբ տեսաւ անոր մէջ փառասէրը, ազգային միութեան թշնամին, բարձրացուց իր ձայնը, եւ հեռացաւ բարեկամէն որպէս թշնամի:

Վայելեց յարգանք. բայց ի սէր ճշմարտութեան նշաւակ եղաւ նաեւ հալածանքի:

Գեղեցիկ կը ներկայացնէ Երեմիայի բռնած դիրքը ազգային այս երկպառակութիւններու մէջ Լէօ[3], որուն խորհրդածութիւնները յառաջ կը բերեմ հոս քաղուածաբար. «Նա Մարտիրոս Կաֆայեցու անձնական բարեկամն էր եւ քարտուղարը: Մօտիկ կանգնած լինելով պատրիարքական աթոռի չուրջի կռուողներին, նա աշխատում էր մեղմացնող, հաշտեցնող դեր կատարել: Որովհետեւ չա-

---

[3] Հայկական տպագրութիւն. Ա. հատոր, Բ. տպ., Թիֆլիս 1904, էջ 370—372:

րեքը միանգամից արմատախիլ անել չէր կարելի, ուստի Երեմիային մնում էր որքան կարելի է չարերին համոզել, թէ ինչ դժբախտութիւններ են ծնում անսահման ու անվերջ դժտութիւնները: Նա ջանք չէր խնայում կռուողների բռնկված կրքերը հանգցնելու համար. գրում էր, անձամբ գործում էր, խրատում: Երբ Եղիազարը ստացաւ առանձին կաթողիկոսութեան հրովարտակ, Կ. Պոլսում գտնվեցին հայեր, որոնք սարսափահար եղան այն պառակտումից, որ մացնում էր ազգի մէջ այդ փառամոլ կղերականը: Երեմիա Չէլէպին այդպիսիների գլուխն անցաւ եւ նրանց կողմից պատգամաւոր գնաց Եղիազարի մօտ, Բերիա, խօսելու եւ հաշտեցնելու համար: Երկար ժամանակ նա համոզում էր Եղիազարին յետ կանգնել թիւրքահայերի համար առանձին կաթողիկոսութիւն հիմնելու մտքից, հասկացնում էր թէ ինչ վտանգներ են կապված այդ քայլի հետ: Բայց զուր էին նրա բոլոր ջանքերը...:

«Տեսնելով որ ոչ մի քարոզ, ոչ մի ապացոյց չէ ազդում, Քէօմիւրճեանը այնուհետեւ աշխատում էր գոնէ մեղմացնել այն կատաղութիւնը, որով Եղիազարն ու Մարտիրոս Կաֆայեցին կռւում էին իրար դէմ, մի կռիւ, որից միայն խռովութիւնների քաոս էր տակն ու վրայ լինում, առանց դրական որ եւ է օգուտ տալու: Այո՛, անհաշտութեան եւ վայրենի կրքերի բոցերը հանգցնելն էլ այն

տխուր ժամանակներում բարերարութիւն էր»: «Դժուար է հասկնալ թէ ուր պիտի հասնէր Եղիազար–Մարտիրոսեան մենամարտութիւնը, եթէ Թէօմիւրճեանի հաշտեցնող ազդեցութիւնը յաղթանակ չը տանէր»:

«Բայց գործունէութեան այսպիսի եղանակը չը պիտի կարծել թէ Երեմեան հարկաւոր դէպքում չէր բողոքում: Երբ Մարտիրոս Կաֆայեցու ջանքերով Կ.Պոլսի պատրիարք դարձաւ Կոլոտ, Թէօմիւրճեանը յանցանք համարեց լռելը եւ մի նամակի մէջ յանդիմանեց Մարտիրոսին, որ նա մի տգէտ ու անպէտք տէրտէրին պատրիարքութիւն է տուել: Մարտիրոսը, մոռանալով Երեմիայից վայելած բարերարութիւնները, այդ յանդիմանական նամակը ուղարկեց Կոլոտին: Երկուսն էլ կատաղած էին այդ համարձակութիւնից եւ միասին ետեւից ընկան՝ Թէօմիւրճեանին բռնելու համար: Բայց սա կարողացաւ թաքնուել եւ ազատուեց նրանց վրէժխնդրութիւնից: Այդ բանը դժուար չէր նրա համար, որովհետեւ թիւրքերի մէջ էլ պատիւ էր վայելում իբրեւ խելօք մարդ եւ հեղինակ»:

Երեմիայի կորովի, համարձակ եւ սրտացաւ խօսքը կարելի է լսել անոր առ Եղիազար կաթողիկոս 1690ին գրած թղթի մէջ, ուր կը տեսնուի միաժամանակ իր աչալրջութիւնը եւ հոգածութիւնը, դեղ եւ դարման գտնելու տիրապետած անկարգութիւններու

*համար: «Յուսահատ մենակութեան ձայն է լսվում նրա այդ նամակից» կը գրէ Լէօ* (372): *Եւ իրօք ալ ունէր Երեմիա իր դէմ բազմաթիւ հակառակորդներ, որոնք կը գոչէին երեսն ի վեր, թէ «Ո՞ կացոյց զքեզ իշխան եւ դատաւոր ի վերայ մեր»: Որոնց դէմ կը գանգատէր Երեմիա կաթողիկոսին թէ «ես... չմարթեցի՞մ ասել յառենի առ տառապեալ ազգս թէ ահա սա՛ եւ սա խաւար. սա՛ դառն եւ նա քաղցր, ըստ ժամանակին խանգարման խռովութեան»*[4]: *Ոչ միայն չխանգարեցաւ Երեմիա իւր ազգարարութեանց մէջ, այլ եւ գրով, ուր հարկն էր, լսելի ըրաւ իւր ձայնը:* 1692*ին, երբ Սուքիաս վարդապետ իւր նորաձեւութիւններով ելաւ հրապարակ եւ ուզեց խափանել Հաւատամքին «Իսկ որք ասենն» յաւելուածը, դրաւ հրապարակի վրայ Երեմիա իւր ջատագովականը, ուր կը լսուին նաեւ խիստ դատաստաններ Սուքիասի անձին դէմ:*

*«Ապրելով մի խռովայոյզ ժամանակում կը գրէ Լէօ* (369/70), *Երեմիա Չէլէպին ձեռքերը ծալած անտարբեր չը մնաց: Իբրեւ մի հմուտ աշխարհական հեղինակ, նա մէկն էր այն հազուագիւտ մարդկանցից, որոնք երեւացել են մեր պատմական անցեալում, դարերի այն երկար շրջանի մէջ, երբ գրագիտութիւնը, մանաւանդ հեղինակութիւնը հոգեւո-*

---

[4] *Թորոսեան՝ Վարք Մխիթարայ, էջ* 29:

րական դասի արտօնութիւնն էր կազմում: Մինչեւ Երեմիայի ժամանակները մեր պատմութիւնը շատ չէ ճանաչում այնպիսի աշխարհականներ, որոնք նրա պէս պատկառելի գիրք գրաւէին իբրեւ լեզուագէտ, իբրեւ հեղինակ, մի խօսքով իբրեւ լուսաւորված մարդ: Եւ Քէօմիւրճեանը խուցի հեղինակ չէր, ոչ էլ իրանց գիտնականութեամբ անմատչելի ու բարձրաթռիչ մարդկանցից մէկը· Նա գործում էր ժողովրդի մէջ, իր ոյժերը ծառայեցնում էր հասարակութեան շահերին: Մի հասարակական գործիչ էր գրքերի սիրահար այդ մարդը եւ այնքան խելօք ու հակացող, որ նոյն իսկ հոգեւորականութիւնը դիմում էր նրա խորհուրդներին, շատ դէպքերում հպատակվում էլ էր նրա հեղինակաւոր խօսքին»:

Երբ դուրսը ազգայինները զիրար կը խածատէին, երբ կուսակցութիւնները զիրար զգետնելու կ'աշխատէին, ի վնաս ազգային շահերու եւ ազգին պատուին, Երեմիա կուլար ազգին թշուառութիւնը եւ երբ հնարք չէր գտներ դարման տանելու ցաւին, մատենագրութեան մէջ կը փնտռէր իր մխիթարութիւնը:

Արդարեւ զարմանք կ'ազդէ մեզի, երբ այն աղմկալից շրջանին, խաւար միջավայրին մէջ կը տեսնենք շուշան մը, որ կը պայծառանայ փուշերու մէջ ինքնուրոյն փայլով:

Բազմահմուտ եւ բազմաբեղուն մատենա-

գիր մը կը ծնանի այդ միջավայրի մէջ, որ միշտ ուրախ, միշտ լաւատես՝ առանց ազդուելու ժամանակակից մթնոլորտէն կ'ապրի զուարթամիտ, կ'արտադրէ առատօրէն եւ իր հաճոյքը իր գրաւոր վաստակներու մէջ կը գտնէ:

Թէեւ ծննդական չէ իր միտքը, բայց կը բղխէ առատահոս իր գրիչը: Մերթ իբրեւ պատմագիր հեռաւոր եւ ժամանակակից դէպքերու, մերթ իբրեւ նամակագիր՝ միջամուխ ժամանակակից խնդիրներու մէջ, մերթ իբրեւ բանաստեղծ եւ դարձեալ իբրեւ քարոզիչ եւ թարգմանիչ:

Կը գրէ Օրմանեան[5].

«Երեմիա, նշանակելի դէմք մըն էր մեր ազգային գործիչներու մէջ՝ իր ինքնատիպ եւ բազմակողմանի ձիրքերով: Հաւասարապէս ներհուն եւրոպական լեզուներու, եւ տեղական յունարէնի, եւ տաճիկ եւ արաբացի գրականութեան, փոխադարձաբար մէկէն միւսին թարգմանեց կարեւոր գործեր, եւ շատ եւս ազգայնոց համար՝ հայերէնի, եւ օտարաց համար հայերէնէ փոխարկեց, հայրենական լեզուին կատարեալ հմտութեամբը: Իր երկասիրութիւնները բազմաթիւ են եւ զարմանալի պէսպիսութիւն մը կը ներկայնեն, որոնց մէջ Աստուածաշունչի տաճկերէնի թարգմանութենէն, մինչեւ զաւեշտ ոճով եւ

---

5 Ազգապատում, Բ., էջ 2666:

ռամկօրէն բարբառով ոտանաւորներ կը գրոնուին»:

Մեծցած բարձր յարկի ներքեւ, ուր յաճախ էր երթեւեկը բարձրաստիճան անձնաւորութիւններու, ունեցած էր մանուկ հասակէն չփում եպիսկոպոսներու եւ վարդապետներու հետ. այս աղերսը յաջորդ շրջաններուն աւելի մեծ եղաւ, երբ Ասպրոյեանց բարեկամութիւնը վաստկեցաւ եւ ձգուեցաւ ազգային խնդիրներու մէջ: Ոչ միայն իբրեւ խոհեմ, լուրջ եւ կենցաղագէտ անձի, այլ առաւելապէս իբրեւ գիտունի եւ գրագէտի կը մերձենային անոր: Եղիազար եւ Մատթէոս Կաֆայեցի իրենց քարոզները կը փափագէին ունենալ յանձին Երեմիայի. Աբրահամ Չէլէպի իր տօհմին երգիչը կը յարգէր անոր մէջ եւ իր գործակատարը կը կարգէր զինքը. Վարդան Բաղիշեցի եւ Զաքարիա Սարկաւագ, ժամանակակից այս երկու գրասէր եւ բանասէր անձնաւորութիւնները կնքած էին անոր հետ բարեկամութիւն: Դեսպաններ, ինչպէս Աւստրիոյ կայսեր ներկայացուցիչը Բարձրագոյն Դրան քով, ունէին Երեմիայի հետ անձուկ յարաբերութիւն եւ կը կարօտէին անոր արեւելեան իրաց հմտութեան:

Չբաւականացաւ Երեմիա իր բազմահատոր երկասիրութիւններով նպաստել հայ մշակոյթի բարգաւաճման, այլ եւ համարեցաւ թէ անհրաժեշտ է հայ մտքի զարգացման

համար գիրքը եւ ձեռնարկեց հիմնել սեպհական տպարան մը. Թէեւ չունեցաւ անիկա յաջողութիւն, որովհետեւ չքաջալերեցին ժամանակն եւ միջավայրը ձեռնարկութիւնը, բայց եղաւ այն յուշարձան մը Երեմիայի անուան համար, պատմելու եկող սերունդին անոր նախահոգութիւնը տպագրութեամբ մատչելի դարձնելու գիրքը հայ ժողովրդեան:

Ժամանակը չգնահատեց իր աշխատանքները. աւելի ծաղր, քան քաջալերութիւն հնձեց հեղինակը: Արդէն 1660ին, երբ Երեմիա իւր անդրանիկ աշխատութիւնը հրապարակ կը դնէր, կը հանդիպէր դժուարութիւններու:

Երբ կը գրէր Կ. Պոլսոյ հրդեհին պատմութիւնը, կ'արձանագրէր տողերս. «Զանձրացեալ եմ ի գրել զմեծն որ զմեօք պատահեցաւ ՌՃԹ (1660) Թուականիս զկսկծալի բերմունս. վասն որոյ համառօտ անցանեմ, զի ոմանք պախարակեցին զմեզ ասելով. Բան ու գործ չունի, հա՛ գրէ»[6]:

Նոյն իմաստով կը գրէ նաեւ Ստամպօլոյ պատմութեան մէջ (էջ 5).

---

[6] Բազմավէպ, 1902, էջ 369: Այս առթիւ կը գրէ Հ. Ս. Երեմեան. «Այս տողերէն կարելի է գուշակել ժամանակին անընթերցասիրութեան սահմանը, եւ թէ Չելէպին այդպիսի մթնոլորտի եւ շրջանակի մէջ, թողլով մի քանի հատոր երկեր եւ հաստատելով մամուլ, կարելի է ըսել որ նա այդ դարուն տոկուն ու յամառ գրական հոյակապ դիւցազն էր»:

Տեսողքն զայս՝ զիս ծաղր առնեն՝
 Թէ ընդէ՞ր կաս ի յաշխատման.
Զծանօթս մեր մեզ պատմես՝
 տխմարից չունիմք զպատասխան:

Եւ այլուր (էջ 119) աւելի ոճով.

Նարդենիս բարունք ոմանք՝
 ի տեսնուլ զայս քամահեալ կան:
Շատ լուայ վասն իմ ասել՝
 եթէ բան ու գործ չունի այն.
Կեանքն եղեւ նանիր 'ւ ընդ վայր՝
 'ւ աշխատի 'ւ ոչ ինչ շահի այն:
Ի տեսնուլ զխմաստ ինչ բան՝
 ասացին թէ ո՞ւր սա ուսման,
Ի գիւտ ըստ բրոց բառս կոչեն՝
 ահա իւր նշանն ռամկութեան:
Թէ սակաւ գրտին ուրեք՝
 ը՞հ փոքր է իմացուած սորայն,
Թէ յերկար ոճով զպատմեալս՝
 Թո՛ւփ ահա զէվզէկ եւ օղան:
Մեծ ոմանց այս պատահեալ՝
 ինձ նոցա մազ մին չերեւան.
Զայս վիշտ կրեմք ի սուտ եղբարց՝
 վասն որոյ մնացեալ անիշխան:

Իր գրական աշխատութիւններուն մէջ կը սիրէ Երեմիա աւելի ոտանաւոր չափով ըն-թանալ քան արձակ քայլերով: Թէպէտ համ-բաւուած էր իբրեւ «բանաստեղծ», բայց տա-ղաչափը զգալի է իր տողերուն մէջ. կեղծ-

ղասական, բանագրօսիկ ոճը շատ կը տիրապետէ իր վրայ, մանաւանդ երբ խորհրդապաշտ նիւթերուն թեւամուխ կ՚ըլլայ: Ցանցառ են դժբախտաբար ժողովրդական բանաստեղծի արտադրութիւնները իր գրչին տակ, պարզ, բնական, սրտէ եւ ոչ մտքէ բղխած տաղեր. ինչպէս են կրկին տաղերը ի վերայ ջրոյ: Զաւեշտը կը ժպտի բանաստեղծին շրթունքներու վրայ. կը սիրէ հենգնանք, զաւեշտական խաղերով բայց հատու շեշտուածքով:

Լեզուն մերթ գրաբար է եւ մերթ ռամկօրէն[7] Երեմիայի գրչին տակ. աւելի յաճախ երկուքին խառնուածքը: Ստամպօլոյ պատմութեան համար ընտրած է Պոլսական բարբառը, «աշխարհաբարը», իր անթիւ թուրքական բառերով, ինչպէս ինքնին կը խոստովանի (120).

Բայց աշխարհաբար գրելոյս՝
զմեղադրանդ լիցիս արգելման:

Իր գրաբարագիտութեան չափը կարելի է դատել իր նամակներէն, յատկապէս 1664ին առ Եղիազար Թղթին նախաբանէն:

---

[7] Յատկապէս Օրագրութեան եւ Տարեգրական Պատմութեան մէջ. որուն համար Սոմալեան կը գրէ «scritta con uno stile facile e basso, non però barbaro» (Quadro, 260). իսկ Հ. Ղ. Ալիշան՝ «գրածներուն մեծ մասն անյարդար եւ առ ձեռն ժողոված են. գուցէ զոմանս յետոյ կոկած ըլլայ». Հայապատում, Ա. § 133:

Տաղաչափութեան համար ունի Երեմիա իր ինքնուրոյն քերականութիւնն եւ ոճը: Ձայներու համար օրինակ առած է զանազան ձեւեր. բայց յատկապէս «Կաֆայի գոյնը», ինչպէս կը գրէ ինքնին Ստամպօլոյ պատմութեան մէջ.

Այս կաֆայի գունովն է՝
ըստ Ես եմ կորուսեալ ոչխարն:

Այս ինքն Խաչատուր Կեչառեցւոյ այս սկզբնաւորութեամբ տաղին չափը, որ է 2—5—3—5, որով գրուած են հին հայկական հայրենները կամ Քուչակեան ըսուած քառեակները: Երեմիա կը գտնուի Հայ Գանձարաններու եւ Տաղարաններու ազդեցութեան տակ, որոնց նմանութեան կը ձգտի:

«Բազմարդիւն եւ բազմաշխատ Երեմիայի մահը 60 տարեկան հասակին ոչ միայն տարիքին կողմէն վաղահաս կը նկատենք, կը գրէ Օրմանեան[8], այլ եւ ազգային շահերուն կողմէն տարաժամ. զի անոր մահուանէ ետքը աւելի սաստկացան բուռն ու խիստ ձեռնարկներ, զորս կրնար խափանել Երեմիա, իւր խոհական խորհուրդներով, եթէ տակաւին ապրէր»:

Այսպէս ապրեցաւ եւ գործեց Երեմիա հայ կեանքի մէկ բազմաշփոթ դարաշրջանին, երբ երկպառակած էր Ազգը կուսակցական վէճերով, մինչդեռ օրուան անհրաժեշտ պահանջքն էր, գաղթականութեամբ Մայրաքաղաք խու-

[8] Ազգապատում, Բ., էջ 2667:

ժած ժողովուրդը կազմակերպել, ամրացնել տնտեսապէս եւ զարգացնել մշակութապէս։ Զուր տեղ նետուեցաւ Երեմիա կռուող կող-մերու միջեւ. ապարդիւն եղան իր ջանքերը դարձնելու հայրենակիցներու ուշադրութիւնը իմացական եւ քաղաքակրթական հարցերուն։ Յուսախաբութեան արձագանգը պէտք է նկա-տել հետեւեալ տողերը, որոնք աւելի հեռա-տեսութենէ քան յոռետեսութենէ թելադրուած են. «կարծեօք եւ հաւաստի ասել կամիմ, զի անուամն վատթարութեան սոցա բեղնաւորեալ կործանումն բոլոր ազգիս երեւեցուցանէ» (տե՛ս էջ 231)։ — Դժբախտաբար չէր սխալած Երեմիա իւր գուշակութեան մէջ։ Եւ եթէ ժամանակակիցները չյարգեցին իր յորդոր-ները, մենք այսօր շնորհակալ ենք Քէօմիւր-ճեանի, որ գոնէ տխուր դարուն պատմիչը ուզեց հանդիսանալ։

Իր մահուամբ կը դադրէր ստեղծագոր-ծելէ հանճարեղ եւ աշխոյժ գրիչ մը, որ այն-քան վաստակաւոր եղաւ հեղինակին կենդա-նութեան։

Նա, որ կը գրէր՝

Յայս պատրողական յաշխարհ
ցանկացայ յիշատակ անուան...
Ապա թէ (Տէրն) առ ինքն կոչէ՝
ես իւրն եմ եւ իւրն է հրաման.
Զխոստացեալ բարիսն
ինձ յոյս պինդ ունիմ որ ի յաւիտեան.

գտաւ իւր բարի անուան անմահ յիշատակը

հոս իր գործերուն մէջ, որոնք անմոռաց պիտի պահեն զայն դարուց ի դարս, եւ, ինչպէս կը հաւատանք, ստացաւ հոն «զխոստացեալ բարիսն» զոր վստահօրէն կ'ակնկալէր: Մեզ մնացեալներուս պարտք կը մնայ հրապարակ հանել անոր անտիպ գործերը, մանաւանդ պատմական գրութիւնները, որոնք մահարձաններ են Երեմիա Չէլէպի Քէօմիւրճեանի անուան:

## 5· ԵՐԵՄԻԱՅԻ ԳՐԱԿԱՆ ՎԱՍՏԱԿՆԵՐԸ

Երեմիա Չէլէպի գրական բեղուն գործունէութիւն մ'ունեցաւ: Դժուար է այժմ կազմել ամբողջական ցանկ մը այն ամէն ընդարձակ եւ մանր գրուածներու, որոնք արդիւնքն եղան այդ գրասէր եւ ժիր հեղինակին: Անոնք սակաւ թուով տարածում գտած են. բայց մեծ մասին գրուած եւ պահուած են հեղինակին սեպհական մատենադարանին մէջ եւ անոր մտերիմներու, ինչպէս Ապրոյեան գերդաստանի քով: Պատմական գրուածներու մէկ ցուցակը տեսած եմ հեղինակին շարադրած «Հարցմունք եւ պատասխանիք» աշխատութեան մէջ (Ձեռ. Էջմ. Թ. 72), ուր կը ներկայացնէ ինք զինքը հայ պատմագիրներու թուին մէջ. դժբախտաբար օրինակութիւնս մնացած է Երեւան, որով պիտի չկարենամ զայն ծանօթացնել ընթերցողներուս:

Ապրոյեանց Մատենադարանը, ինչպէս Ջրպետ կը հաստատէ, ունեցած է Երեմիայի

*գրուածքներէն մեծ թիւ մը սկզբնագիր*[1]*: Թէ Երեմիայի ձեռագիրները վաղ ժամանակներէ ի վեր կը գտնուէին Ապրոյեանց քով, կ՚ակնարկէ ինքնին Երեմիա, յիշելով իր գրուածքն յԱպրօ Չէլէպի. «Թէ կամ լիցի քեզ առնուլ զճաչակ պատճառի, գիտ ի մերում Դպրարանի, զորոց միայն օրինակն զոր առացի կայ առ Պր. Չէլէպին»:*

*Թէ ի՞նչ ճակատագիր ունեցաւ Ապրոյեանց մատենադարանը Զմիւռնիոյ մեծ աղէտէն ետքը, չեմ կրնար ըսել: Հ. Գ. Գալէմքեարեան տեսած էր իրր 25 տարի յառաջ Ապրոյեանց երկրորդ ճիւղին քով ի Կ. Պոլիս, Երեմիայի երկու գրութիւնները՝ Վիպասանութիւնն յԱպրոյ Չէլէպի եւ Աւետարանի Յիշատակարանը: Այդ գրութիւններէն առաջնոյն պատահած եմ ես 1930ին ի Միւնիխէն* Rosenthal *գրավաճառին քով, որ ձեռք բերած էր զայն ի Պարիս. իսկ այս վերջին քաղաքին մէջ Պր. Յովհ. Զաւրեանի քով տեսած եմ Երեմիայի ուրիշ մէկ գրութիւնը՝ Կոնդակն Կրետէի Եկեղեցւոյն, որ նոյնպէս Ապրոյեանց նուիրուած՝ կը կազմէր առաջնոյն անբաժին ընկերը: Կը հետեւցնեմ ասկէ, թէ Ապրոյեանց*

[1] „Eremia-Céléby, auteur 17ème siècle, a écrit la vie d'Alexandre, l'Histoire des Ottomans, en vers et en prose, un Abrégé de l'Histoire ancienne et moderne d'Arménie, et différens Traités géographiques sur les Indes, la Perse, l'Arménie et la Natolie. Ces ouvrages se trouvent en original dans la bibliothèque de MM. Abro, Arméniens, à Smirne. *ի գիրս* Recherches curieuses sur l'histoire ancienne de l'Asie. Par J. M. Chahan de Cirbied et F. Martin, Paris 1806, *էջ* 320.

Մատենադարանն ի Պարիս ի վաճառ հանուած է:

Ուրիշ խումբ մը Բէօմիւրճեան ձեռագիրներու հասած է Վենետիկ, Մխիթարեան Մատենադարանը. Հ. Մ. Ջամչեան թուելով Երեմիայի 6 գրութիւնները, կը ծանուցանէր «գրուածք Երեմիայի ըստ մեծի մասին անկան ի ձեռս մտերիմ ծանօթի նորա Ճէվահիրճի տիրացու Մաղաքիայի»[2]: Իսկ Թէոփիլեան կ'աւելցնէ. «Եւ զայս ամենայն ունիմք առ մեզ (ի Ս. Ղազար) գրչութեամբ ձեռին նորա: Ուրեք ուրեք տեսանի եւ ձեռագիր Մաղաքիայ գրչի մտերիմ բարեկամի նորա, առ որում մնացին այս գրուածք սորա յետ մահու նորին Երեմիայ: Եւ ապա միջնորդութեամբ թոռին նորա, Հ. Յարութիւն վարդապետին՝ միոյ ի միաբանից ուխտիս մերոյ, եւ հօրեղբօրն իմոյ ըստ մարմնոյ, հասին այս ամենայն գրուածք ի Վանս մեր»:

«Բացի Ս. Ղազար գտնուած աշխատութիւններէն, մեծ մաս մըն ալ, իր իսկ ձեռքովը գրուած, կը պահուին այժմ Երուսաղէմի Ս. Յակոբեանց Միաբանութեան Մատենադարանը»[3]: Այս գրուածքներու համառօտ ցուցակը տուած էր արդէն Մեսրոպ եպ. Նշանեան Թորգոմեանի աշխատութեան մէջ[4]. իսկ ընդարձակը բարեհաճեցաւ դնել տրամադրութեանս տակ Ինքնաբերաբար (3 Դեկտեմբեր 1932), ուր գտայ մանրամասն

[2] Ջամչեան, Գ. 723:
[3] Թորգոմեան, էջ 733:
[4] Անդ, էջ 734—73՝ :

*ցուցակագրուած Երեմիայի մանր եւ մեծ աշխատասիրութիւնները, տեղ տեղ նաեւ ընդարձակ յառաջբերութիւններով: Թէեւ յօդուածս չարուած էր արդէն եւ յանձնուած մամուլին, բայց ամբողջական ընծայելու համար ցուցակս, հարկ համարեցայ նոր խմբագրութեան ենթարկել ամբողջը, օգտուելով առատօրէն Մեսրոպ Սրբազանի անչափ բարութենէն: Իմ սրտագին շնորհակալութիւնս Սրբազանին այս ազնուաբար շնորհին համար. վստահեմ թէ ինձ հետ նաեւ հայ բանասիրութիւնը երախտապարտ պիտի մնայ Սրբազանին բարեացակամութեան:*

*Ուսումնասիրութեանս մէջ ուր խօսք կ՚ըլլայ Երուսաղէմեան ձեռագիրներու վրայ, տեղեկութիւնները կը պարտիմ Մեսրոպ Սրբազանի ներկայացուցած ցուցակին:*

*Ինչ ինչ աշխատութիւններ, հաւանօրէն ընդօրինակութեամբ, հասած են նաեւ Էջմիածին. զորոնք ցուցակագրած եմ:*

*Ես պիտի ջանամ ի մի հաւաքել հոս այն ամէն գրուածքները, որոնք որ եւ իցէ կերպով հասած են ծանօթութեանս, թողլով ժամանակին լրացնել պակասները, յատկապէս ճշդել խորագիրները:*

1. Պատմութիւն համառօտ չորեքհարիւր տարւոյ Օսմանցւոց թագաւորացն, որ ի սուլթան Օսմանէն մինչեւ այժմ սուլթան Մուհամէտս ժթ թագաւորք են: Համառօտեալ ի սուլթան Օսմա-

նայ մինչեւ ցսուլթան Սէլիմ տանին թուականօք. ի սուլթան Սէլիմէ մինչեւ ցսուլթան Մուհամէտ Հայոց թուականօք. ի սուլթան Մուհամէտէ մինչեւ այս սուլթան Մուհամէտիս ճուլուսն տանին թուականօք. եւ մինչեւ ցարդ, որ Ղ ամ է, հայ թուականօք:

*Տրամադրեմ ըստ յեղանակաց*
*ընդ գաւազանս նոր զայս ցուցեալ,*
*Ի Պարսից հրապաշտութեանց*
*եւ յԱրապկացն կրօնաւորեալ...*

*Դ. Եւ մեք ուստի ուռհի ելաք,*
*եւ աստանօր զօլ դադարեալ.*
*Ըզկայ առցէ բանս պատմութեան,*
*որպէս ասաք՝ չափն անօրինեալ...*
*Ծննդեան Փրկչին թուական հազար*
*վեցհարիւր եօթանասնեալ.*
*Յութերորդի մէջի դիպեալ*
*Մէջիք ըղմեղ եւ յիշեցեալ:*
*Յաւաղ պահոցս հինգերորդի,*
*Ի ՄԷՋ չարթուս եղրակացեալ.*
*Սուրբ Գրիգորի Լուսաւորչին*
*ի չաբաթուն տօնն յառաջեալ:*

*Ի ՄԷՋ Հայոց թուականն է, ՌՃԻԷ* = 1678 (*Մարտ* 16):

*Ձեռագիր Էջմիածնի Մատենադարանի Թ.* 1675, 2*ա*—171*ա* (1732):

2. Թ ա գ ա ւ ո ր ո ւ թ ե ա ն  Օ ս մ ա ն- ց ւ ո ց  հ ա մ ա ռ օ տ ի  պ ա տ մ ո ւ թ ի ւ ն:

խնդրօղք իմաստից եւ կամ այլ գիտու-
թեան գրոց... հարկեցայ համառօտել զՕս-
մանցւոց թագաւորացն պատմութիւն...
մինչեւ ցայսօր... արտադրեալ ի մատենա-
գրացն Օսմանցւոց ումեմն Երեմիա Չէլէպու
Քէօմուրճի Օղլոյ Կ. Պոլսեցւոյ, մերձ ի
թուականին Հայոց ՌՃԽԴին (1695)։

Համառօտ պատմութիւնք թագաւորաց
Օսմանցւոց։

*Ի թարեխն* 711 (*եւ ի թուականութեան Հայոց ՌԿԴ*)․ *յորժամ Ձէնդեղխան Թաթարաց զքաղաքն Պալխ աւերեաց*... (*կը համնի ցամն* 1695)։

*վ․ չատ լաւ խաղեր խաղացիք այս քանի տարիս*։ — *Մինչեւ ցաստ Երեմիա Չէլէպուն գրեալ եւ վճարեալ էր․ թէպէտ եւ մեք ըստ կարոյն մերոյ գեղեցկացուցաք զպարագրու-թիւնս․ եւ ըստ քերթողութեան սառից եւս զոյ(զ)ն ինչ վայելչացուցաք, որպէս եւ կա-րէք տեսանել, ընդ հեղինակին զփորձ առ-նուլ»*։

*Ի լուսանցս կ'ըսուի․ «Այս գեղեցկացու-ցանօղն Դաշտեցի ամենահանճար պարոն Ստեփաննոսն է»*։

*Ձեռ․ Էջմիածնի Մատենադարանի Թ․* 1786, 1*ա*—40*ա* (*ԺԸ*)։

*Գրութիւնս, որ Երեմիայի վերջին գրա-կան երկասիրութիւնը կ'երեւայ, գրուած ար-ձակ չարադրութեամբ, Էջմիածնի օրինակին մէջ պահուած է Ստեփանոս Դաշտեցւոյ*

*խմբագրութեամբ։ Հարազատագոյն ձեւով, թէեւ առանց հեղինակի անուան, աւանդուած է այն՝ Վիեննայի Թ. 786, թղ. 1ա—51ա (1782էն ետքը) եւ Երուսաղէմի Թ. 1176, թղ. 1ա (1821), ձեռագիրներու մէջ.*

Համառօտ պատմութիւն Օսմանցւոց թագաւորաց, որք Ալի Օսման կոչեցան։ *«Ի Թարիխին իւրեանց ՌԺԱ, յորժամ Ճինկիզ խանն Թաթարաց զքաղաքն Պալխ աւերեաց...»։ Վերջաւորութիւնն ըստ վերնոյն։*

*Գրիչը ի կատարածին կը ծանօթագրէ (Վ. 786, թղ. 51ա). «Այս վերջացուցանէ պատմիչն մեր զՊատմութիւն իւր. զի եւ աւուրք կենաց նորա յայսոսիկ ամս վերջացեալ երեւի»։ Հեղինակին անունը չի տար, թերեւս անծանօթ մնացած է գրչին։ Երկու ձեռագիրներն ալ կը շարունակեն Երեմիայի պատմութիւնը սկսեալ 1695 Յուլիսէն եւ կը հասցնեն մինչեւ 1793։ Իր գործին սկիզբը դրած է Երեմիա* Յառաջաբանութիւն *մը, որ Ե. 1176ի համաձայն այս է.*

*«Խնդրողք իմաստից կամ այլ գրոց հարեւանցի տեսանելով կամ վեր ի վերոյ անցանելով ոչ կարեն առնուլ զճաշակ, այսպէս եւ պատմութեանց խնդրողք թէ հին գրուցաց եւ թէ կարգաց թագաւորութեանց։ Տեսի զազգս մեր, զի ոչ զգլուխս եւ ոչ զոտն իմանալով իմաստից եւ այլ գրոց, զայլ եւ այլն խօսին. որպէս եւ ամենայն կարգ խանգարեալ է, նոյնպէս եւ գիտութիւնք եւ խօսակ—*

ցութիւնք նոցին: Վասն որոյ հարկեցայ համառօտ առնել զՕսմանցւոց թագաւորաց պատմութիւն մի, որ զամենայն արարք պարագրէ յինքեան ծաղկաքաղեալ, զի մի՛ զյաճախն տեսեալ փախիցեն (պըյըխ պուռմիշ անելով) ասել թէ թո՛ւհ, յաճախ է այս:

«Եւ այս գոլ պատկանաւոր ունելով յինքեան զկարգադրութիւն. այսպէս լսեմ այսուհետեւ թէ սորա զի՞նչ են անելոց: Եւ այս թէ ո՞րն է որոյ որդի, եւ ի քանի՞ թուում ծնեալ եւ ի քանի՞ թուականի եւ ի քանի՞ տարւոյ ի գահ նստեալ, եւ քանի՞ ամք թագաւորեցին եւ թէ ո՞րքան ի մարտ դիմեցին եւ թէ քանի՞ փէթհ ունին. եւ թէ քանի՞ ամք կենաց նոցա: Եւ թէ ո՛րքան մխթիհք եւ վէզիրք իւրաքանչիւր թագաւորացն, եւ թէ ո՞րն արդարապէս վարեցաւ եւ թէ յորո՞ց ծնաց վաղըֆ եւ խայրաթ մինչեւ ցայսօր ժամանակի: Զբօսանք խնդրողաց եւ անաշխատ պատասխանի հարցողաց ստուգագոյն պատմագիրս:

«Մեծարգոյ եւ քաջ րաբունապետին Տեառն Վարդան վարդապետի ընծայեցեալ յԵրեմիայէ Կոստանդնուպօլսեցւոյ Քէօմիւրճեան, ի թուականիս Հայոց ՌՃԽԸ» (1699). կարդա՛ ՌՃԽԴ, ինչպէս ունի Ստեփանոս Դաշտեցւոյ օրինակը: Այս Ընծայականը կը պակսի Վ. 786ի մէջ:

3. Ոտիւ շարադրեալ անուանք թագաւորաց Օսմանցւոց:

*Նախնի եղեալ քաջն այն Օսման,*
*Այր կորովի եւ զինական...*
*վ. Եղբայր սորա Ահէտ սուլտան,*
*Որ զթշնամիսն եղբօր եսպան:*

*Ձեռ. էջմ. Թ.* 1786, 41 *բ*:

*Այս երեք գրուածներն են անշուշտ զորոնք կը յիշէ Հ. Մ. Չամչեան հետեւեալ ձեւով*[5]. *«Շարադրեաց 1. զՊատմութիւն Օսմանցւոց թագաւորութեան ընդարձակ ի հինգ գիրս, եւ 2. զՀամառօտութիւն նորին ի մի գիր, եւ 3. Միւս եւս առանձին ոտանաւոր ի խնդրոյ Յակոբայ կաթողիկոսի»*:

4. Պատմութիւն Հրակիզման Կ. Պոլսոյ, *«որ եղեւ յամի* 1660 *ի* 14 *Յուլիսի. յորում երկարօրէն գրէ զաղէտս եւ զգլխաւոնական երգս ողբոց յօրինեալ չափով ոտից» ըստ Մ. եպ. Նշանեանի, Թորգոմեան*, 734:

*Գրուածքիս վերջը* (*թղ.* 265 *բ*—270 *ա*) *զետեղած է Երեմիա երկար յիշատակարան մը, ուր կը պատմէ արձակ խօսքով թէ ի՛նչպէս Քէօփրիւլիւ վէզիր կը ծածկէ աղէտը Սուլթանէն եւ թէ ի՛նչպէս լուրը կը հասնի Ինքնակալին: Կը յարէ անմիջապէս Հրկիզումէն ետքը ազգային գործերու առած պատկերը. «Արի Մարտիրոս» պատրիարք* 19*ամսեայ արդիւնաւոր գործունէութենէ ետքը վար կ'առնուի* (1660) *եւ կը յաջորդէ Ղազար Սեբաստացի, Տիւրիկի եպիսկոպոսը, որ իրեն*

---

[5] *Չամչ.*, *Գ.* 723. *Համմտ. եւ* Quadro, 160:

գործիք առած վատչուէր անձնաւորութիւններ՝ կը հալածէ արժանաւորները, կը կեղեքէ ժողովուրդը*: Ի կատարածին կը գրէ Երեմիա. «Եւ զմեղսամեծ Երեմիաս՝ տրուպ եւ յետին բանասիրաց՝ մաղթեմ զի միայն յիշատակի արժանիս համարեսջիք ի սուրբ մաղթանս ձեր...: Զոր համառօտապէս ծրեցի ուրոյն ի չարակարգութենէ Պատմութեանց մերոց՝ զկնի ամի միոյ սուղ ինչ յոքունց եւ զոյգն ի բազմաց հասեալ պատժոյս, որոց եւ ականատեսն եղաք ըստ յոքնապչութեան մտաց տհասիս, զոր անյարմարութիւն բանիդ ցուցանէ որպէս եւ ի յառաջաբանութեանդ է ակարութիւն իմ. որոյ արտասանումն բանիս զարհուրական ցնորիւ ցնդէին միտք իմ եւ յարտադրելն մատանցս գրչի ի բազում տեղիս փղձկանս սրտի արգելոյր զիս ի գծագրելոյ եւ մնայի ապկապկ յիմարութեամբ. բայց սէր եւ խղճ սրտիս որ վասն ձերդ յիշատակի ի բաց մերժելով զամօթ եւ արագելով ի ջան սատար լեալ թելադրէր եւ ստիպէր առ յաւարտումն լրիս այսքաննեաց»: Ըստ այսմ գրութեանս յօրինման տարին է 1661/62:

Ձեռագիր՝ Երուսաղէմ, Ս. Յակոբեանց Մատենադարանի Թ. 892, թղ. 172 բ—270 ա. «Գիրը կը նմանի հեղինակի եղբօր Տէր Կոմիտասի գրին» կը գրէ Նշանեան:

Գրուածքիս բովանդակութեան մանր նկարագրութիւնը կու տայ Երեմիա ինքնին

---

* Այս պատմական վերջաբանը տե՛ս վարը, էջ 225—231:

Աւետարանի Յիշատակարանին մէջ, ուր կը յայտնէ թէ ընծայած է զայն Աբրահամ (Ապրօ) Չէլէպիի որդւոյն Սարգսի. կը գրէ Երեմիա.

Հազար հարիւր եւ իննեկի Հայոց Թվական
Որ մեծ կըրակն եղեւ ի չէնս Բուզանդիան
Զկոծ եւ ըզվիշտ եկաց բնակաց ազգաց հա-
մայն
Եւ ըզվընասըն քաղաքիս անվիպական
Թէ զաւերումն եւ ըզքանդումն հրակիզման
Ի կարգ արկեալ պատմագրութեանս արձա-
նական.
Բայց յաճախեալ գրեցի ոճիւ յատուկ մա-
տեան
Վեցեակ գլխովք մատցուածովք յարմարա-
կան.
Եթէ ողբովք ոտնաչափովք բանք զանազան,
Զամանակաց երից որ անցր պարառական,
Նախ ըզհրոյն գեղիցն վա՛ռ արծարծական,
Զծխատեսիլըն ծախական բորբոքման,
Երկրորդ զողբումն եւ զաշխարումն եղկական
Հանուրց ազգաց զկոծ եւ տագնապ կսկծա-
կան.
Ըզվըտարմանց եւ զխուսափմանցըն գեղեր-
ման,
Որոց եւ հուր մընացելոցըն զայրեցման
ԶԱստուածածնի եկեղեցոյն ըզքանչականն
Այնքան հըրոյն զերծեալ ի բաց ազատական

*Եւ հինգերորդ զմնացելոց կոծ պաշարման*
*Պէսպէս դիպմանց սակս երկիղի եւ նեղու-*
*թեան*
*Համառօտեալ ըղձիւս նոցուն քառակողման*
*Դրանէ ի դուռ ուստի՛ եւ զո՛ւրս նշանական :*
*Եկեղեցիք յարկք եւ պալատք ազգաց համայն*
*Ճամիք մէսճիտք եւ բաղանիք ընդ աղբերա-*
*կան :*
*Ըստ շնորհաց էին յաղքատ մըտացս որ յայտ-*
*նեցան ,*
*Թողեալ զծածուկս Տեառն Արարչին որ յարա-*
*ժամ :*
*Մագսուտ Սարգսի հոգոյ եղբօրս ազնըւական*
*Ընծայեցի սիրոյ սըրտիս սիրոյ արձան ,*
*Ի գանձ սիրոյն նմանէ առ իմս յօժարական*
*Զի յայտնեցին յըղձից բանք մեր խորհրդա-*
*կան . . . :*

*Կը յիշատակէ գրութիւնս նաեւ Ստամ-պօլոյ Պատմութեան մէջ այսպէս* (*էջ* 121) ·

*«Կամի՞ս զայլ գրուատ սորին ·*
*ընթերցիր* զԳիրք իմ Հրակիզման» :

*Եւ դարձեալ՝ խօսելով Գումգաբուի Ս. Աստուածածին եկեղեցւոյ մասին կը գրէ* (*էջ* 8) ·

*Զսա շրջապատեաց մեծ հուրն՝*
*փրկեցաւ ինքն մեծհրաշական ·*
*Որպէս զՊատմութիւնս տեսեր՝*
*՚ւ Եռք տունք մեր ի վայրս կիզեցան :*

5. Պատմութիւնք Ստամպօլոյ: — *Գրութիւնս ձեռագիրներու մէջ մասնաւոր խորագիր մը չունի. այսպէս կ'անուանէ զայն հեղինակին եղբայրը՝ երանելի Տէր Կոմիտաս գրուածքին վերջը դրած Յիշատակարանին մէջ (յամէ* 1697) *այս խօսքերով*[6].

Պատմութիւնս ըՍտամպօլու *երէց յեղբօրէս*
*երգեցան.*
*Որոյ անուն յորջորջիւր Երեմիա Չէլէպի*
*Քէօմիւրճեան.*
*Բայց նարդենիս որ գրեցաւ կրտսերէ յեղբօրէ*
*նորայն*
*Պիտակ Կոմիտաս երէց՝ ստորադասն նոյնոյ*
*Քէօմիւրճեան:*

*Այսպէս կը կոչէ զայն նաեւ առ ոմն սիրելի եւ ծանօթ դրած թղթին մէջ՝ յիշելով* Քէմէրներ *կոչուած վայրը*[7].

*Քանզի զովեն տեսօղք զքաղցրութիւն նորա*
*Եւս առաւել երէց եղբայրն իմ Երեմիայ,*
*Ի* Պատմութիւնս ըՍտամպօլու *զովէ զնա:*

*Երեմիա անխորագիր թողլով գրուածքս՝ ճակատը կը դնէ ընծայականս.*

*«Մեծարգոյ եւ քաջ բաբունապետին տեառն Վարդանայ վարդապետի ընծայեալ յԵրեմիայէ Կ. Պօլսեցւոյ»:*

---

[6] *Բազմավէպ*, 1926, *էջ* 198: *Թորգոմեան*, 121—122, 134:

[7] *Բազմավէպ*, 1926, *էջ* 198: *Հմմտ. Պատմ. Ստամպոլոյ*, *էջ* 43:

Կը յաջորդէ ցանկ մը Ա—Ր գլուխներու բովանդակութեան։

Բուն գրուածքը կը սկսի (Ա. գլուխ).

Այս լիցի պատճէն բանիս,
իմաստնոց տալով պատասխան.
Ըստ սաստիկ խնդրոյն յիշատակ՝
բարունոյ Վարդանայ ընծայն.
Վ. Տացէ լսել տեսանել
ընդ քեւ կեանսն յանզրաւ խնդութեան։

Ձեռագիրներ՝ Էջմ. Թ. 1345, թղ. 315բ—348ա (1697, Ա.—Է. գլուխք). 1675, թղ. 179ա—270ա (1732)։ Օրինակ Դկտ. Վ. Թորգոմեանի (1697. Հմմտ. Թորգոմեան, 126)։ Երուսաղէմ, Թ. 1030, 1ա—40. «Ինքնագիր հեղինակին, որ ապա լուսանցներու վրայ բրած է յաւելումներ եւ սրբագրութիւններ». Մ. եպ. Նշանեան։

Հրատարակութիւն՝ Թորգոմեան, էջ 1—122. Հանդերձ Ծանօթագրութեամբք։

Երեմիա ձեռնարկած է երկասիրութեանս Վարդան վարդապետի խնդրանքով, որ Վարդան Բաղիշեցին կ'երեւայ († 1704 յԱմրտօլու վանս ի Բաղէշ)։ Իբրեւ առաջնորդ—ուղեցոյց կը ներկայանայ հոս Երեմիա եւ իր վարդապետին հետ պտոյտ մը կը կատարէ Կ. Պոլսոյ մէջ եւ արուարձանները, մի առ մի նկարագրելով քաղաքին զննավայրերը[8]։ Վարդան

[8] Հմմտ. Թորգոմեան, էջ 129—131։

վարդապետ կ՚երեւայ թէ Կ·Պոլիս եկած է 1660ին եւ այս առթիւ առաջարկած է Երեմիայի գրել քաղաքին նկարագրութիւնը· Երեմիա յանձն առած է եւ ամբողջը իբրեւ ուղեցոյց մը նուիրած է Վարդապետին։ Ա·—Բ· գլուխները գրուած են 1661—1664 տարիներուն· 1665ին մեկնելով Բերիա՝ ընդհատուած է գործը· Հազիւ 1673ին[9] յատկապէս 1681ին կրկին ձեռք առած է զայն եւ աւարտած է 1689ին։ Ը· գրքին ընծայականին մէջ կ՚ըսէ (էջ 120)·

Ի փանաք մըտաց մատանցս
  զայս ծաղիկ մի լե՛ր վայելման·
Հազար հարիւր եւ տասանց (1661)
  գրեալս սա 'ւ անկեալ անպիտան·
Արդ հազար հարիւր 'ւ երսուն (1681)
  եւ հասեալ մասամբք երեմեան·

Գործը վերջին կերպարանքը առած է 1689ին· կը գրէ Ը· գլխոյն վերջը (էջ 120)՝

---

[9] Երրորդ գլխուն մէջ կը գրէ (էջ 40)·

Մօտ այսմ պատրիարքարան
  Այգաֆօսն Երուսաղէմեան...
Այժմիկ նստի պատրիարգ՝
  տէսրօղի Տօսիթէոսն այն·
Զօրիւք մինչ զի սա հասեալ՝
  ծանօթ մեզ եւ մեր նախնական։

Խօսքը Երուսաղէմի Դոսիթէոս Բ· պատրիարքի (1669—1707) մասին է անշուշտ եւ կ՚ակնարկէ անոր պատրիարքութեան չորրորդ տարին (1673)։

*Բաւ է գիտնոց իմաստնոց*
*զվերոյգրեալս որ թէ իմանան.*
*Հայ թուականօք ԴԱ ՋԻՆՋ է,*
*Երեմիաս յանգեալ զիւր ընծայն:*

*Թորգոմեան* (128) *Ստամպօլոյ Պատմութեան աւարտման թուականը կը համարի* 1684 (*ՋԻՆՋ է*). *բայց ինծի կը թուի թէ Երեմիա իր գրութիւնը վերջացուցած է* 1689*ին*, *այն է ԴԱ ՋԻՆՋ է թուին. այս ինքն* 1673 *յատկապէս* 1681*ին սկսած է շարունակել* 1664*ին կիսաւարտ ձգած աշխատութիւնը եւ* 1689*ին ի յանգ հանած է:*

*Երեմիա Ստամպօլոյ Պատմութեան մէջ* (*էջ* 43) *կը խոստանայ գրել նաեւ Սուլթան Սուլէյմանի բերած աղբիւրներու նկարագրութիւնը.*

*Իբր հարիւր աղբերակօք*
*ի սահմանս ուր պիտոյացան.*
*Ամէն մի զանուն ստացեալ,*
զորս թողի գրել յայլ մատեան:

*Ինձ անծանօթ կը մնայ այս գործը:*

6. Համառօտ ստորագրութիւն Կ. Պոլսոյ Նեղուցի, «*աշխարհիկ ոճով ու ոտանաւոր*»:

«*Սոյն ստորագրութեան գիրքն իտալերէն ալ գրած է կ՚ըսուի, որուն մէջ Նեղուցի երեւելի գիւղերուն այժմեան անուններուն հետ նաեւ գրած է եղեր հին անուններն ալ*[10]»:

10 *Տ. Վ. Պալեան՝ Բիւրակն*, 1897, *էջ* 612:

7. Օրագրութիւն: «*Պարունակութիւնն է Օրագրութիւնն Երեմիա Չէլէպի Քէօմիւրճեանի՝ սկսեալ ՌՂԷ* (1648) *յունիս* 11 *մինչեւ ՌՃԺԲ* (1663) *Նոյեմբ.* 11. *յորում նոյն ինքն Հեղինակն ձեռքով օրը օրին արձանագրուած են* 15 *տարուան եւ* 6 *ամսուան քաղաքական, ազգային, ընտանեկան եւ մասնաւոր դէպքերը, մերթ համառօտ եւ ամփոփ եւ մերթ բաւականին ընդարձակ: Կ'երեւայ թէ Օրագրութիւնը ունեցած է իր շարունակութիւնը, բայց վերջին մասն ինկած ու կորսուած է*[11]»:

*Ինքնագիր Ձեռագիրը կը պահուի Երուսաղէմ Ս. Յակոբեանց Մատենադարանին մէջ, Թ.* 1893 (*Թուղթ՝* 373, *Մեծութիւն՝* 15 × 10 *սմ.*):

*Ձեռագրին մանրնկարագրութիւնը տուած է Մեսրոպ եպ. Նշանեան՝ Օրագրութիւն Երեմիա Չէլէպի Քեօմիւրճեանի, Տ ո ղ ա կ ա թ, Ս. Էջմիածնի հայագիտական ժողովածու. Գիրք Ա. Վաղարշապատ*, 1913, *էջ* 47—65. *ուր յառաջ բերուած են նաեւ ընդարձակ քաղուածքներ Օրագրութենէն* (*էջ* 49—65): *Կը գրէ Մեսրոպ սրբազան* (*էջ* 65) *թէ «արդէն տպագրութեան համար պատրաստած ունինք Երեմիա Չէլէպիի այս գործը». դժբախտաբար մինչեւ օրս լոյս չէ տեսած դեռ այս կարեւոր աշխատութիւնը:*

---

11 *Նշանեան առ Թորգոմեանի, էջ* 717—718 *ծան. եւ* 737: *Հմմտ. եւ Ազանունի, Միաբանք*, 136:

Իւր աշխատութիւնը անուանած է Երեմիա «Ժամանակագիր եւ պատմութիւն» (Թղ. 2բ. հմմտ. Տողակաթ, էջ 48): Այլուր կ՚անուանէ «Տարակարգութիւն Պատմութեանց»: Օրագրութեանս ընդարձակ խմբագրութիւնն է «Տարեգրական պատմութիւնը»:

8. Տարեգրական Պատմութիւն: «Ամբողջ գործը կրնայ երեք մասի բաժնուիլ. Ա. Պոլսոյ եւ գաւառներուն մէջ պատահած հրդեհներուն մանրամասն պատմութիւնը, որուն մէջ է նաեւ երկրաշարժներու, ողողումներու, մահ տարաժամի եւս նկարագրութիւնը:

Բ. Իր ժամանակի Օսմանցւոց պատերազմները ընդդէմ Մաճառաց կամ Աւստրիացւոց, Ֆռանկաց, Վէնետիկցւոց, Պարսից եւն. քաղաքական հանդէսները, գլխաւորներու երեւումը, սուլթաններու եւ վէզիրներու նշանաւոր գործերու յիշատակութիւն, պալատական էնթրիկներուն եւ այլն:

Գ. Հայոց կաթողիկոսներու, Պոլսոյ եւ Երուսաղէմի պատրիարքներուն, Էջմիածնի նուիրակներուն կռիւները, աթոռներուն յափշտակութիւնը եւն: Միով բանիւ 1648—1690 թուականներուն մէջ պատահած բոլոր քաղաքական ու ցեղային կռիւները, ազգային դէպքերը, իրաւանց բռնաբարութիւնները»: Այսպէս ըստ Հ. Յ. Թորոսեանի[12]:

---

[12] Թորգոմեան, 186:

*Իսկ Հ. Գ. Զարբհանալեան*[13] *կը ներկայացնէ զայն իբրեւ ժամանակակից պատմութիւն «Թէպէտ եւ խառնիխուռն ոճով եւ լեզուով» պատմուած: «Հինգ մասն բաժնած է հեղինակը՝ իր պատմական գլխաւոր գրուածքը. յորս ազգին զանազան եկեղեցեաց ի տաճկաց աւերիլն ու քանդիլը մի առ մի կը յիշատակէ. ու շարունակելով Առաքել Դաւրիժեցւոյ պատմութիւնը Թուրքաց, Պարսից եւ օսմանեան իշխողաց եւ բռնակալաց իրարու դէմ տուած պատերազմաց եւ յաղթութեանց աղետալի անցքը կ՚աւանդէ, ու այն առթիւ եղած մանկաժողովից սրտաճմլիկ նկարագիրն կ՚ընէ, երբ այլադգիք բռնութեամբ քրիստոնէից տղայքն իրենց զօրաց բանակին մէջ կը խառնէին, ու զանոնք պատերազմաց դաշտերը կը տանէին: Մէջ կը բերէ անոնց ատելութիւն ու մախանքն ընդդէմ քրիստոնէից, ու նոր նահատակաց պատմութիւններն, երբ աստուածախրախոյս արիութեամբ՝ հաւատոյ ճշմարտութեան վրայ յօժարամիտ իրենց արիւնն ու կեանքը կը դնէին»:*

*Զամչեան, որ ունեցած է զայն աչքի առաջ, կ՚անուանէ «Պատմութիւն անցից իւրոյ ժամանակի՝ ստուգութեամբ եւ հաւատարմութեամբ»: Իսկ Սոմալեան*[14] *կը կոչէ ու-*

---

[13] *Պատմ. հայերէն դպրութեան. Բ.*[2], *էջ* 442—443:

[14] Quadro, *էջ* 158—160:

բոյն անուններով՝ 1. Una Cronaca di quanto avvene a' suoi tempi. 2. Una Storia della guerra di Vienna sotto il sultano Maometto IV. nel 1660, all' incirca fra i Turchi e Tedeschi. Վերջինն է՝ «Պատմութիւն պատերազմին Պեչայ այն է Գերմանացւոց»:

«Ես այնպէս կ'ենթադրեմ, կը գրէ Նշանեան[15], թէ Տարեգրական պատմութեան աղբիւրը եւ հիմն եղած է Երեմիայի Օրագրութիւնը, որովհետեւ Թորգոմեանի Տարեգրականէն յառաջ բերած կտորները մեծ նմանութիւն ունին անոր հետ, մանաւանդ Զամչեանի յառաջբերութիւններէն ոմանք, որոնք բառ առ բառ կ'ընթանան Օրագրութեան հետ, ոճի աննշան փոփոխութեամբ միայն»:

Օրագրութեան նպատակն էր հաւաքել նիւթեր ժամանակակից Հայոց պատմութիւն մը գրելու, իբրեւ շարունակութիւն Առաքել Դաւրիժեցւոյ Պատմութեան: Արդէն 1666ին իր փափագն էր գրել «զՊատմութիւնս որ ինչ նարդենիս ի Հայումս գործեցան», բայց կը սպասէր — ժամանակակիցներու ծաղրանքէն զերծ մնալու համար — որ բարձրագոյն անձնաւորութենէ մը հրաման հասնէր իրեն առ այս: Թէ այսպիսի յանձնարարութիւն մ'եղա՞ւ իրեն բարձրաստիճան անձէ մը, չգիտեմ, բայց ինձ կը թուի թէ Տարեգրական

15 Թորգոմեան, 718, ծան.: Հմմտ. այս մասին ընդարձակ Ծողակաթ, էջ 49—52:

պատմութիւնը այդ ծրագրուած աշխատութիւնն էր: Աբրահամ Ջէլէպիի Աւետարանին Յիշատակարանին մէջ կը գրէ·

Յայս պատրողական յաշխարհ
ցանկացայ յիշատակ անուան·
Թէպէտ ստորեւ եմ հանուրցդ,
այլ ակն իմ ի վեր ամբարձան·
Ունէի եւ ըղձայի
ըստ երկրորդ հատորն յարմարման·
Մինն զՊատմութիւնս նարդենիս
ի Հայումս զոր ինչ գործեցան·
Տեսի զի սուտականք են
անցեալ իրք եւ քամահական
Որպէս ոմն որ զխատաչուէրս
անդոսնէ յոյժ եպերական·
Արդելի թողի եւ զայն
թէ լիցի ի վեհիցն հրաման·
Ապա թէ գրեմք եւ զայն՝
զի չլինիցիմք մեք պարսաւական...
Թէ Աստուած լիցի ինձ հաշտ
առնելոյ տեսլեան իւր արժան·
Ժրտեմ չթողուլ կարօտ,
յաջորդէ զայնս ի յաւարտման:

Երեմիայի այս կրկին երկերը՝ Օրագրութիւնն եւ Տարեգրական պատմութիւնը կը գտնուին դժբախտաբար մինչեւ օրս անտիպ:

Տարեգրական պատմութեան ինքնագիր ձեռագիրը կը պահուի Վիեննայի, Մխիթա-

րեան Մատենադարանի մէջ, Թ. 509[16]. «ամբողջ գիրքը բաղկացած է միջագիր 255 թղթերէ: Գրութիւնը այնքան գեղեցիկ չէ. ունի քանի մը դատարկ էջեր[17]»:

Գրութեանս Ա. եւ Գ. մասերէն քաղուածներ տուած է Հ. Ս. Երեմեան, Բազմավէպ, 1902, էջ 368—369, 473—479. հմմտ. նաեւ Թորգոմեանի յառաջբերութիւնները Հ. Յ. Թորոսեանի հաղորդագրութեամբ:

*

Պատմական բանք իւրոյ ժամանակին, յօրինեալ յամի 1682: Կը յիշէ զայս Նշանեան Սրբազան իր հին ցուցակին մէջ[18]. կը պակսի նորին մէջ: «Այժմ վստահաբար կրնամ ըսել, կը գրէ ինձ Սրբազանը, թէ Պատմական բանք իւրոյ ժամանակին Երեմիայի 1682ին էջմիածին գրած ընդարձակ նամակն է (տե՛ս § 36, ժգ), որուն մէջ նկարագրուած է այդ օրերուն տեղի ունեցած կարեւոր դէպքերը: Մեր ձեռագիրներու ցուցակագրողը՝ Տիգրան Սաւալանեան ա՛յդպէս անուանած է այդ նամակը»:

Ուրիշ պատմական գրուածք մ'ալ կը յիշէ Տ. Վ. Պալեան[19]. «Պատմութիւն մ'իր ժամանակի անցքերուն վերաբերեալ. Հայերը (.....) ի պահք կը բռնեն. եւ իրենց քա—

---

16 Բազմավէպ, 1923, էջ 76:

17 Անդ, 1902, էջ 367:

18 Թորգոմեան, 735:

19 Բիւրակն, 1897, էջ 612: Գրաքննութեան պատճառաւ բառերն այլափոխուած կ'երեւան:

հանաներն թլփատելնուն համար քառասուն պահել կու տան»:

Պալեան գրուածքիս ձեռագիր օրինակը տեսած է 1885ին ի Յոպպէ Գերմանիոյ հիւպատոս Ս. Մուրատեանի քով:

9. Պատմութիւն նորոց նահատակաց: «Գրած է առանձինն եւ ազգային նահատակաց Պատմութիւններ, թէ ի Յայսմաւուրաց եւ թէ յայլ գրոց, այլ եւ ի լրոյ եւ ի տեսոյ քաղեալ եւ հաւաքեալ»[20]: Այս քաղուածոյ աշխատութիւնը ի գլուխ հանած է Երեմիա 1686ին «յորժամ յայց էլ կողմանցս (այս ինքն յանապատն Կուսանաց ի Կարբի), եւ նուիրեաց կուսանացն զգրուած իւր Պատմութիւն նորոց նահատակաց[21]»: Հոս ի մէջ այլոց կը գրէ Երեմիա ոտանաւոր չափով.

Երեմիայի այս գրուատ
Սրբուհեաց անձանց ընծայեալ,
Որ յաշխարհն Արարատեան
մերձ ի գիւղ Կարբոյ մեր տեսեալ.
Բակերտին (միշտ) հաճեցեալք
եւ աշխարհատեացք են եղեալ,
Հոգեկեցոյց հաւատովք
եւ յուսովք ի վանքս ժողովեալ.
Է եւ Անապատ անուամբ,
ուր յաղօթս միաբան կանխեալ,
Արքայութեան Տեառն յուսով
երկնաւոր կենացն ակնարկեալ...:

20 Ալիշան՝ Հայապատում, Ա., § 133:
21 Նոյն՝ Այրարատ, էջ 180. հմմտ. եւ 174:

*Ինծ կը թուի թէ այս գրութիւնը կ՚ակ-նարկէ Երեմիա, երբ կը գրէ Ստամպօլոյ Պատմութեան մէջ* (*էջ* 51).

*Համալ մատաղըն Գրիգոր*
*նահատակըն զարմանազան,*
Զներբողութիւնն *թէ կամիս՝*
ի գրելս *լինիս խընդման*:

*Չունիմ հնարաւորութիւն ստուգելու, թէ Նոր նահատակներու պատմութեան մէջ հիւսուա՞ծ է նաեւ Համալ Գրիգորի ներբողութիւնը*:

*Ձեռագիր՝ Վենետիկի Մխիթ. Մատ. Թ.* 509[22]:

10. Վիպասանութիւն յԱպրօ Չէլէպի:

*Երեմիա, որ Աբրահամ Չէլէպիի շնոր-հաց արժանացած՝ խառնուած էր անոր որդ-ւոց թուին մէջ, կ՚երգէ հոս իր Մեկենասի կեանքէն դրուագներ: Ե. Հատորը, գրուած* 1672*ին՝ Չէլէպիի մասնաւոր յանձնարարու-թեամբ, կ՚ողբայ Կրետէի առումը Թուրքե-րէն* (1668):

*Գրութիւնս տեսայ* 1930 *Դեկտեմբերին ի Միւնխէն* Ludwig Rosenthal *գրավաճառին քով, եւ ցուցակագրեցի հապճեպ: Կարեւոր կը համարիմ դնել հոս ցուցակագրութիւնս ամբողջութեամբ*:

*Թուղթ՝* 144: *Մեծութիւն՝* 19 × 14 *հմ.*:

---

[22] *Հմմտ. Բազմավէպ*, 1923, *էջ* 76:

Նիւթ՝ մագաղաթ: Գիր՝ նոտր: Կազմ՝ կաշի: Հանգամանք՝ լաւ: Կիսախորաններ՝ Լուսանցագարդեր, Զարդագրեր, բազմագոյն ոսկեխառն: Կարմրագրեր՝ յաճախ: Դատարկ թղթեր՝ 1—4, 7բ—8բ: Տեղի՝ Կ. Պոլիս. ժամանակ 1666—1672: Գրիչ՝ հեղինակը: Ստացիչ՝ Աբրահամ Չէլէպի: Հաւանօրէն Ապըրոյեանց Մատենադարանէն ելած. ի Պարիս հնավաճառներու քով ձեռք բերուած. այժմ L. Rosenthal գրավաճառի քով ի վաճառ հանուած 550 մարքի[23]:

Սկիզբը զետեղուած է Ա.—Ե. հատորներու բովանդակութիւնն այսպէս.

«Այս ինչ գրեալ կայ ի գիրքս որ ի Հինգերորդ հատոր որոշեալ:

Առաջին հատոր ստեղծագործութեան արարչին զէքս. եւ Յիսուսի փրկագործութեան ընտրելովք զբազում արս պատուեալս ըստ տարերաց, ըստ լուսաւորացն ընթացից, ըստ տնկականաց բնութեանց, ըստ ծաղկանց, ... հանդիպմունք բարւոյ առ բարիս. անուանակրութիւն պայազատութեան Չէլէպոյն, յորմէ լեալն որդի սեպհական աշխարհ նոցա եւ զեկացն զանազան դրուատութեամբ զբարուցն ազգարարութեամբ որդովք զալուստ յայսր զառ ի մեզ սիրոյն աւարտմամբ:

Երկրորդ հատորիս. Ի ժամանակս սուլթան Իպրահիմի առին զԿիրիտ. փաշայն Տէլլ

[23] Հմմտ. L. Rosenthals Antiquariatskatalog, Nr. 167, Թ. 12:

Հիւսէին անդ երթալ դարխան: Աբրահամ Զէլէպի ընդ նմա երթայ ի վաճառականութիւն՝ ականատես լեալ ամենայն աշխարհին քրիստոնէից կոտորելոյն եւ գերելոյն եւ բեկելոյ սրբատեղեաց եւ ծախելոյ: Որ եւ ի ցաւակցութիւն բազմաց յոլով շնորհս առնէ խնդրողաց եւ տկարաց յամեն նորա անդր: Ի մէջիր լինելն Քէօփրիւլիի ի նուաճումն զօրաց եւ ի կոտորումն պարոնաց եւ պէկլէրպէկաց· յոլովից միջի եւ սպան զՏէլի Հուսէին փաշան: Կալան եւ զՋէլէպին· խուեցին զրամս· անուանի գոլոյն չկամեցաւ մնալ ի Պէլիկրատ· գայ աստ ընտանեօք ՌՃԺ թվականիս Հայոց: Սէրն առ մեզ: Որդոցն պայազատաց վխի-մունք: Երթայն ի Մօսայ ընդ քէհեայի փաշային խուրդ: Մահ փոքրիկ զաւեր խուրում աստանօր: Ողբ ողեալս առաքեալ սփոփականաւ նմա: Յետ դառնալն առ այսր: Ստանալն զԱւետարանն որոյ եւ խնդրէ զյիշատակարանն: Յորժամ ետես զյարմարումն եւ զծայրագոյնն որոնէր ըստ այլազգացն պէսպէս շնորհաց փարթամութեանց: Փոքր իմ ցուցեալ զխեւ եւ զանկարգութիւն ազգիս, յորս վերջացեալ ուսմունք՝ վերջացան եւ անուանիք, ուր եւ կան ցրուեալ· եւ ես ի քաղաքիս անոպայք: Զընդմեղհասեալ չուառութիւնք պէսպէս փորձանօք եւ հրկիզութեամբն, անընդունակութեամբ եւ մերս առացուած ուսմանց ինչ սուղեցաւ: Գոն եւ հրա-

*կիզութեանց վիպմունք զոր յետոյ այնպէս կատարեցաւ:*

Երրորդ հատորս՝ *զՀրկիզմանէն: Հայոց սուրբ Նիկողայոս եւ սուրբ Սարգիս եկեղեցիք այրեալ. զառնուլն զտեղին սուրբ Սարգսեցիք ոչ կամեցան տալ նմա. ոչ կամեցան եւ զշինուածն. առանց հրամանի շինուածոցն համարձակեալք փառքութեամբ եւ անհամեստութեամբ: Շինեցաւ եւ եկեղեցին սուրբ Նիկողայոսի ընչիւք Չէլէպոյն: Լուեալ Չէլէպոյն որ էր անդր ի Մօսա երբ եկեալ յէորէնէ՝ գրեալ իմ առ նա ծանուցանելով զէութիւն. զարձ արար զրոյ մեր եթէ լեզուագարեալ է եւ յիրաւի զի չէ հաստատութեամբ: Մահն Քէօփրուլիի յէորէնէ, որոյ որդին նստեալ վէզիր. զառնոյ զայ թագաւորան յիստամպօլ յաւուր զատկէ կիրակէի ՌՃԺԱ թվկնին. քակէ զնորաշէն եկեղեցին, փոքր ցուցեալ զաղէտն: Յիմարութիւն աբանից բանտարգելոց. վշտացուցեալ Հայք զՉէլէպին. բանն եհաս առ թագաւորն. սպանեալ զՄէյմարն, աքսորեալ զբանտարգեալսն: Զթագծանս մեր այլովք. զցաւին Չէլէպոյն. զմխիթարականն առակօք. զընդունելի զոյն աւարտմամբ ի փառս Աստուծոյ:*

Չորրորդ հատոր: *Ըստ աւերմանն Երուսաղէմի սակաւուք զգերութիւնն ի Բաբիլօն, առեալ ի Սաղմոսացն Դաւթի ողբանք ի նոյն տեսութիւն ի քանդումն տաճարին եւ Եկեղեցեացն զմեր ժամանակօք:*

Հինգերորդ հատորս: *Բովանդակ զողբս Երեմիայի մարգարէի որ էր ըստ քանից ալֆապէթիցն Եբրայեցւոց բարբառոյն. որ ի խնդրոյ Չէլէպոյն աստ ոտիւք տաղաչափեալ առ ի յիշատակութիւն սուրբ մարգարէին եւ ի թախծանս ականատեսութեան կղզոյն Կրիտեայ եւ վասն Եկեղեցեացն աւերածոյն. ի փառս Աստուծոյ եւ ի սէր նորա: Ժտեմ մաղթանօք ի ձէնջ ներել որ առ այսր եւ առ Աստուած սխալանաց մեղապարտիս. զի առատաբաշխն զմեր եւ զձեր պարտս շնորհեալ քաւեսցէ ամէն: Որ եւ յիշատակարանք:*

Ա. *Պատճէն բանիս յիշատակի յարձանական*
*Սիրոյ էին զեղման շնորհին պարգեւական*
*Նախ Յիսուսի աստուածորդոյն հօր յիս-*
*կութեան*
*Եւ սուրբ հոգոյն ճշմարտութեան մի յէու-*
*թեան...*

Վ. *Այլ ասացից զպատճառ նորուն այսր դա-*
*րստեան.*
*Եւ առ ձեռին զհետակայն յարդարական:*

*Ընդ ամէնն* 400 *երկտող, ուր կը պատմուի Ասպրօյեան տոհմին ծագումը:*

Բ. *Ի ժամանակս թագաւորին Իպրահիմ խան*
*ՌՂ 'ւ եւակ թվականն որ հայկազան*
*Զոր յայլ տեղոջ ունիմք սակս նոյն պատ-*
*մութեան*
*Որ զժտութիւն եմուտ ի Ֆռանկս ընդ*
*Թուրքաստան...*

Վ. Զի թէ կամի ոք զհրակիզմանն վերծանեալ
Զոր ինչ գրեցի տեսողաբար անդ յարմա-
րեալ:

Երկտողք՝ 400—700:

Գ. Հազար հարիւր եւ իննեկի Հայոց Թւա-
կան
Որ մեծ կըրակն եղեւ ի չէնս Բուզանդիան.
Զկոծ եւ զվիշտ եկաց ընակաց ազգաց
համայն.
Եւ ըզվընասըն քաղաքիս անվիպական:...

Վ. Եւ ըստ ոճին զոր Զէյէպոյս միշտ պա-
հանջեալ,
Պատմողաբար զողբանք ի չարս մեր յար-
մարեալ.
Համարեցի Քրիստոս Աստուած զորս ա-
բարեալ
Զմեղանըս մեր եւ ըզմերոյս լիցի քաւեալ:

Երկտողք՝ 701—1116:

Դ. Հատորս վանկաքանակեալ ի հնացոր-
դաց հակիրճավէպ տամբք. զաւերումն Երու-
սաղէմի տաճարին ընդ գերելոյն եւ ի Սաղ-
մոսացն Դաւթի ողբանք սակաւուք:

Արդ յիշեցուք ի սոյն ոճ ըստ զիպման
տոհմին յակոբեան.
զԵրուսաղէմ քաղաքին Յուդայի ցեղն Իս-
րայիլեան.

Ուր Դաւիթ նստեալ յաթոռ մարգարէ ի
գահս արքունեան,
Եւ զհետք եւ արքայք ընտիրք, բայց ոմանք
որք խոտորեցան...

Վ. Սրբոյ եւ մեծի անուան — յաւիտեանս լի-
ցուք խոստովան.
Եւ պարծեսցուք յօրհնութիւնս գոհու-
թեամբ ի յամենայն ժամ:

Երկտողք՝ 1—100:

Նախերգանակէս յառաջաբանութիւն:

Այս է ողբերգանք ողբոց ըստ հրէիցն
ալֆաբէթից.
Քառակ ճառուք արտադրեալ, լալով եւ
կոծով վշտալից...

Իղձք մաղթանաց.

Օգնեա՛ Հոգիդ սուրբ աստուած բանիս մեր
որ կամք փափաքեալ...

Ե. Հատորս միանգամայն զողբս սրբոյ մարգարէին Երեմիայի. Հոգոյն սրբոյ շնորհօք տաղաչափեալ Դ ճառուք, զոր եւ ինչ բնաբանն է. յեղանակն Ես եմ կորուսելոյ բաղդատարար անձինս թշուառելոյ: Խնդրեմ յիշել ի Քրիստոս: —

Զիարդ միայնակ մընաց
մեծ քաղաքս բազմախմբական.
Եղեւ իբր զկին այրի,
որ չիցէ տէր եւ օգնական...

*Վ. Աստուած Յիսուս պարգեւեա՛*
*բարիոք մեզ զժամն զայն,*
*Զի քեզ գտանիցեմք հաճոյ,*
*եւ ընդ քեզ լիցիմք յաւիտեան:*

*Տունք՝ 190 եւ Յիշատակարան:*

Ասացեալ ծառս առ սակի աւարտման սոյն գրոց *ընդ որս եւ ի Հաֆիզէն ցուցեալ զոմանս տունս զպատկանօրէնէն, յորս եւ անհաճ լեալ ազգիս մեր եւ ուսումնատեաց ռամիկք. զորոց եւ զանզատօրէն բանք...:*

*Պատճառ այսմ գրոցս որ յանհաս սիրոյն Աստուծոյ հրճուարկեալ եւ ի նոյն իսկ աւարտեցաք... (վերջաբանական — հուսկ բանք. 30 թուղթ). ուր կարեւոր ակնարկութիւններ կ՚ընէ ժամանակակից հայ կեանքի մասին:*

*Վ. Եւ այս վաստակ մատանցս եղկելի ձեզ ի վայելս յաւէտ եղիցի. որում եւ գծագրութիւնս աւարտումն եղեւ ի թվկս. ՌՃԻ միակի (1672). եւ յամսոյ մարտի Համայականի...»:*

*Սորին լուսանցքներու վրայ կը տեսնուին Հաֆիզեան քառեակներ կարմրագիր հայատառ–պարսկերէն:*

11. Կոնդակ Ս. Կարապետ Եկեղեցւոյ ի Կրետէ կղզւոջ: 1669 *Սեպտ. 6ին, Քէօփրիլի Ահմէտ մեծ վեզիրը, յետ չորեքամեայ պաշարման նուաճեց Կրետէի Գանտիա քաղաքը: Քրիստոնէական եկեղեցիները վերածուեցան*

մզկիթի: Երկու եկեղեցի միայն շնորհուեցաւ քրիստոնէից, մին Յունաց, զոր Պանայոտաի գնեց Յոյներու համար, եւ երկրորդը Հայոց, զոր Ասլրօ Չէլէպի, հայ վաճառականը 1400 տաղանդի գնեց Հայոց համար (Hammer, III, էջ 634): Եկեղեցին օծուեցաւ յանուն սուրբ Կարապետի: Այս առթիւ կը գրէ Երեմիա գրութիւնս իբրեւ Յիշատակարան–Կոնդակ Եկեղեցւոյն, պատմելով ողբախառն Գան-տիայի առումն եւ «վասն աղէտից բնակչաց կղզւոյն»:

Բովանդակութիւնը այսպէս կը ներ-կայացնէ հեղինակը (Թղ. 1ա—3ա).

«Այս ինչ կայ գրեալ ի գիրքս:

Նախ նախերգանապէս զվշտակրութիւն նախնի եղելոց ազգիս մեր եւ զներգեւանկե-լոցս կարճառօտեալ որ ի բռնակալաց բազում ազգաց:

Բ. Յորում դառնացեալ ժամանակի դտաւ ումն իշխան Աբրահամ անուն...

Գ. Պատճառ պատերազմի եւ առման նոյն Կրետէս կղզոյն՝ սկզբնաւորեալ եւ մինչեւ ցՔեօփրուլի համառօտիւ անցեալ:

Դ. Վիպմունք վասն Քեօփրուլիի եւ վասն որդոյ նորա բարեբախտապէս վէզիրու-թեան եւ վասն Մաճարացն մարտի առ նոքօք:

Ե. Վասն երթալոյ որդոյն Քէօփրիլիի Ահմէտ վէզիրին ի Կիրիտ. եւ չորեք ամօք բազմ եղեալ առնէ զնա. ՌՃԺԸ թվին Հայոց:

Զ· Ողբասարաս բանք սակաւուք վասն աղէտից անցից բնակչաց կղզոյն եւ նարդենիս:

Է· Բանք անցից նեղութեանց որ յիշխանութիւնս Տաճկաց զգլխաւոր պատահեալսն:

Ը· Զմեր ազգիս գլուխ կոչեցելոցն խռովութեանց պատճառսն· բազումք ի նոցանէ պատուհասին յարդար դատաստանէն Աստուծոյ ի խրատ մեզ*:

Թ· Շարեալ եւ զբարեբարութիւն Աբրահամ իշխանին որ էրն ի Կիրիտ եւ ի յառնուլն Տաճկաց զԳանտիա թէ որպէս էառ Եկեղեցի մի Հայոց· գոն բանք հանճարոյ առ այս:

Ժ· Գոն եւ օրինակաւոր բանք ի խրախութիւն եւ ի մխիթարութիւն սոյն իրի դիպելոյ:

ԺԱ· Շարժէ աստուած զնուաստութիւնս մեր ի շարադրութիւն բանիս՝ յուղարկեալ անդր ի Կրիտ:

ԺԲ· Մաղթանք եւ յիշատակութիւն իրր Կոնդակի յիշատակատեառն եւ համայնից սակի աւարտմամբ ի փառս Աստուծոյ:

Բ· գիրք· գովասանականք առ սակի Կաթուղիկէ Եկեղեցւոյ»:

Բովանդակութենէն յառաջ կը բերեմ·

«Ա· Անճառ եւ բազմադեղ մարդասիրութեան ամենիմաղին Աստուծոյ հօր: Որում

* Այս գլխէն ընդարձակ հատուած մը տե՛ս Հ. Գ. Գալէմքեարեան, Կենսագրութիւններ երկու հայ պատրիարքներու եւ տասն եպիսկոպոսներու· Վիեննա 1915, էջ 70—74:

բարերար կամաց նորա նախ զեղուն հաւատով փառատրութիւնս մատուցուք... Արդ որում բանս է առաջիկայ՝ վասն որոյ եւ կամիմ սկզբնաւորել զառնելն Տաճկաց զկղզիս Կրիտէս եւ ապա զԳաստրօ կոչեցեալ քաղաք եւ վասն առնելոյ ազգիս Հայոց զեկեղեցի որ յանուն Ս. Կարապետի օծաւ» (Թղ. 9ա):

Աբրահամ Չէլէպիի մասին կը գրէ. «զորոյ պատկանօրէն պաճար բանի՝ առ արութեան իւրում ազագի՝ յատուկ մատեանս չարագրեցի յաւէտ յիշատակի՝ յազգաց յազգս ընդնարդեանս եւ որ ապառնի. ընդ նմին եւ տաղաչափեալ զողբերգեալն Երեմիայ մարգարէի որ յաղագս աւերածին Երուսաղէմի. ընդ սմին եւ արտասանեալ զպատճառ շինութեան Իստամպօլու եկեղեցեացն որք երբեմն հրակիզեալք էին՝ զորոց զսուրբ Նիկողայոս եկեղեցին յատուկ ի սորին ընչից շինեցաւ. եւ... զշինեալսն եկեալ կործանեաց՝ յառաջին ամի վէզիրութեան իւրոյ որդին Կարմնջեցոյ... Եւ թէ կամ լիցի քեզ առնուլ զճաշակ պատճառի՝ գիտ ի մերում Դպրաբանի, զորոյ միայն օրինակն զոր ասացի կայ առ Պարոն Չէլէպին զոր ընծայեցաքն աղերս ի պարգեւաց սուրբ հոգոյն» (Թղ. 8բ):

Աբրահամ Չէլէպի, որ Կրէտէի առման ժամանակ կը գտնուէր Տաճկաց բանակին մէջ, կը խնդրէ վէզիրէն Հայոց համար — յատկապէս բանակին մէջ գործող հայ վաճառականներու եւ գործաւորներու համար

գրուած Եկեղեցիներէն մին, եւ կ՚ունէ ։ «Եւ յետ այս քան բերկրանաց Պարոն Աբրահամու առաքեաց անդէն մեզ գիրս որպէս եւ յամենայն ժամու եւ զայս աւետիս արդ ժամանեցոյց յունկն մեր բառ յուսոյ իմ եթէ Որդեակ իմ աղօթիւք քովք Եկեղեցի մի ստացայ ի սոյն պանդխտութեան ի քաղաքիս Գասարօ» (Թղ. 41 ա) ։ Այս առթիւ Երեմիա կ՚ոգեւորուի եւ կ՚երգէ գրուատն Կաթողիկէ Ս. Եկեղեցւոյ. գրելով ի սկզբան պատմական մասն Եկեղեցւոյն առումին. «Եւ զայս նախերգաբար որպէս պատմասանութեամբ զպատճառսն ՊԱՅԱՋ արարի» (44 բ) ։ ՊԱՅԱՋ գրութեան թուականն է եւ կը համապատասխանէ փրկչական 1659 թուին, որ ճիշդ չէ, պէտք է կարդալ թերեւս ՊԷՅԵԱՋ, այն է 1670 ։ Բ. մասը գրուած է 1670ին, տե՛ս վարը ։

ԺԲ. «Եւ արդ զայս եւս կարի թախանձական բանիւ աղաչեմ ... զի զայս Կոնդակ յիշատակի անմոռաց առաջի աստուածասիրութեան ձերում յիշեսցի. իբր ի համախմբիլ տօնասէր ժողովրդեանն ի տօնս տէրունականաց եւ տաղաւարաց անդր [ի Կրետէ] բնակելոց եւ պանդխտապէս հանդիպողաց կրկնակի աղերսմամբ հայցեմ զի ընթերցջիք ի լուր ժողովոյն ... Յիշեսջիք ի Քրիստոս Աստուածն ամենակալ զմերոյ յիշեցեալ զպատճառ գիտի եւ առողի եւ ստացողի սուրբ Եկեղեցւոյս Մկրտչի որդւոյն Աստուծոյ, զնազելի եւ զազնուական այրն զովելի՝ զուշիմն

*խորհրդով եւ զներհունն հանճարով զիշխանն մեր աստուածասէր զպարոն Աբրահամ Չէլէպին առ ժամանակաւ համբաւական. եւ զպապն զմահտեսի Ալփիար կոչական, եւ զբարեպաշտ եւ զքրիստոսասէր հայրն իւր զմահտեսի Մուրատխան. եւ զբազմահամեստ մայրն իւր զՇահրիտան. եւ զքրիստոսազգեստ եւ զյոքնազգաստ զամուսինն իւր զԿիւլիհան, հանդերձ արեանառու ազգօք եւ նախնեօք նոցա որ առ Քրիստոս կան հանգուցեալք: Մաղթեցէք եւ վասն երկու որդւոց նորա ընդ իւր եւ տիկնոջն երկայն աւուրբք մնալ, այս ինքն Սարգիս եւ Մատթէոս Չէլէպիքն պարոնորդիք...: Յիշեցէք ի Քրիստոս զեպիսկոպոսն զտէր Սիմէոնն Մշեցի, որ գնացեալ էր ի Կիրիտ եւակ ամօք վասն այսր եղեալ պանդխտեալ քրիստոնէից առ ի հովուապետութիւն նոցա: Յիշեցէք ի Քրիստոս եւ զԻստամպօլցի զտէր Յակոբ քահանայն որ ամաւ միով յառաջ երթեալ անդր եւ սոյն մխիթարութեան հանդիպեալ եւ սոյն խնդութեան արժանացաւ: Յիշեցէք ի Քրիստոս եւ զամենայն ուխտ Եկեղեցւոյս զհանդիպեալ վաճառականսն եւ զգործաւորս արհեստաւորաց, եւ զքարակիրս եւ զնաճարս որք կային ի բանակին: ...Յիշեցէք ի Քրիստոս հուսկ յետոյ եւ զԵրեմիաս ծառայ սրբարանիս՝ զբանիցս բովանդակող, որ ի պատճառս Պարոն Աբրահամու զայս ի լսելիս եւ ի սիրտս ձեր քաղցրացուցի առ ի յօդուտ կենդանեաց եւ*

ննջեցելոց անջինջ կտակաւ ի փառս Աստուծոյ: Եւ վասն Աստուծոյ եւ առ իմս ժառելոյ յիշեցէք եւ ի Քրիստոս զմարմնաւոր ծնօղն մեր զտէր Մարտիրոս քահանայն. եւ ըստ հոգեկանին զտէր Յովաննէս քահանայն: Եւ ես զստացողն մեր յիտեանց` ի մօր ազգաուէ զպապն եւ ծնօղ ես հոգեպէս զմահտեսի Ամբակումն, որք բազում երկասիրութեամբ երախտաւորեցան ի վերայ մանկահասակ տկար տհասութեան մերում ուքնեցուցանել ի մարգարանս գրոց մակացութեան. որ վասն սերտ սիրոյ եւ աղօթից նոցա տէրն տերանց` առատաձիրս շնորհեաց... Դարձեալ եւ յիշեսցի Պարոն Աբրահամ Չէլէպին եւ վասն իմս անարժանութեան որ նորուն բարեսիրութեան` սէր ցուցեալ ընտանեցոյց եւ զայս ես արձան կանգնեաց ի ծովուս Ովկիանեա, որ եւ յորջորջեալ կոչի Գանտիա` զեկեղեցիս անսպառ արփիասարաս անշիջապէս: ... Եւ յայն սակի դարձեալ յոր հանդերձեալ եմ ի սոյն շարադասութեան Կոնդակիս յիշատակի` ուզել բանս յարմարական երգոյ` ձայնի երաժրշտականի` ըստ հոմերական տաղաչափի: Արդ գթութեամբ բարձրելոյն Յիսուսի ես զառագաստ մտաց իմոց բացից եւ զուք զունկն սրտի ձերոյ կալարուք առ իս զի հրաշասցին քաղցրասցին բանքս այսոքիկ յականջս եւ ի սիրտս ձեր` որ ի զովութին ծնօղի մերոյ առ երջանիկ մայրս մեր սուրբ Եկեղեցոյ` եղեալ առաջի նորա գծագիկս

*նորաբողբոջ բանից երփնաւորեալս եւ գունգգոյն փթթեալս երանգաւորեալս…»* (*Թղ.* 46 *բ*—50 *բ*):

Երկրորդ գիրքս *որոյ ցանկն բացատրէ զպէսպէս մխսան ԼԳ ճառուք եւ ԴՃՁԲ* (482) *տամբք երգս գովասանականս առ ի Կաթուղիկէ Եկեղեցի մայրս մեր սուրբ: Գանձի պունով է. զոր եւ եղանակ կամիցիս փոփոխել…* (*Թղ.* 51 *ա*):

*Կը յաջորդեն Երգք Ա—ԼԳ* (*Թղ.* 52 *ա*—83 *ա*). *կը նշանակեմ հոս քանի մը երգերու սկզբնաւորութիւնները միայն.*

Ա. *Երկին կազմել նոր արարչական*
*եւ քան զերկինս հրաշագործական.*
*Ուր անմատոյց խորանն անսահման*
*անեղական զահոյք տէրութեան…*
Բ. *Ի դրախտն յԱդին գերնմանական…*
Գ. *Եկեղեցիս յար նոյեան տապան…*
Ը. *Նոր տապանակ ըստ Իսրայէլին…*
ԺԱ. *Մեծապայծառ փառօք զարդարեալ*
*եկեղեցիս եւ հրաշազարդեալ…*
ԺԶ. *Առակաւոր բանիւն կատարեալ…*
Ի. *Իմանալի ձայնիւ նուագս առեալ…*
ԻԲ. *Երկիրս երկինք այսօր անուանեալ…*
ԻԳ. *Երկնից փեսայն այսօր յարուցեալ…*
ԻԸ. *Խնդա՛ զմիոյ սուրբ ժողովարան*[24]…
ԻԹ. *Բեղ աւետիս որդիք Սիովնի…*

---

[24] *Կը յիշուին հոս Աբրահամ Չէլէպի եւ իրենները:*

ԼԲ[1]· Նորագուարձ ցնծայ բերկրեալ
անապական կոյս դու գովեալ···
ԼԲ[2]· Երգ զարմանազան բարեկերտի խոր-
հուրդ եղեր···
ԼԲ[4]· Տեսէք զհարսըս զարդարեալ
փեսայն անմահ առ ինքն եկեալ···

Վերջ՝ Գրեցաւ եւ չարադրեցաւ բանս Կոն-դակի պատմողաբար եւ գովասանական եր-գով եկեղեցոյս սուրբ Կարապետի որ ի կղզին Կրիտեա Գանտիա կոչեցելոյ ի քաղաքին Գաս-տրօ: Թվին Հայոց ՌՃԺԹ, ի մարտի ամսոյ մտից սկիզբն արարեալ եւ յապրիլի ամսոյ յերեքն աւարտեալ Աստուծով որ էր յաւուր Զատկէ կիրակէի յերկրորդ ժամու՝ հասու-ցեալ նաւացն որ երթային ի Գանտիա· ձե-ռամբ մեղսամած Երեմիայի, սոյն պատմագրի եւ երգողի եւ նօտարի, ի քաղաքս Կոստան-դնուպօլսի· ի փառս Աստուծոյ. ամէն (Թղ· 80 բ):

Կը յաջորդէ իբրեւ ԼԳ· երգ·

Հազար հարիւր Հայոց թվական·
եւ ԺԹ թիւ յաւելեալ·
Ապրիլ ամսոյ յերիսն դիպի,
յաւուր զատկի զայս աւարտեալ:
Զի երեք նաւ պատրաստական,
որ ի Կիրիտ երթալ չտապեալ·
Վազվազեցի հասի նոցա·
ուր Զէլէպուն արքն հետեւեալ:

Աչի տեղք զայս էրր յաւանդ.
տղերս իմ է լերուք խնամեալ.
յԱստուած ՚ւ ձեզ տնեմ յանձին.
ամբողջ ու անփորձ լերուք պահեալ։
Ընդ ձեզ տարէք զայս ի Կրիտէս.
ի Գանտիա քաղաք մուծեալ.
Առ այն ամաւ զառեալն Տաճկաց.
այն որ Գաստրօ կլայ կոչեալ։
Պատրաստագոյն եւ զգուշութեամբ
զամանաթս իմ տեառն հասուցեալ.
Պարոն Աբրահամ չէլէպու
յիմմէ յոգւոյ զայս ընծայեալ։
Զունիմ գիր մի թուղթ մի գրած.
նամակ բանից իր ինչ ազդեալ.
Կամ չկարեմ տալ ձեզ պատուէր,
զի երկնչիմ թէ փոխադրեալ։
Ըստ պատահման բերմանց ազդմանց,
կամ ներհակաց բանն այլայլեալ.
Կամ յանպատեհ ժամու խօսիլ.
զանուշութիւն ի դառն դարձեալ։
Կամ մոռացումն բանի զոլ ցձեզ.
ըստ յիշողութեանց զոր չունեցեալ։
Արդ սա լիով իմացումն է.
անտրոհապէս զպատճէն մեկնեալ։
Սա որ ի ձեռն նորուն հասցէ,
զզարչապարէն բուռն հարեալ.
Սա ի համբոյր աջին տփալի,
տոէպ եւ տոէպ շրթամածեալ...

*Սա ինձ օգնող խօսակցելովն,*
*զողջոյնս սիրոյ առ այն մարթեալ.*
*Սա անմիջոց միջնորդաբար,*
*զիւրալրականն կուռ ընծայեալ...:*

*Ձեռագիրը* (19,4 × 14·3 *սմ.*) *կարմրագիր, տեղ տեղ ոսկեգիր սկզբնատառերով՝ գրուած է նօտրագիր եւ է այժմ սեփականութիւն Պր. Յովհ. Զաւրեանի ի Պարիս: Պր. Զաւրեան թոյլ տուաւ ինձ ազնուօրէն ուսումնասիրել զայն* (4 *Փետր.* 1931)*. որուն կը յայտնեմ այս առթիւ շնորհակալութիւնս:*

12. Յիշատակարան Աւետարանին Աբրահամ Չէլէպւոյ: *Աբրահամ* (*Ապրօ*) *Չէլէպի* 1663*ին կը ստանայ մագաղաթեայ ընտիր Աւետարան մը գրուած հրամանաւ Յովհաննէս արքայեղբօր ի Գռներ ի ձեռն Թորոս գրչի* 1263*ին եւ մանրանկարուած «յայլեւայլ գրչաց», որոնց թուին մէջ է Կոստանդին նկարիչ: Կը խնդրէ Ստացիչը Երեմիայէն, որ կցէ ձեռագրին Յիշատակարան մը. Երեմիա սիրով յանձն կ'առնէ անմահացնել Ապրոյեան գերդաստանի յիշատակը:*

*Հ. Գ. Գալէմքեարեան, որ տեսած է Ձեռագիրս Ապրոյեանց քով, այսպէս կը ցանկէ Երեմիայի Յիշատակարանին բաժինը.*

*Թղ.* 320 *բ. «Ի Յիշատակարան գրոցս: Ասացուածք յարարչութիւն Աստուծոյ եւ յաղագս բնութեանս մեր վերանորոգութեան: Եւ զոր նախագիծ տանցն գեղեցիկ իմն բա-*

ցարբէ. բովանդակեալ լինի առ այս ինչ՝ գլուխ Ե. ճառս Ժէ. տունս ՌՃԽԵ:

Թղ. 321 ա—322 ա. ոտանաւոր չորս աւետարանչաց վրայ. տուներու սկզբնատառերը կը հիւսեն. ԱՒԵՏԱՐԱՆՍ Ի ՎԱՅԵԼՈՒՄՆ:

Թղ. 322 բ—324 ա. Ոտանաւոր՝ Ա—Ք սկզբնատառերով:

Թղ. 324 բ—325 բ. Զյիշատակ նախնական մերային ազինս համառօտել:

Պայծառաջահ սուրբ առաքեալքս որ ծա-
գեցան...
Պայծառ ումն յԱլփիար յիւրըն սեփական
Գայ անցանի ի Պէյիկլրատ Մակեդոնեան:
Որդիս ծնանի ըստ Աստուծոյ զՄուրատ-
խան.
Նա զԱբրահամ ըզՉէլէպիս որում այս բան:
Յորում Թվակա՛ն է ՉԵՂԵԱԼ ՋԱՀԴ (1663)
ի հայկազան.
ԺԱՌԱՆԳԵԱԼ ԺԱՄ (1662) զՏեառըն զա-
լուստն ըմբռնական:
Նա զանցուցեալ զամէնեքումբք ի նախնա-
կան.
Որ յայլ տեղւոջ գրեցաւ գործին իւր գի-
պական...:

Սկզբնատառք տանց՝ ՊԱՐՈՆ ԱԲՐԱՀԱՄ ՉԷԼԷՊՈՅՆ:

Թղ. 325 բ—326 բ. Ըստ կարգի յիշա-

*տակի առ Նախնիան ստացող գրոյս ըստ գովութեան գանձիս։*

*Ծաղկափըթիթ չքեղացեալ անուշ բուր-*
*մամբ...*

*Թղ.* 326 *բ*—328 *բ. Ոտանաւոր,* ՍԱՐԳԸՍԻՒ Ե(Ւ) ՄԱՏԹԷՈՍԻՒ Ե(Ւ) ԱԶԳԱՑ ԱԶԳ ԱՌ Ի ՅԻՇԱՏԱԿԻ *սկզբնատառերով. ուր կ'ըսուի ի մէջ այլոց.*

*Ողիասէրն ըզմահտեսի հայրն Մուրատխան.*
*Զեղբայրն Պետրոս զպայն Ալփխար զար-*
*մատ սոցայն.*
*Ստեղ քորքն Աննայ ընդ Մարիամ զմայրն*
*Նահրխտան.*
*Երկնաթռիչ զձագունսն զՍառայ եւ զՄու-*
*րատխան.*
*Ի միասին սակս ընդ արդարսըն գրեցան..։*

*Թղ.* 328 *բ*—339 *ա. Ըստ քառից Աւետարանչաց տրամաբանեալ մեկնօրէն համեմատութեամբ ի տեարս յիշատակի մաղթական բանիւ, տուն առ տուն այլ ինձ եղանակ ի փառս Աստուծոյ.*

*Սուրբ մատենիս գերազանցեալ,*
*Աւետաւորքս աստուածաղնեալ...*

*Թղ.* 339 *ա. Յիշատակարան Երգողին. տե՛ս Թորգոմեան, էջ* 793—795։

*Ի կատարածին կայ Ղեւոնդ Վ. Փիրղա-*

*լէմեանի յիշատակագրութիւնը. որուն համաձայն նա տեսած է Ձեռագիրս 1879 ապր. 12ին ի Զմիւռնիա Ապրոյեան գերդաստանին մէջ «առ պարոն Մարգար Աստուածատուրեան ազնիւ պարմանին»:*

*Թէ ո՛ւր կը գտնուի այժմ Թանկագին ձեռագիրս, չգիտեմ:*

13. Կոնդակ յիշատակի նորոգման Ս. Գէորգ Եկեղեցւոյն Հայոց ի Փիլիպպուպոլիս (1677):

*Կամենիցի հայերէն խումբ մը գաղթականութեամբ կը հասնի Սեւ ծովու Բուլղարական եզերքը՝ ի Ղալաթիա եւ Սիզուպոլիս: Գաղթականներու Թշուառ դրութեան ծանօթանալով Աբրահամ Չէլէպի յԱդրիանուպոլիս՝ կը փութայ հասցնել անոնց 400 ղուռուշ նպաստ: Սուլթանէն ալ կ՚ելլէ հրաման, որ անոնց տուն եւ տեղ տրուի. կ՚ամփոփուին անոնք Փիլիպէ քաղաքը: Որովհետեւ հոն Հայերը սեպհական Եկեղեցի չունէին, կը դիմեն Սուլթանին, որ շնորհէ իրենց տեղական Յունաց պատկանեալ Եկեղեցիներէն մէկը. կը ստանան Ս. Գէորգ եկեղեցին: Աբրահամ Չէլէպի մտադրած էր ի յիշատակ իր ծնողաց, որոնք ի Փիլիպէ վախճանած էին, յանձն առնել նորոգութեան ծախքը: Բայց կը վախճանի Աբրահամ նոյն տարւոյն: Մատթէոս Չէլէպի, Ապրօյի որդին, որ բացակայ էր հօր մահուան օրը, վերադարձին կ՚իրագործէ հօրը փափագը. 1636 ղուռուշ նուիրաբերելով Կամե-*

նիցցի գաղթականներուն կը նորոգէ Եկեղեցին (1677)։ Այս առթիւ կը գրէ Երեմիա յանուն Աբրահամ Ձէլէպիի՝ Կոնդակս կամ Եկեղեցւոյ նորոգութեան պատմութիւնը։

Գրուածքս, զոր քաղուածաբար ծանօթացուց Յ. Քիւրտեան[25], չունի յատուկ խորագիր։ Քիւրտեան արտագրած է զայն 1919ին ի Կ. Պոլիս Դուրեան Ղեւոնդ եպիսկոպոսի առ Ա. Ալպօյաճեան ուղարկած «հին՝ ժէ. դարու նօտր գրչութեամբ կարմրագիր տետրակէ»[26]։ «Այդ տետրակը ամբողջութեամբ ընդօրինակեցի. եւ տետրակը Պր. Ալպօյաճեանի յանձնեցի... այդ տետրակը այժմ կորսուած կրնամ նկատել։ Այդ տետրակին պարունակութեան մէկ մասը բնագիրն է ... 1828ին համառօտագրեալ Վիպասանութեան»։ Բնագրին երկրորդ գլուխն ալ կը ներկայացնէ վերոյիշեալ Կոնդակը, որուն մէկ մասը միայն, եւ այն քաղուածաբար, հրատարակած է Քիւրտեան, խոստանալով լոյս ընծայել երկրորդ մասն ալ ամբողջութեամբ։

Կոնդակս չունի մասնաւոր խորագիր, գոնէ Քիւրտեան չէ նշանակած. կը սկսի «Աստաքսեալքս ի տանց, տարադրեալք(ս) ի բնակութեանց...»։ Վերջաւորութիւնն է, ինչպէս կը հաղորդէ ինձ յարգելի Բարեկամս. «Սպարեցաւ Կոնդակս յիշատակի պարոն

---

[25] Յ. Քիւրտեան՝ Նիւթեր Պուլկարահայոց պատմութեան համար. Վաւերագրութիւն մը. Բազմավէպ, 1929, էջ 345—348։

[26] Թուղթ առ իս 17 Յունուար 1933։

*Աբրահամ Չէլէպւոյ՝ ժողովրդոց Ֆիլիբբու-բոլսոյ եկեղեցւոյ սրբոյն Գէորգայ գինաւորին Քրիստոսի ի Կ. Պօլիս, ընդ հովանեաւ եօա-մատրան երանելւոյն սրբուհւոյ կուսին Մա-րիամու մօր Տեառն. ձեռամբ այնմ որ ծա-նօթացաւ վշտակցաբար ճառովս ընդ ժողո-վրդեանս վշտակրեալս եւ միշտ հոգեբաղձա-նօք, ի թուաբերութեանս ՌՃ եւ ի ԻԶ ամի* (1677) *հասանելոյ, յաւուր սրբոյ տօնի Խա-չելութեան Տեառն մեծի յուրբաթու աւար-տեալ, ի հռոմականն ամսոյ ապրիլի յերեք-տասանին ի փառս Քրիստոսի Աստուծոյ»:*

*Թէպէտ Կոնդակիս հեղինակը լռած է նշանակել իր անունը գրութեանս սկիզբը կամ վերջը, բայց ունինք կռուաններ վեր հա-նելու թաքնուած հեղինակը. կը գրէր արդէն Յ. Քիւրտեան*[27]*. «Հաւանական կը համարիմ որ ներկայ վաւերագրութեանս սկզբնական բնագիրը Երեմիա Չէլէպի Քէօմիւրճեանի գրչէն իսկ ըլլայ»: Ոչ միայն հաւանական, այլ եւ ստոյգ իսկ է, թէ գրուածքս Երեմիայի հարազատ ծնունդն է, քոյրը Կրետէի Ս. Յով-հաննէս եկեղեցւոյ առման առթիւ գրուած Կոնդակին: Ինքնին կը դնէ գրութեանս մէջ Երեմիա իր կնիքը, երբ իրեն սիրելի բառա-խաղով կը գրէ* (*էջ* 347)*. «Վասն որոյ եւ ող-բասցուք ըստ ողբերգող տեսողին ի հնումն,* որոյ անուանակոչութեան պ ա տ մ ո ղ նա-ուս, *թէ Որբ մնացաք եւ ոչ գոյ մեր հայր.*

---

[27] *Բազմավէպ*, 1929, *էջ* 345:

մարք մեր այրիք ի ժամանակաց մերոց, այլովք հանդերձ»: Կոչումը Երեմիա մարգարէի Ողբէն է (Ե. 3):

Այս տողերուն ուշադիր եղած է 1828ին Ադրիանուպօլսեցի Մեսրոպ եպիսկոպոս, որ ի Փիլիպէ հանդիպած է գրուածքիս եւ պատմական բովանդակութիւնը ծայրաքաղած այսպիսի խորագրի տակ. Վիպասանութիւն առման Ս. Գէորգ եկեղեցւոյ ի Մակեդոնիա ի Փիլիպուպոլիս, ի ձեռաց Յունաց[28]: Համառօտագիրը կը ծանօթագրէ հոն նկատմամբ սկզբնագրի հեղինակին. «եւ ստանօր գրող նախկին պատմութեան զանուն իւր գոլ Երեմիա իբրեւ զԵրեմիա մարգարէ սճանչելի: Եւ անձն այն իմաստասէր զայս եղելութիւն ապա ի սկզբանէ մինչեւ ցկատարած գովելի եւ բարձրագոյն ոճով ոսկետող չարագրութեամբ, նմանութեամբ եւ օրինակաւ զարդարեալ եւ սփոփական մխիթարանս մատուցեալ անձանց այնոցիկ կարօտելոց չարահիւսեալ է ի ՌՃԻԶ թիւ Հայոց եւ յապրիլի ԺԳ ի Կոստանդինուպոլիս ի յեռամատրան եկեղեցւոջ ամենասուրբ Աստուածածնին եւ միշտ անարատ Կուսի»:

14. Յիշատակարան Մաշտոցի: 1661ին այցելած էր Երեմիա իւր հօրը տէր Մարտիրոսի հետ Նիկոմեդիոյ մերձակայ Ղըշլայ

---

[28] Հրատարակած է Յ. Քիւրտեան, Հայոց գաղութը Կամենիցէն Փիլիպէ (1670—1674). պատմական վաւերաթուղթ մը. Բազմավէպ, 1927, էջ 237—239. Հմմտ. նաեւ անդ, Թ. 11, չափիկ, էջ 3ա:

*գիւղը ի Նաւակատիս Նորակառոյց եկեղեցւոյն։ Այս առթիւ նուիրած էր նոյն Եկեղեցւոյն յանուն Խասկալցի Ղումրի տիկնոջ ձեռագիր Մաշտոց մը, որուն կցած է պատմական Յիշատակարան մը*[29]։

*Այս Յիշատակարանին մէջ կը յիշէ Երեմիա թէ գրած է ինքը նաեւ* կոնդակ *մը՝ նուիրուած Ղըշլայի Ս. Գէորգ Եկեղեցւոյ շինութեան. «Թվին ՌՃԺ* (1661) *յաւուրն Համբարձման* (23 *Մայիս*) *եկաք ի Նաւակատիս եկեղեցւոյս... եւ զԹերին լցաք*, որպէս եւ ի կոնտակսն բացայայտեցաք» (*Համմտ. եւ վերը*, *էջ* 45)։

*Ս. Գէորգ Եկեղեցւոյ այս կոնդակը դեռ երեւան չէ եկած. բովանդակութիւնը հետաքրքրական ըլլալու է Նիկոմեդիոյ հայ թեմին պատմական զարգացման տեսակէտով*։

*Թերեւս նման* կոնդակներ *յօրինած ըլլայ Երեմիա նաեւ այն եկեղեցիներու համար, զորոնք Աբրահամ Չէլէպի կառուցած էր ի Սիլիվրի* (1675) *եւ ի Մահալըճ։ Բայց կը պակսի այս մասին որ եւ է յիշատակութիւն*։

15. Յաղագս Դերաքրիստոսին, որ Կէլտի կէլտի ասի. *արարեալ եւ շարադրեալ Երեմիայի դպրի Կոստանդնուպոլսեցւոյ, որ էր ժամանակակից եւ տեսող իրացն ի ՌՃԺԵ* (1666) *թուոջ*։

---

[29] *Հրա. Հայաստան*, 1848, *Թ.* 80. *Երեւակ*, *Ե* (1859), *էջ* 142. *Թորգոմեան*, 157—160, *հանդերձ նմանահանութեամբ ձեռագրին*, *համմտ. նաեւ* 728։

*Սապեթայ անուն Հրեայ ոմն յայտնեալ,*
*Ղարա Մէնթէշի որդի անուանեալ,*
*Որ էր միանձի եւ թէլլալ անդ լեալ,*
*Ի Զմիւռին քաղաք՝ Սապեթայն ծնեալ...*

*Վ. Ի սուրբ աղօթս ձեր յիշել զերի*
*Զի տեսն Յիսուսի մեզ հանդիպեսցի.*
*Ներել զյանցանս մեր եւ ձեր ընդ ձրի,*
*Արժանաւորիլ փառացն արքունի:*

*Վերջարանին տնակապ գրերը կը յօդեն* ԱՅՍ ԲԱՆ ԵՐԵՄԻԱՅԻ:

*Ձեռագիրներ՝ Երուսաղէմ, Ս. Յակոբեանց Մատենադարանի Թ. 605 բ* (1671. *անխորագիր*). 959, *էջ* 805 (1776): *Հաւաքածոյք հայերէն ձեռագրաց Լ. Բայրուրթեանի յԱխլցխա*[30]: *Կը յիշուի նաեւ ի Ձեռագիրս Մխիթ. Մատենադարանի ի Վենետիկ*[31]:

*Հրատարակուած՝ Կ.Պոլիս, անթուական հետեւեալ խորագրով (շապիկի վրայ).* «Տետրակս այս որ կոչի Սապէթայի Սեւու համբաւեալ ի Հրէյից ոմն խաբեբայ Սապէթայ անուն կամէր կրկին մոլորել զմոլորեալսն»: *Իսկ առաջին էջին վրայ խորագիր կը նշանակուի.* «*Վասն սուտ մարգարէին որ կոչիւր Սապէթայի Սեւի*». *բաժնուած է ութ հատուածներու. հեղինակին՝ Երեմիայի անունը լռուած է. ընդ ամէնն* 20 *էջ փոքր ութածալ:*

Sabathai Sevi, *ծնած Զմիւռնիա* 1625*ին*, *հռչակեց ինք զինքը Մեսիա եւ փորձեց յա-*

[30] *Տեսած եմ* 1925 *Օգոստոսին:*
[31] Quadro, 160:

ռաջ բերել լուրջ յեղափոխութիւն մը Հրէից մէջ (1666)։ Ահմեդ Քէօփրիւլու մեծ վեզիրը բանտարկել տուաւ զինքը. խալամութիւնը ընդունելով միայն կրցաւ փրկել գլուխը[32]. մեռաւ 1676ին։ Ձեռագրի մը մէջ կը կարդամ իր մասին[33]. «Ով եղբարք, Թուա. ՌՃԺԵ էր, ապրիլ ամսոյն ԻԶ. Հրէից Մեսիան էկաւ, որ եւ Թաջալ եւ Նեռն եւ Գալտի անուանեցին. յետոյ բանդ դրին քաղաքն Ստամբօլու. եւ յետոյ հանին կապանօք ուղերկեցին Բօղազ հիսարն. կացած եկաց Ե. ամիս։ Ի Հրէից բազում ոսկի եւ արծաթ տուաւ, թէ յետ Ը. ամսոյ լինելոց եմ թագաւոր։ Ի բազմաց լուայ թէ ՋՌ. ոսկի է առեալ։ Յետոյ եկաւ Ատրրնայ առաջի թագաւորին տաճկացաւ. անուն եդին Ազիզ Մահմատ Բանդէ»։

Առաքել Դաւրիժեցւոյ Պատմութեան մէջ կայ հատուած մը, ուր ընդարձակ կը պատմուի Սապեթայի երեւման մասին («Պատմութիւն անցից Հրէից ազգին եւ Սապէթայ անուն ջհտին, որ ասէր թէ Ես եմ Քրիստոսն փրկիչ Հրէից ազգին... եւ այլոց իրակութեանց, որք սոցունց հետեւեցան», էջ 651—665). յառաջ կը բերուի հոս ի մէջ այլոց Սապեթայ Սեւիի մէկ շրջաբերականը ուղղուած Հրէից. որուն համար կ՚ըսուի թէ «Սապէթայն զգիրս զայս լեզուաւն եւ գրովն Հրէից գրեաց ...բայց յետոյ թարգմանեցաւ ի

[32] Հմմտ. Hammer, III, 588—589։
[33] Թորոս Աղբար, Բ., էջ 447—448։

*Հրէից լեզուէ ի հոռոմ լեզու եւ ի հոռոմ լեզուէ թարգմանեցաւ ի յՕսմանցւոց լեզու ձեռամբ ուրեմն իմաստնոյ եւ մեծ թարգմանի սուլթան Մահմատ Թագաւորին (անշուշտ կ'ակնարկուի Պանայոտտի յոյնը) ··· այլ եւ* ի հոռոմ լեզուէն թարգմանեցաւ ի հայ լեզու եւ ի գիր ձեռամբ ուրումն ճարտար դպրի Երեմիա կոչեցելոյ, որ ի նոյն Կոստանդնուպօլիս քաղաքէն էր» (*էջ* 658—659)։ *Խօսքը առանց տարակուսի Երեմիա Չէլէպիի մասին է· յիշեալ Թուղթը տե՛ս Դաւրիժեցի, էջ* 658։

16· Վասն վերստին խայտառակութեան Հրէից, «*նոյնոյ Երեմիայի է չարադրեալ ոտանաւոր*»։ *Սկզբնաւորութիւնն է.*

*Է եւ այս խորհուրդ մեծ իմն հրաշին,*
*Որդւոյն Մարեմայ եւ Հօրն անեղին··*

*Տուներու սկզբնատառերը կը կազմեն ԵՐԵՄԻԱՅԻ*։

*Ի Ձեռագիրս Լ· Բայրութեցեանի յԱխալցխա։ Երուսաղէմ, Թ·* 605 *Բ· եւ* 959։

17· Վասն էֆմէֆճի առնաուտ Տիմոյի ումեմն որ սիրեաց աղջիկ մի հրէի Մրգատայ անուն *եւ սուրբ խորհրդով քարոզէ նմա զՔրիստոս· եւ աղջիկն խոստանայ երթալ ընդ նմա ուր եւ կամիցի մանուկն*։

*Յիստամպօլ քաղաք դուստր մին հրէի*
*Որ էր բնակեալ ի դրան Ֆէնէռի·*
*Յարտաքոյ դրան նոյն իսկէլէի,*
*Յեգերս ծովուն որ Եալի կոչի···*

*Վերջաւորութիւնն տե՛ս վարը՝ էջ* 234։

= *Ի Ձեռագիրս Լ. Բայբուրթցեանի յԱխալցխա* : — *Երեւան, Թանգարանի ձեռագիրներու Թ.* 386, 52*բ*—58*բ* (*ԺԸ. առանց խորագրի*) : *Երուսաղէմ, Թ.* 605*Բ* (1671), 959 : *Հմմտ. Բազմավէպ*, 1897, *էջ* 424. *Աւետիս Պաղտասարեանի օրինակութեամբ. հոս խորագիրն է՝ «Պատմութիւն Առնաուտ Տիմօյին, որ զջհտի աղջիկն առեալ եւ փախեալ է»* :

18. Այլ իմն բան իրէի կնոջն Քերային :

*Ասա քեզ բան ծիծաղելոյ*
*սակս Հրէից ունիմ պատմութեան.*
*Երբեմն աստ կանայք Հրէից*
*ի գրօսանս գան ըստ սովորութեան...*

*Ձեռագիր՝ Էջմ.* 1675, 267*բ*—270*ա* (1732) :

*Էջմիածնի օրինակին մէջ կը գտնուի հատուածս Ստամպօլոյ պատմութեան վերջը. նախնաբար գրուած էր հեղինակէն իբրեւ մասն նոյն գործին Ը. գլխոյն, զետեղուած էջ* 119 *«վասն ոմանց ըստ նոյն» հատուածէն յառաջ, ինչպէս ունին Երուսաղէմի Թ.* 1030, *որ հեղինակին ինքնագիրն է, եւ Թորգոմեանի օրինակը* (*հմմտ. էջ* 93, *ծան.*) : *Վերջնոյս մէջ անծանօթ գրիչ մը* (*Եր. Տ. Կոմիտա՞ս*), *որ Ա—Ը գլուխներու բովանդակութեան ցանկ մը կազմած է, կը նշանակէ Զ. գլխոյն խոստարանութեան մէջ «Դիպմունք Հրէից հարսին որ գնացեալ ի Մանդրան խնդրել զկաթն*

*եւ զկոզի եւ որպէս լինելն նորա»* (*Թորգոմեան*, *էջ* 2):

19· Վիճաբանութիւն ընդդէմ Հրէից· *Կը յիշեն Զամչեան*, *Գ*· 723 *եւ Սոմալեան*, Quadro, 160, «una dissertazione contro i Giudei, ove dimostra a loro di già successa la venuta del Messia ec·» *Կը գրէ Երեմիա*, *թէ երբ Սաբեթայ Սեւի մէջ տեղ ելաւ*, *շատերը գրաւեցան Մեսիայի հարցով եւ գրեցին Հրէից դէմ վիճաբանութիւններ*· *կ'երեւայ թէ նաեւ Երեմիա միջամուխ եղած է վէճին եւ շարադրած այս գրուածքը*:

20· Վիճաբանութիւն ընդդէմ Յունաց, *«զոր նոյն ինքն Երեմիա իր ձեռքով գրած եւ նուիրած է Տիրացու Կիրակոսին*[34]»: *Տէր-Յովհաննէսեանի*[35] *համաձայն տաճկերէն լեզուաւ շարադրած է զայս Երեմիա*:

*Ձեռագիր՝ Վենետիկ*, *Մխիթ*· *Մատենադարան*, *Թ*· 621:

21· Համառօտ հարցմունք եւ պատասխանիք· *ի կատարածին կ'ըսուի*·

*«Ընթերցօղք սորա ուսումնասէր մանկունք*, *յորժամ ընթեռնուք զսա եւ կամ օրինակէք*, *յիշեսջիք ի յաղօթս ձեր զԵրեմիայն որդի տէր Մարտիրոսի քահանայ*(*ի*) *Քոմուրճոյ Կ*· *Պոլսեցի*, *եւ զԹադէոս երէց Համազասպեան որդի տէր Սարգսի ըՍպահանայ*

---

34 *ԲԶՄ*· 1926, *էջ* 197:

35 *Ժամանակագրական պատմութիւն Երուսաղէմի*, *Ա*·, *էջ* 347:

*Երեւանցւոյ․ զի բազում աշխատութեամբ հաւաքեցաք զսա ի սուրբ գրոց կարճառօտ բանիւք, ի յաստուածաբանից, ի փիլիսոփայից, ի պատմագրաց եւ ի կերպից ինչ ազօթից, զորս առեալ ի Լաթինացւոց, զորս ի Յունաց եւ զորս ի Հայոց, ի վայելումն ազգիս Հայկազնեայց արամեան տոհմի, ի փառս Քրիստոսի ի թուին Փրկչին* 1681 *եւ ի Հայոց թուին ՌՃԼ, յամսեանն Նոյեմբերի Ժ, ի Կոստանդինուպօլիս ընդ հովանեաւ սրբոյ Լուսաւորչի»*։

*Ձեռագիրք՝ Նոր-Ջուղայի Ամենափրկիչ Վանաց, Թ․* 151 = *Ս․ Տէր-Աւետիսեան՝ Ցուցակ, Թ․* 491 (*անտիպ*)։ *Էջք․* 72, 123 *ա*—178 *ա* (*ԺԷ․*) *սկիզբն եւ վերջը պակաս*։

*Կը բովանդակէ զանազան, մեծաւ մասամբ կրօնական նիւթոց, բայց նաեւ Հայոց քաղաքական եւ եկեղեցական պատմութեան վերաբերեալ հարցումներ եւ պատասխաններ*։

22․ Պատասխանի Աստուածով եւ վասն Աստուծոյ (առ Սուքիաս վարդապետ), որ արգելեաց զ«Իսկ որ ասեննի», զոր ասացեալ են ի վերջն Հաւատամքին, ի նուաստ յԵրեմիայէ։

*«Նախ միթէ եգի՞տ նա ի գիրս պատմութեանց եթէ այրն այն որ ասացեալ է «Իսկ որք ասենն» խոտան իցէ լեալ չարագործութեամբ, որ վասն այնորիկ արգելէ զասացեալն նորա…*

*վ․ Այս բաւական լիցի, թէ մին մին*

լաւ տեղեկացեալ մտադրութեամբ ընթերցցին եւ լուիցեն եւ զգուշասցին յայնպիսեաց»:

Խօսքը ուղղուած է Սուքիաս վարդապետի դէմ, որ փորձութիւնն ունեցած է արգելելու իբրեւ խոտելի՝ Հաւատամքին կից բանաձեւը «Իսկ որք ասենն»: Երեմիա Ա.—Խ. առարկութիւններով եւ ապացոյցներով ջատագով կը կանգնի ընկալեալ սովորութեան: Թէպէտ զգուշացած է յանուանէ անուանարկելու իր ոսոխը, բայց հետեւեալ տողերու մէջ մատնացոյց ըրած է նորաձեւ վարդապետութեան քարոզիչը. «Ծաղեր եւ Նախատանաց պատճառ գտաւ, զի ասել կարիցեն այլազգ քրիստոնեայք, թէ Հայք յայսմ ամի իմանալով զանգիտութիւն մոլորութեան իւրեանց՝ ի ձեռն Սուքիաս ումեմն հռետորի եւ աստուածաբանութեան վարդապետի բարձին ի Հաւատամքէն զԻսկ որք ասենն»: Պատասխանս գրուած է Եղիազար կաթողիկոսի մահէն քիչ ետքը, հաւանօրէն 1692ին:

Ձեռագիր՝ Վիեննայի Մխիթարեան Մատենադարանի Թ. 779, թղ. 1ա—4ա (1793): Ա՛յս է հաւանօրէն Թորգոմեան, էջ 185 յիշուած գրութիւնը «իսկ որ փառաւորեմք»ի (sic) վրայ: Ասոր հետ նոյն ըլլայ թերեւս՝

23. Պատասխանիք ընդդէմ այնոցիկ, որ բամբասէին զեկեղեցին Հայոց, յորում յիշատակին եւ Կղեմէս եւ գիրք մի Վահան հաւատոյ կոչեցեալ: Այսպէս ըստ Մ. եպ. Նշա–

*նիանի*[36]*: Հաւանօրէն այս գրուածքս կ'ակ-նարկէ Սոմալեան*[37]*, երբ կը գրէ.* un' Apologia dei riti nazionali, sparsa di vivi rimproveri contro gli stessi suoi nazionali cattolici:

*Ձեռագիրներ կը գտնուին յԵրուսաղէմ եւ ի Վենետիկ:*

24. Ճառեր եկեղեցական սուրբ ժողով-ներու վրայ. *կը յիշէ Թորգոմեան, էջ* 185, *որոնք կը գտնուին Սոսամպօլոյ պատմութեան ձեռագրին վերջը: Ինձ անծանօթ այլուստ:*

25. Կտակ խաչելութեան *Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի յաճախեալ յԵրեմիայէ բանաստեղծէ ի խնդրոյ որդւոյն Գրիգորիսի րեաորի:*

*«Նախերգան. Անձառելի շնորհաց հոգ-ւոյն տիրապէս ընդունարանն... Սովորու-թիւն է վարդապետաց, յորժամ քարոզեն, նախ խօսին բան ինչ վասն գովութեան եւ ողջունի ամենօրհնեալ Կուսին...»:*

*Բաժնուած է Ա.—ԻԳ. հատուածներու. կից կայ «ցանկ Կտակիս ի գլուխս ԻԳ. բա-ժանեալ»: Երեմիա ռամկախառն գրաբարով կ'արտայայտուի հոս. Յակոբ Ղրիմեցւոյ քա-րոզի հիման վրայ, զոր կ'ընդլայնէ նորանոր խորհրդածութիւններով:*

*Ձեռագիր՝ Վիեննայի Մխիթ. Մատենա-դարանի Թ.* 407, *թղ.* 116 *ա*—146 *բ* (1697). *Հմմտ. Տաշեան՝ Ցուցակ, էջ* 859:

---

36 *Թորգոմեան*, 735:

37 Quadro, 160:

26 · Քարոզներ տաճկերէն լեզուով · *Ինձ ծանօթ են ·*

ա · Քարոզ ի Վարդավառն · *ի բանն Լոյս ի լուսոյ (°) : Սկիզբը ինկած է Թ · 407, թղ · 9 ա—21 բ ձեռագրին մէջ : Ի կատարածին կ՚ըսուի · «Երեմիա բանաստեղծ չարադրող սոյն բանիս · յայսմ որդի եմ տրուպ ապաշնորհ Գրիգորիս, բաղձանօք ծրեցի մէջ Իջման Տեառն Փրկչիս» եւն :*

բ · Կտակ խաչելութեան *Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, թարգմանեալ թուրքի մուղթասարի, ՌՃԻԸ (1679) թվականի, յԵրեմիայէ նըւաստէ Բիւզանդեցւոյ, ի խընդրոյ որդւոյն իւրոյ Գրիգորիսի բաբունւոյ :*

*Նախերգան · Տէր տուր ինձ լեզու խըրատու . . . այլ քո եւ վասն քո եւ քեւ յայտնեցից զբան սրբազան առաքելոյն Պօղոսի, որ ասէ · Կտակ յետ մահուն հաստատուն է . . . : Մալում չէրիֆընըզ տըր քի, պիր տէվլէթլը զուրպէթլըքտէ քի վէֆաթ էյլէսէ . . . :*

*Ձեռագիր՝ Վիեննայի Մխիթ · Մատենադարանի Թ · 407, թղ · 94 ա—115 բ : Ձեռագրիս մէջ կան Գրիգորիսի օրինակութեամբ տաճկերէն ուրիշ քարոզներ ալ, որոնց հեղինակը չէ նշանակուած · տե՛ս Տաշեան՝ Ցուցակ, էջ 859—860 :*

27 · Համառօտ Յայսմաւուրք *ի լեզու Տաճկաց · գրեալ յԷջմիածին ի թուին ՌՃԼԴ (1685), ուղղեալ առ որդին իւր Գրիգոր(իս) վարդապետ :*

Այսպէս կը յիշէր Մ. եպ. Նշանեան[38]:

Ձեռագրին մանրամասն նկարագրութիւնը հաճեցաւ տալ ինձ Սրբազանը։

Երեմիայի ինքնագիր ձեռագիրը, գրուած 1685ին յէջմիածին, կը պահուի այժմ Երուսաղէմ, Ս. Յակոբեանց Մատենադարանը՝ Թ. 1076, Թղ. 5ա—139ա: Բաժնուած է Ա.—ԺԳ. գլուխներու եւ կը պարունակէ 175 վկայաբանութիւն: Իբրեւ վերջին՝ ԺԳ. գլուխ գրուած է Յիշատակարանը, հայերէն լեզուով: Կը սկսի այսպէս.

«ՅԱյսմաւուրաց ժողովեալ հակիրճ ի ԺԳ. գլուխս տրամատեալ ի լեզու Թուրքի ըստ տեղոյս յօգուտ լսօղաց ի պատիւ սրբոց եւ ի փառս Քրիստոսի: Եւ այս ցանկ ըստ դիպող ժամու լիցի առ ձեռն հուպ առ քեզ իբրեւ զմակոյկ: Զորոյ աշխատօղս յիշեսցես ի բարի, որդեակ իմ ընտրեալ, տէր Գրիգորիս բարունի: Իսկ տէրունականաց ոճից եւ առաքելոց, մարտիրոսաց, ճգնաւորաց, զի յայտնիք են ամենից ըստ աւուրց յիշատակի՝ անփոյթ եղեն յինէն այնմ սակի՝ որ յետին կարգի համարեցաւ»: Կը յաջորդեն գլուխներու ցանկ մը եւ ապա բնագիրը: Ի կատարածին՝ Յիշատակարանին վերջաւորութեանը՝ կ՚ըսուի (Թղ. 138բ). «Թարգմանեցաւ եւ շարադրեցաւ եւ գրեցաւ սխալոտ ձեռամբ Երեմիայի յանծկութեան վայրի ի սուրբ Էջմիածին

---

38 Թորգոմեան, էջ 736:

*ՌՃԼԴ Թուականի, ընծայելով առ որդեակն իմ Գրիգորիս քաջունի: ... Եւ բովանդակն ՃՀԵ ճառ եղեւ, ամէն մին թուղթ մի լէգէթ ունի. եւ կարող են ըստ տեղոյն ճոխացուցանել ի լաց եւ ի յողբ, ի զարմացումն եւ ի սասանումն, ի գեղջ եւ ի կսկիծ, ի մխիթարանս եւ ի սփոփանս, ի յորդորումն աստուածպաշտութեան եւ յաշխարհատեցութեան: Եւ յամէն քարոզի մէջ զմին ճառ մի թէ թօղնես մինասիպէթումն՝ աւագ գդշի (°) կօզուլէրի արիգ օլուր. եւ շատ ժամանակ հէրիք է: Եւ վասն զի այս խառիլահ եւ խալաբէթ՝ քան զգրեալն յԱյսմաւուրս առաւելան եւ ճոխացան: Եւ զի նոր է Թարգմանութիւնս, թէպէտ անկարօտից չէ ինչ փոյթ. բաւ է»:*

28. Պատմութիւն Մեծին Աղեքսանդրի. *հայերէնէ թարգմանուած թուրքերէնի*[39], *տաղաւոր չափով*[40]: *Իսկական խորագիրն է.*

Քիթապ հէքեայէի ճիհանկիր Իսքէնտէր զուլգարնէյն. Լիսան էրմէնեանտէն լիսան թուրքնէ թէրճումէի էսթ էլիազիր Իրէմեա:

*Ձեռագիր՝ Երուսաղէմ, Ս. Յակոբեանց Մատենադարանի Թ.* 988, *թղ.* 6 *ա*—178 *ա*, *Երեմիայի ինքնագիր օրինակը:*

---

[39] *Զամչեան՝ Գ.* 723. Quadro, 160. *Տաշեան՝ Ուսումնասիրութիւնք Ստոյն Կալիսթենէսի վարուց Աղեքսանդրի, էջ* 79. *Թորգոմեան*, 184—185:

[40] *Ըստ Մ. եպ. Նշանեանի. տե՛ս Թորգոմեան*, 735:

29. Պատմութիւն Հայոց, *Թուրքերէն*: *«Թարգմանեաց, կը գրէ Զամչեան*[41], *ի խընդրոյ գրագիտացն Տաճկաց ի լեզու նոցա զՊատմութիւն Խորենացւոյն քաղուածով, ընդ նմին եւ զհամառօտ տեղեկութիւն ինչ ի վերայ Բագրատունեաց եւ Ռուբինեանց»: Զայս կը յիշէ Հ. Ղ. Ալիշան*[42] *իբրեւ «Հայոց Պատմութիւն մի թէ՛ հայերէն եւ թէ՛ Թուրքերէն»*:

30. Սաղմոսք Դաւթի. *Թարգմանուած Թուրքերէնի* 1692*ին ի Կ. Պոլիս, ի խնդրոյ Կեսարացի Տիւնկիւնճեան բարձրաստիճան անձնաւորութեան մը: Սաղմոսարանին կից տուած է նաեւ Հաւատով խոստովանիմ աղօթքին թարգմանութիւնը:*

*Ձեռագիրներ՝ Էջմիածին, Թ.* 1644 (*ԺԸ. դար*). 1645 (1715): *Վենետիկ, Մխիթ. Մատենադարանի Թ.* 85 (*Սարգիսեան՝ Ցուցակ, Ա. էջ* 368—370). *Հմմտ. նաեւ Վիեննայի Մխիթ. Մատենադարանի Թ.* 988, *թղ.* 101 *ա* —104[43] *եւ* 89 *ա*—92 *ա*:

31. Թարգմանութիւն Նոր Կտակարանի եւ մասանց Հին Կտակարանի *ի լեզու Տաճկաց: Կը յիշէ Զամչեան* (*Գ.* 723):

---

[41] *Զամչեան, Գ.* 723:

[42] *Հայապատում, Ա.* § 133:

[43] *«Տաճկերէն Սաղմոսի յիշատակարանն է, արաբեալ Երեմիայէ Քէօմիւրճի դատէի»: Սկ. «Գապիլէի էրմէնիեանտէն չէհրի Գայսէրիէտէն Տիւկիւնճի նամ. Իստանպուլէ ազմ իտուպ վէ տէվլէթի ալիշան վէ սուլտանի սէատէթուն վուքէլայի մուխթար վէ մուհթէրէմ պապ խըտմէթլէրընտէ տախլ օլունարքտէ...»:*

*Հին Կտակարանի մասն է անշուշտ Սաղմոսարանը․ իսկ Նոր Կտակարանէն ծանօթ է ինձ միայն՝*

*Աւետարանն ըստ Յովհաննու, տաճկերէն թարգմանութեամբ․ Ձեռագիր՝ Էջմիածին Թ․* 1645, *Թղ․* 119*ա*—132*ա*։

32․ Հիքեայէի Փարիս վէ Վէնա. *Թէրճէմէի Երեմիա Չէլէպի Քէօմիւրճեանց պիրատէրը մէհշուր տէր Կոմիտաս․ նաշիրի քիթապ Յովհաննէս Աւետիքեանց Գայսէրիյէլի։ Ասիթանէ, Զարդարեան պիրատէրլէր Փապրիգասը*, 1871, 8°, *էջ* 140[44]։

*Հրատարակիչը կը ծանուցանէ թէ ձեռագիր օրինակին ճակատը կը կարդացուի երկրորդ գրչէ․*

*«Պատմութիւն Փարիզու եւ Վիէնայի, շարադրեցեալ ի Լատին լեզու, եւ թարգմանեցեալ ի Հայկական բարբառ, յումեմնէ, Հոմերական ոճիւ, եւ վերստին թարգմանեցեալ ի Տաճկական բարբառ ստուար ոճին, ի յԵրեմիա Չէլէպւոյ ի Քէօմիւրճեանց գարմէ, որ եւ բանաստէր իսկ յորջորջի, առ ի զուարճութիւն ընթերցողաց»*։

*Ակնարկուած հայերէն թարգմանութիւնը, որմէ կատարուած է տաճկականը, Յովհ․ Տէրզնցւոյ* 1587*ին ի Մարսէյլ հրատարակ հանած «Պատմութիւն Փարէզ մանկանն*

---

[44] *Էջ* 113—135 *«Բառարան հայերէն եւ տաճկերէն բացատրութեամբ»*։

եւ Վէնիայու դատերն Դաւլֆի իշխանին Վէննայու քաղաքին» գործն է, «զոր թարգմանեալ է ի Փրանկ լեզուէ ի հայ ի ձեռն տէր Յովանէս Տէրզնցոյ եւ իւր որդւոյն Խաչատուրին, ի քաղաքին Ֆրանցոց որ կոչեցեալ Մարչելիան» պահուած Վիեննայի Մխիթարեան Մատենադարանի Թ. 88 ձեռագրին մէջ (Ցուցակ, 354—355):

Երեմիայի թարգմանութեան սկզբնաւորութիւնն եւ վերջաւորութիւնն է.

Ֆրանսա փատիշահըն մէմլէքէթինտէ
Իմմի Գարլօ գըրալ ճիւլիւս իթտիքտէ
Խանայի էվվէլի վէ ախըրընտէ
Իչպու նազլ օլունուր վուգուին իւզրէ...

Վ. Պու նազլի իւշշադըն ուչադ չաղըրտէ,
Մէյլի թէրճիւմէյէ քէէնէ թիւրքճէ,
Զիյատ էնֆա տէվա պուլմադ սէվտայէ,
Լաքին էօմրի՛ւ Երեմիա նաֆիլէ կէչտի:

Ձեռագիր ծանօթ չէ ինձ:

33. «Թարգմանեաց, կ՚ըսէն Զամչեան եւ իրեն հետեւելով Սոմալեան (160), եւ բազում ինչ ի Յունաց եւ ի Լատինացւոց ի Հայս»:

Ինձի ծանօթ չէ թարգմանութիւն մը այս լեզուներէ, որ Երեմիայի վերագրուած ըլլայ:

Վիպասանութիւն յառումն Կրետէ կղզւոյ գրուածքին մէջ կը յիշէ Երեմիա, թէ թարգմանուած է յունարէնէ Քիլեցի Պանայոտի

յոյնին վիճաբանութիւնը Տաճկաց հետ․ կը գրէ․ «...Քիլեցի ոմն Բանայօղ որ էր յոյն ազգաւ եւ ի մերում ժամանակի պատուաւոր եւ երեւելի Թէրճիման ի մէջ ինքնակալին Տաճկաց եւ ի մէջ Իմբերադօրին Նէմցէու... եւ եւս եղեւ քննութիւն Վէզիրին վասն հաւատոցս Քրիստոսի՝ ի հարցման պարապեալ ընդ Բանայօղիս։ Եւ նա անվեհեր գտաւ ի պատասխանիս որպէս զարս երջանիկ ի Նախնիս[45]․ որ կայ յիշատակ նորա առ մեզ Թարգմանեալ ի բարբառս մեր...» (Թղ․ 36 ա)։

Թէ Երեմիայի գրչէ՞ն է թարգմանութիւնս, չեմ կրնար հաստատել։

34․ Աշխարհագրութիւն։

«Գրեաց, կ'ըսէ Զամչեան[46], եւ ի խընդրոյ դեսպանին Ալամանաց ի վերայ աշխարհաց Պարսից, Հնդկաց եւ Անատոլիոյ, եւ ընդարձակ եւս ի վերայ Հայաստանու եւ ի վերայ Թեմից իւրաքանչիւր կաթողիկոսարանաց եւ վանօրէից զորս եւ յանդիման արար ի պատկեր աշխարհացուցի»։

Նոյնը կը յիշէ Սոմալեան (Quadro, 160)․ «Տեղագրութիւն մը Պարսկաստանի, Չինաս-

---

45 Pannajotti Nicusi († 2 Հոկտ․ 1673) ազգաւ յոյն, 22 տարի վարած է ի Կ․ Պոլիս Թարգմանի պաշտօն, նախ Աւստրիոյ կայսերական դեսպանատան եւ ապա Բարձրագոյն Դրան քով։ Մեծ ծառայութիւններ մատուցած է Յունաց Եկեղեցւոյն։ Վիճած է մեծ վեզիրի ներկայութեան համբաւաւոր Վանի (Վանեցի) մուֆթիի հետ։ Իր մասին տե՛ս v. Hammer, Geschichte des Osmanischen Reiches, III, էջ 651 եւ Voyages du Chevalier Chardin, t. I, Paris 1830, էջ 65։

46 Զամչեան Գ․ 723․ Հմմտ․ եւ Թորգոմեան, 183։

*տանի, Անատոլիոյ եւ Հայաստանի, յօրինած ի խնդրոյ Աւստրիոյ դեսպանին։ Այս այնքան կարեւոր աշխատութենէն մնացած է այժմ աշխարհագրական քարտէսի յառաջաբանէն հատուած մը միայն»։*

*Կը գրէ նաեւ Ալիշան*[47]*. «Գրած է նաեւ Աշխարհագրութիւն մի Հայաստանի, եւ ի խնդրոյ Աւստրիոյ կայսեր դեսպանին՝ ժամանակին Հայոց ամեն վանաց տեղագրութիւն կամ տեղագրութիւն. շատ հետաքննելի գործ, եթէ յայտնուի ի Վիենա կամ ուրիշ տեղ»։ Վիեննայի դիւաններու մէջ չգտայ զայն։*

35. Տոմարական գիտելիքներ։

*Մեսրոպ սրբազան բարի գտնուեցաւ ընել տրամադրութեանս տակ ընդարձակ քաղուածքներ Երեմիայի այս աշխատութենէն, ուսկից կը տեսնեմ թէ «Տոմարական գիտելիք» վերնագիրը ճիշդ չի բացատրեր գրութեան բովանդակութիւնը. աւելի ուղիղ պիտի ըլլար խորագրել* Տոմարական բառախաղեր, *վասն զի աշխատած է Երեմիա խտացնել հոս Հայոց եւ փրկչական թուականներու համար զանազան հանելուկներ եւ խաղեր, որոնց խելահաս ըլլալու համար կը պահանջուէր ընթերցողէն խելք եւ ուշադրութիւն։ Ժամանակին մեծ իմաստութեան եւ արուեստագիտութեան նշանակ էր ընթացիկ թուականը փոխանակ սովորական ձեւով՝ թուահամար-*

---

[47] *Հայապատում*, Ա. 133։

*ներով գրի առնելու՝ նշանակել բառախաղով կամ հանելուկներով. այսպիսի արուեստի սիրահար էր Երեմիա, իսկ ժամանակակիցներէն Պրուսայի եպիսկոպոսն Սուքիաս եւ ուրիշներ: Բնականաբար նման խաղերուն պիտի զոհուէր բառերուն իմաստը եւ այսպէս ընթերցողը պիտի զգար ինք զինքը ծածկագրութեան մը առաջ: Անխուսափելի է պարագան, եթէ ընթերցողը չանդրադառնայ անմիջապէս բառախաղին: Օրինակի համար երբ տոմարի մը վերջաւորութեան հանդիպինք՝ ի թուականին «շապիկ հագնի ի ժամատուն» կամ պիտի մեղադրենք բանաստեղծը յանկարծական անիմաստ ոստման մը համար եւ կամ բառերուն ծածուկ իմաստ մը պիտի վերագրենք: Տողին միակ իմաստն է, թէ գրուած է 1875ին, այս ինքն* ՇԱՊԻԿ ՀԱԳՆԻ *թուականին. հոս գրերու թուական արժէքի գումարը կու տայ յիշեալ տարին:*

*Այսպէս նաեւ* «ՁՇԱՊԻԿԴ ՀԱՆ (= 1862), ԱՌԱԿԱՆՆ Է (= 1870), ՁԵԿՈՅ ԻՆՁ ՁԴԱ (1482), ԳԸՁԵԱԼ ՁԲԱՇՆ ԻՄ (1162), Ի ՃԱՀ ԿԱԿԱՁ ԾԱՂԿԻՆ (1634) *են:*

*Այսպիսի իմաստակութեանց սիրահար Երեմիա իրեն բան եւ գործ է ըրեր կազմել առանձին ձեռնարկ մը «տիրացուներու» համար եւ այն պարզ, բարդ, նաեւ հանելուկային ձեւերով: Իր աշխատութիւնը բաժնած է երեք «հատորի» կամ հատուածներու. սկիզբ կ'ընէ պարզ բառերէ եւ կը խորանայ*

հանելուկներու մէջ: Միայն հետաքրքրութիւնը հագեցնելու կամ հեղինակին ճաշակի վրայ զարմանք շարժելու կրնան ծառայել այս բառախաղերն ու հանելուկները. դրական արժէքէ զուրկ են անոնք: Եւ այն է ամէնէն աւելի զարմանալին, որ Երեմիա եղած է իր դարու սահմանէն եւ նախահոդ եղած է ԺԹ. դարու «տիրացուներու» համար անգամ պատրաստել Թուական բառախաղեր. կը սկսին 1690էն եւ կը հասնին 1890:

Ձեռնարկին Յառաջաբանական մասն է.

Սակս մեր ազգի Թուականին,
Իբրու բառիւ մի յանկ կայցին.
Բազումք առնել ցանկանային,
Զանվայելուչս զանմարթս եղին:
Աստուածաբանք ընդ Փիլիսոփայք
Իբր իմաստիւք պերճանային,
Ի գիւտ տառից պարծենային,
Ի տունս Հռոմոց որք գտանին...

Կը գրէ ի կատարածին.

Այլ ոչ մին գիր յաւել պակսով,
Այլ հանգամայնքն համայն Թուով.
Եւ մին տարւոյ Թուականով,
Ոմն երեք չորս հինգ եւ վեցով:
Ոմն եօթն այլ եւ ութնով,
Զորն թէ կամիս ախորժելով.
Կամ ի Թղթերուդ ի նոյն տարւոջ,
Մերթ զայն մերթ զայս վայելելով:

Այս ինքն թէ պիտի տայ զանազան տա-

ընելու համար բառախաղական ձեւեր, շատ անգամ նոյն իսկ մէկ թուականի համար բազմաձեւեր, թողլով ընտրութիւնը տիրացուին:

Ամբողջը գրուած է տասնաւոր չափով, երեք «հատորներու» մէջ.

«Առաջին հատոր այս է ցուցման կարգաւ շարել զՓրկչին թուական» (թղ. 107 ա— 111 ա). Հատորս ունի 20 տասնաւոր հատուածներ, առաջինը 16 տող եւ միւս 19 հատուածները՝ 10ական տող բաղկացած:

«Բ. հատոր այս է ցուցման կարգաւ շարել զՀայոց թուական» (թղ. 111 բ—115 ա): Կը յաջորդեն 16 հատուածներ, առաջինը՝ 20 տող եւ 15ը՝ 10ական տող կազմուած:

Գ. հատորը կը բովանդակէ զանազան հանելուկներ, որոնց նիւթն է դարձեալ տոմարական տարին: Երեմիա (թղ. 115 ա—119 բ) այս տեղ կը ցուցադրէ իր սրամտութիւնն եւ հմտութիւնը ուսողական գիտութեանց. մէջընդմէջ կը տեսնուին նաեւ բառախաղեր: Հատորիս նախաբանն է.

«Չորրորդ հատորս յատկացուցես,
Զմին թուականն տուն տուն չափես,
Մու մու բառ դիպման վայելեցես,
Յորժամ ի մուտ տարւոյն հասցես:
Եւ դու գնիւթ մի ի թիւէն առցես,
Ի նմա տուն մի յարմարագրես,
Առցես քեզ նիւթ օրինակէս,
Քանի մի տուն եղեալս տեսցես:

Ոմն թէ անցեալն թէ յապագայն
Զորս ի տաղ մի մեծ Թուական.
Վայելեսցես ըստ պատահան
Զորս առձեռնեալ գրծի տես դայն:

Կը յաջորդեն՝ Թղ. 115 բ—117 բ. «Թուականք ծննդեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի» եւ Թղ. 117 բ—119 բ. «Թուական Հայոց»:

Յառաջ կը բերեմ իբրեւ օրինակ՝

Միայն դարիւ թէ ճեմեսցի
Այլ երկերիւր եւ պատկեսցի.
Մին հարիւր անդ թէ գլորիցի,
Թուական ծննդեան Տեառն յայտնեսցի:

Այս ինքն, ինչպէս լուսանցքի վրայ կը նշանակուի, 1000 + 600 + 100 = 1700:

Զսէրդ իմ սրտիս կամակ ճարէի,
Ի գրել ըզտոմսակս եւ գթիւս ՃԱՌԷԻ:

Ով իմաստակ զունկնըդ մատո՛
Եւ ԱՌ ԸՆԾԱՅ դու ի յըրոյ:
Եթէ հիւսես ԸԶՄԱԶ ԳԸԼԽՈՅ,
Հաչուեալ գըտցես ըզթիւ հայոյ:

Արուեստով են համադրութիւնները, կը յայտնեն անոնք հեղինակին ճարտարամտութիւնը, բայց չեն չարժեր ներկայ դարուս հետաքրքրութիւնը. ուստի եւ աւելորդ է յաճախել օրինակներ:

*Ձեռագիր՝ Երուսաղէմ, Ս. Յակոբեանց Մատենադարանի Թ. 1058, թղ. 106ա—119բ:*

36. Թուղթք առ զանազան անձինս:

*Երուսաղէմի Ս. Յակոբեանց Մատենադարանի Թ. 1058 ձեռագիրը «մեծադիր մասամբ ինքնաձեռագիր Երեմիա Չէլէպիի», հաւաքածոյք մըն է Երեմիայի նամակներու: Կը ներկայացնեմ այս տեղ բովանդակութիւնը ըստ ցուցակագրութեան Մեսրոպ սրբազանին: Ուրիշ խումբ մը թղթերու կը յիշէ Զամչեան Գ. 723. ասոնք անծանօթ կը մնան ինձ:*

ա. Թուղթ Ա. «առ որդին իւր Գրիգոր(իս) վարդապետն վասն մահուան որդւոյն Յովսեփայ»:

*«Որդեակ իմ անդրանիկ եւ սիրելի տէր Գրիգորիսդ իմ, ընկալ զայս ի վերայ այնքան անհուն սփոփանաց եւ դաստիարակութեանց բանից, որովք ոչ տամ դոյլ եւ դադար սըրտիս՝ զքեզ զարթուցանել յիշատակօք գրոց սրբոց...»:*

*Թուական չունի: Կ'երեւայ թէ գրած է Պօլսէն յէջմիածին:*

*Ձեռագիր՝ թղ. 11ա—14ա:*

*Հրատարակուած ըստ մասնէ Թորգոմեան, էջ 726—727:*

բ. Թուղթ Բ. «առ Գրիգոր(իս) վարդապետ որդին իւր վասն տէր Մարտիրոսի եղբօր»:

*«Լսեր ես ի զարդի մասալից. Տունեա*

ամեն իլէ էնըր ։ ... Երբ ընկճեցաւ Գէորքն, հիմա որպէս թէ դարձցին ընդ երեկոյս որպէս չունք ի չրջ(իլ) ։ Ծանուցումն՝ աւաքութիւն. թէլ կու կարէր, սկսաւ հալաթ կարել, փալամար կարել... Ես իմ եաղովս ի տապակի տադնապիմ. սա թէ գրեսցես խնդիր թէ աւաքութիւնս ի վեհէն դայցէ...» ։

Կը տեսնուի ասկէ թէ Երեմիայի Գէորգ եղբայրն քահանայացած է տէր Մարտիրոս յորջորջմամբ. որուն աւագութեան պատիւ տրուելու մասին կը գրէ էջմիածին իր վարդապետ որդւոյն ։ Թուական չունի. բայց գրուած է Եղիազար Կաթողիկոսի կենդանութեանը ։

Ձեռագիր՝ թղ. 15 ա—բ ։

գ. Թուղթ Գ. «առ Գրիգորիս վարդապետ» (1682) ։

«Ողջունիւ յիշեցուցանեմ քեզ դրանս գրոց որ կարողն են զքեզ առնել իմաստուն..։

վ. Այսքան առ այս բաւական լիցի տառապեալ հօրէդ, յոր Վարդավառի, ՌՃԼԱ» ։

Բովանդակութիւնն է «հայրական գեղեցիկ խրատներ սուրբ Գրոց ձոխ օրինակներով» ։

Ձեռագիր՝ թղ. 16 ա—19 բ ։

դ. Թուղթ Դ. «առ Գրիգորիս վարդապետ» ։

«Ողջունիւ աստուածարեալ մեծանձնութեան ձերում յայտ լիցի, զի ոչ ես տեսեալ

*եւ ոչ գիտացեալ զհայր քո տառապեալ, որ զանկատ գրես յանոպայից...»:*

*Ձեռագիր՝ թղ.* 91 *բ*—92:

ե. Թուղթ «վասն մահուան Ապրօի». *Կ՚երեւայ թէ ուղղուած է Եղիազար կաթողի-կոսին: Ապրօ մեռաւ* 1676, *Ապր.* 15/16*ին:*

*«Պատուական գլխոյդ, պատուական աջիդ ագերս հօգոյ մերոյ համբոյրն ընծայեցի: Որով անեմ ծանուցումն՝ ապստամբելոյն Աստուծոյ զբարձումն ի միջոյ եւ վաղափուլ կործանումն ամբարտակին...»:*

*Ձեռագիր՝ թղ.* 20 *ա*—21 *ա:*

զ. Թուղթ թուրքերէն լեզուով, *հասցէն եւ թուականն անծանօթ: Կը սկսի.*

*Մարուֆըլ պէհձէթ վէ գի ֆէհմըլշաա...*

*Ձեռագիր՝ թղ.* 21 *բ:*

է. Թուղթ «Գանտիզատէ Նէյմէթուլահ չէլէպիէ»: *Կը սկսի.*

*Իզէթլի վէ ուրուֆէթլի էֆէնտըմ հազ-րէթլէրինուն...*

*Ձեռագիր՝ թղ.* 22 *ա*—22 *բ:*

ը. Թուղթ «առ Խոսրով՝ մինչ կայր ի բանտն յէտրէնու»: *Անթուական: Կը սկսի.*

*Լուաք զփորձանակրութեան յեղակարծ պատահումն...*

*Ձեռագիր՝ թղ.* 23 *ա*—25 *ա:*

թ. Թուղթ առ Եղիազար վասն Շաքըր իփիցու որդւոյ մահուն»: *Անթուական եւ թերի:*

*«Սրբոյ Հօրդ հասարակաց եւ Տեառնդ*

*հոգեւորի պատկանաւորեալ ճառս առ յապա-քինութիւն պատահելոյ կսկծանացդ ի պատ-ճառէ պակասութեան Ոհանին ի մաքրա-գուարթ յաչաց քաղցրութենէ ...» :*

*Ձեռագիր՝ թղ.* 26 *ա*—28 *ա* :

Ժ. Թուղթ «առ առաջնորդն Գաղատիոյ» . *որով կը յանձնարարէ իր որդին Գրիգորիս վարդապետ, որ մեկնած է Գաղատիա* (1685, *Յունուար* 1) :

*«Բազում են սէր ի սկզբանէ, մանաւանդ թէ ի սրտէ առ սիրտ խօսեցեալն վկայէ ... :*

*Վ. Եղեւ գրեցեալ Երեմիայէ Բարունոյ տեառն առաջնորդի Եկեղեցւոյ Գաղատաց-ւոց. Մաննօրէն քեւ յարգելոյ, Ի «ԲԱՆԴ ՆԱ(Յ)ԵԱ»* (= 1685) *Թուական Հայկոյ, Ա—յելս յունվար ամսոյն նօմայ, Յանկել սի-րոյդ գոյս յարակոյ. Ի վեր ձգտեալ քան զկարս ահա» (տողք՝ ԵՐԵՄԻԱՅԻ) :*

*Ձեռագիր՝ թղ.* 28 *բ* :

ԺԱ. Թուղթ «Արքեպիսկոպոսի Ագուլեաց Տեառն Պետրոսի աստուածաբան վարդա-պետի» :

*«Ըղձալի էր մեզ ողջագուրել զնամակ սիրոյդ պատուելի, որում արժանացուցեր. եւ զմեծ լինն աշխատանս տնտեսութեան յաւարտ ածելոյդ զգոհարանութիւն ընծայեցեր այնմ որ յաջողէ զամենայն յամենայնի ... :*

*Վ. Եւ մինչ զմեծութիւնդ չեւ եւս տե-սեալ զորդեակն իմ Թղթով ի քեզ յանձնեցի ի գալն յԻզմիւրն. եւ արդ քեզ եւ ձերոցդ*

*մեծաւ թախանձանօք ի քաղցրութիւն մարդասէր կամաց ձերոց ըստ ժամանակին կրելցի հատուցումն փոխարինին որ խոստացաւ՝ կատարելոց է ամենայնի· ամէն»:*

*Ուղղուած կ'երեւայ յէջմիածին, Եղիազարու հոն հասնելէն յետոյ:*

*Ձեռագիր՝ թղ· 29 ա—30 ա:*

ժբ· Թուղթ առ աստուածասէր ոմն պարոն (*խորագիր*):

*«Վայելչագունեղ արժանաւորութեամբ ճոխացելոյ եւ ըստ նարդենիս պայծառագունեղ պերճացելոյ, բարեպաշտօն իսկ եւ գերազանցապէս աստուածասէր պարոն...»:*

*«Հաւանական է որ գրուած ըլլայ 1670ին, Ստեփանոս Մեղրեցի Պոլսոյ պատրիարքի օրով»· որուն պատրիարքութեան աթոռ բարձրանալու ինքը, յիշեալ պարոնն եղած է պատճառ· կ'ըսուի· «այլ ըստ քոյին քաղցր բարուց... բարերարեցեր առաջնորդին մերում... ըստ որում զմերս (եւ) զնորայն սիրտ հանգուցեր, յորմէ ունիմք զշնորհակալութիւնս մինչեւ ցայսօր, զի ոչ է համեմատ Ղազար եւ Թումունճի եւ Սարգիս վատթարացն...»:*

*Ձեռագիր՝ թղ· 30 բ—31 բ:*

ժգ· Թուղթ առ Կաթողիկոսն Հայոց:

*«Սրբազան հոգեւոր Տիրի, Տեառն ամենամեծար... երկրպագութեամբ շնորհաբաշխ աջի ըստ նախնեաց յօրինի այսպէս ծանուսցի..:*

*վ. Կայ առցեն բանքս ի հեծութեան սըրտիս քեզ վաղեմի եւ անմիջոց սիրելութեանդ ...շնորհակալ եմ վասն յիշողութեանդ տոմսիւ մատանցդ շնորհիւ. որպէս եւ միշտ անդըստին սիրով հայիս ի քոյդ հեզութեան բարերարութենէդ առ սիրելին քո ի դութդ վստահացեալ եւ հեշտարար սուրբ աղօթս քո յուսացեալ Երեմիաս»:*

*Ձեռագիր՝ թղ. 32 ա—բ:*

ժդ. Թուղթ «առ Եղիազար կաթողիկոս, յորժամ գնաց ի սուրբ աթոռն Էջմիածնի, գահակալեալ նստաւ կաթողիկոս ամենայն Հայոց, թվին ՌՃ(ԼԱ):

*«Ի շնորհաւորել գծայրագոյն քահանայապետութիւն քո Թ եւ Ժ—ան ամօք նախագուշակօք շնորհաւորեցաք, որ ի Բերիա բարեբաստեցաւ: Եւ զայն որ զկադելն իմ մաղթանօք թէ ի Հռոմկլայ կամ Երուսաղէմ հանդիսացիս, տե՛ս զի այսօր համախմբեալ բազմադիմի եւ կաթողին բաղձանօք հարուդ ամենասրբուհի Կաթուղիկէն տարեալ էած ի Սիոնն նոր...»: Վերջը թերի թողուած է:*

*Ձեռագիր՝ թղ. 32 բ—35 ա:*

ժե. Թուղթք Ա—Դ առ անծանօթս, *ուր կը նկարագրէ սրտառուչ խօսքերով իւր անդրանիկ որդւոյն Գրիգորիս վարդապետի վաղաժամ մահը: Առանց թուականի:*

*Ձեռագիր՝ թղ. 37 բ—43 բ:*

ժզ. Թուղթ (առ Եղիազար յէջմիածին) յամէ 1682, *ուր քան հատուածներով կը նկարագրէ Կ. Պոլսոյ անցքերը: Այս պատմական, շատ հետաքրքրական գրուածքին սկիզբը գրուած է խնդրոյ նիւթ եղած քան հատուածներու բովանդակութեան ցանկը, որ հետեւեալն է.*

*ա. Որս արքային յԱնդրիանուպօլիս:*

*բ. Հրակիզումն Էյուպին սարույ:*

*գ. Սատկութիւն եասաղի գինւոյ:*

*դ. Կոխելն դրաղանիս անառակաց:*

*ե. Գողոցն ի տեղիս տեղիս:*

*զ. Մուֆլիսութիւն վէզիրի պադրկեանին:*

*է. Սոպութիւնք նոր ընձիւղեալ երեսփոխանաց:*

*ը. Անվաւեր խորհուրդ ժամանակիս առաջնորդաց:*

*թ. Վասն անձարակութեան Պետրոս վարդապետին:*

*ժ. Աղանդ սուտ վկայից քաղաքիս:*

*ժա. Անցք Մաթէոս չէլէպւոյն:*

*ժբ. Զարքային ստացեալն գնոր օտալըղ:*

*ժգ. Կեօմրուկճուն իրք ընդ Փռանկս:*

*ժդ. Պատրաստութիւն հարսանեաց կեօմրուկճուն:*

*ժե. Որս ունկումրի չայիրին:*

*ժզ. Խորհուրդ Ֆռանցայ արքայի ընդ կայսեր Հռոմայ:*

*ԺԷ. Պատրաստութիւն Տաճկաց մարտի ընդ Մաճարս։*

*ԺԸ. Մահ Թէլլի սուլթանին Հումայշահի։*

*ԺԹ. Վասն դեսպանին Մոսկովաց։*

*Ի. Ողջոյնք ոմանց առ վեհդ սուրբ։*

*Նամակը կը սկսի.*

*«Ուղփանճեմ ձեմարանի սրբազան ժողովոյդ ողջանիւ եւ այս յայտնեացի...*

*Վ. ՅԵրեմիայէ ընկալ զպատգամս*
*Նարդենական.*
1682 *ԸՋՃՆՆԴԵԱՆԸՆ Քրիստոսի*
*զոլով Թուական.*
*Եւ ի Մինասն հասարակի**
*Փէտրարական.*
1131 *ՅԻՇԵԱ ԶԱՀՄԷԹԸԴ Թուականի*
*մեր հայկական։*

ԺԷ. Թուղթ առ Նահապետ Նորընտիր կաթողիկոս *գրեալ ի Թեքիրտաղէ* (1692), *ծննդեան տօնէն քիչ ետքը։*

*«Յիսուսահիմն եւ քրիստոսակառոյց սրբոյ մենաստանիդ մեծի զբաղձանս հոգւոց արդեանց արտայայտելով ի ձեռն Նօմօսի...»։*

*Կը պատմէ թէ Գրիգորիս վարդապետ էջմիածնէն վերադարձին՝ ճանապարհին կը լսէ թէ վախճանած է Եղիազար. զայս Ծննդեան տօնին օրը ի Թեքիրտաղ քարոզի ժամանակ կը դուժէ ժողովրդեան։ Կը հաղորդէ տեղեկութիւններ Գրիգորիս վարդապետի մասին*

---

* *Իմացիր՝ «ի կէս փետրուար ամսոյ»։*

*հանդերձ դրուատիքներով. կը շնորհաւորէ նորընտիր Կաթողիկոսը: Հետաքրքրական է բովանդակութիւնը:*

*Ձեռագիր՝ թղ. 57 ա—61 ա:*

ԺԲ. Թուղթ Մարտիրոս Խահանայի եւ մահտեսի Ամբակումի առ «Խաչատուր կաթողիկոս Սսայ» (1658):

*«Ի գերապետական գլխոյն գերագոյացեալ եւ վերապատուեալ աթոռակցութեան Լուսաւորչին մերոյ Հայրապետի երջանկի մատուցանեմք Մարտիրոս երէց եւ Ամբակում սիրելիք քո համբոյրս երկնաչու գարշապարիդ...:*

*Վ. Եւ զտէր Տրդատոս սիրով ուղարկեցաք հազիւ առեալ ի ձեռաց զոռոզամիտ աթոռակալացն քաղաքիս, զորոց զբարուց տեղեակդ ես, եւ խաղաղութեամբ ուղարկեցաք ի սէր եւ յօրհնութիւն քո. ողջ լեր: Թվին ՌՃէ»:*

*Երեմիայի ձեռագիրն է. հաւանօրէն ինքն է նաեւ խմբագրողը:*

*Ձեռագիր՝ թղ. 62 ա:*

ԺԳ. Ողերձ «առ թագաւորն Փռանցու:

*Ի փառս Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ի վերայ աշտանակի եօթնաջահեան լուսով բարձրացեալ քրիստոսասէր թագաւորն Լուտովիկոս, որ ընկալեալ է զթագաւորութիւն առ ի հովելոյ զբազմահոյլ ժողովուրդս Տեառն: Զորս եւ արժանապէս կարգաւորեալ*

*եւ զարդարեալ՝ ըստ որում եւ ինքն հոգեկան մասամբք պայծառացեալ, եւ մեղաց աղտն ի բաց բարձեալ հեռի յինքենէ, եւ առ տէրունի զշաւիղն որ է ճշմարիտ ճանապարհ եւ կեանք: Վասն որոյ խնդրեսցուք եւ աղօթս ձիգս տարածեսցուք առ ամենակարող բարձրեալն Քրիստոս, զի զարժանաւոր ծառայն իւր զԴԺ–ան Լուտովիգոս Թագաւորն ի ստուգապէս ճանապարհն եւ ի կեանս հասցէ յանեղծն եւ յաւիտենական փառս օրհնեալ արքայութեան: Եւ զծիրանածին զպայազատացեալ Թագաժառանգ զորդին իւր փառօք Թագաւորականօք պսակեսցէ յազգաց ազգս ամբողջ կենօք ի պարծանս եւ ի յաղթութիւն ժողովրդեան իւրոյ. ամէն:*

*Գրեցեալ եղեւ ի թվն Քրիստոսի* 1687 *ի փաշաթօրութեան պարոն իշխանի Փեթրօ Ճերարտինի ի Ղալաթա քաղաք»:*

*Ձեռագիր՝ թղ.* 65 *ա:*

*Ուղերձս կ'երեւայ թէ մատուցուած է Լուդովիկոս ԺԴ.ին Մատթէոս Ապրօ Չէլէպիի կողմէն, որուն փոխարէն ստացուած է Թագաւորէն «Թուղթ ազնուութեան եւ հովանաւորութեան» (տե՛ս վարը, էջ* 252*):*

ի. Թուղթ առ անծանօթ ոմն (1686):

*Իզէթլի վէ արիֆէթլի էֆէնտիմ սուլթանըմ հազրէթլէրինուն...*

*Ձեռագիր՝ թղ.* 80 *ա*—81 *ա:*

իա․ Թուղթ առ անծանօթ ոմն․ *կրօնական բովանդակութեամբ․ կը սկսի․*

*«Տէրն մեր Քրիստոս ըստ մեծի եւ անճառելի խոնարհութեան իւրոյ որ ի կերպարանս Աստուծոյ էր զկերպարանս ծառայի էառ...»:*

*Երուսաղէմ, Թ․ 1059, Թղ․ 65 ա—68 ա:*

իբ․ Թուղթ առ Տ․ Գրիգոր եպիսկոպոս:

*«Տեառն եպիսկոպոսի եւ հոգիընկալ սրբակրօնի՝ Տեառն Գրիգորի բանի սպասաւորի ի մէնջ ընծայելոյ հօրս նուաստի...»:*

*Ձեռագիր՝ Երուսաղէմ, Թ․ 1059, 69 բ:*

իգ․ Թուղթ առ պատրիարքն Յունաց Երուսաղէմի:

*Կը յիշէ Տէր-Յովհաննէսեան՝ Ժամանակագրական պատմութիւն Ս․ Երուսաղէմի․ Ա․, էջ 403—404:*

իդ․ Թուղթ առ Եղիազար կաթողիկոս (1690):

*Հատակտորներ յառաջ բերուած Չամչեանէ՝ Գ․ էջ 722 եւ Հ․ Յ․ Թորոսեանէ՝ Վարք Մխիթարայ աբբայի Սեբաստացւոյ․ Վենետիկ 1901, էջ 28—30 (Հանուած Տարեգրական պատմութեան 965—970 էջերէն):*

*Մեսրոպ եպ․ Նշանեան կը համարի թէ նաեւ Մարտիրոս քահանայի, Երեմիայի հօր առ Եղիազար 1664ին գրած «Նամակին խմբագրողը, ինչպէս ոճէն բացայայտ կ'երեւի, է նոյն ինքն Երեմիա Չէլէպի Քէօմիւրճեան»․*

*Սիոն*, 1932, էջ 278 ծան.։ *Նամակը հրատարակուած է ամբողջութեամբ անդ, էջ* 278—280։

37. Ուղերձք զանազանք։

*Երուսաղէմի Ս. Յակոբեանց Մատենադարանի Թ.* 1059, *որ Երեմիայի ինքնագիր ձեռագիրն է, կը բովանդակէ իւր ծոցը զանազան ուղերձներ, տոնաւոր չափով, որոնք ուղղուած են զանազան անձերու, գրուած տարբեր ժամանակներու մէջ։ Հեղինակը ապա հաւաքած է զանոնք մէկ հատորի մէջ, առանց ժամանակագրական կարգի նայելու։ Այս ուղերձներու ժամանակագրական յաջորդութիւնը դժուար է ստուգել այժմ, որովհետեւ ես ունիմ աչքի առջեւ պարզ ցանկ մը միայն, ուր Մեսրոպ սրբազան յաճախ նշանակած է ուղերձներու լոկ սկզբնաւորութիւնը, առանց վերջաւորութիւնը տալու։ Հաւանական է, որ Երեմիա իւր ուղերձներու վերջաւորութեան բառախաղով տուած ըլլայ գրութեան տարին, ինչպէս սովոր է ընել նա այլուր։*

*Ես կարեւոր համարեցայ առանց ձեռագրին կարգին միտ դնելու դասաւորել բովանդակութիւնը ըստ նիւթոց։*

*Ա. Սիրոյ եւ յարգանաց ուղերձներ։*

ա. Թուղթ սիրոյ առ Նիկոմիդացիս (1672)։

*Երդ գեղապար ըղձիւք լցեալ,*
*Առ կարօտեալսդ սիրահիւսեալ...*

*վ· Կարօտ մնացի մեծ բժշկին,*
*Պանդալէմօն սուրբ վըկային,*
*Մեղք ի վիզն տէր Ածատրին,*
*Որ մեծ երէց է քաղաքին:*

*Եւ այս բնակչաց սուրբ քաղաքիդ,*
*Լիցի ընծայ եւ արմաղան.*
*Երեմիաս ձեր սիրական,*
*Գրեց Ի ՃԱՌ* (1672) *Հայոց Թվական:*

26 *քառեակ. առաջին վեց տուներու սկզբնատառերը կը կազմեն՝ ԵՐԵՄԻԱ:*

*Ձեռագիր՝* 1059, 42 *ա*—44 *ա*[48]:

Բ· Ի յԵրուսաղէմէ առ ի Ստամպօլ, թուղթ ողջունի (1664):

*Տօստ եւ եարան մուհիպներաց*
*Գիտողաց զմեզ եւ չգիտողաց.*
*Ըզմեղաւորս հարցանողաց,*
*Ուրոյն ուրոյն լիցի ընծայս...*

*Ընդ ամէնը* 19 *երկտող. կը վերջաւորի.*

*Ի ԿԱԹՈԳԻՆ Հայոց Թուական՝*
*Հազար հարիւր երեքտասան,*
*Միով մասամբ այժմ յաւելան,*
*Որոյ Թիւք այս այժմ լցան:*

---

[48] *Հրատարակուած՝ Սիոն,* 1932, *էջ* 393: *Վերջին տողը հրատարակիչը կը կարդայ. «Գրեցի ՃԱՌ»* (1652)*. բայց այս տարին կանուխ է Երեմիայի գրական գործունէութեան համար:*

*Ի սուրբ քաղաքըս գըրեցան,*
*Երուսաղէմն որ անըրման.*
*Ըխտատեղեացըս բերկրական:*
*Ի մուտ աւուրս բարեկենդան,*

*Ձեռագիր՝ Թ.* 1059, 55 *բ*:

գ. Թուղթ առ բարեկամս իւր ի Թէքիրտաղ, *ուր կը գտնուէր այն ատեն իր որդին Գրիգորիս վարդապետ: Անխորագիր* (1691՞):

*Երջանկափառ քահանայից*
*Թէքիրտաղու բարեկամից*
*Մեր փափաքի գեր ծանօթից*
*Ողջոյն հասցէ ուրախալից...*

*Ընդ ամէնը* 93 *տուն: Ունի գաւեշտախառն ոճ, տեղ տեղ թուրքերէն ասութիւններով համեմուած: Տուներու սկզբնակապ գրերը կը յօդեն՝ ԵՐԵՄԻԱՅԻ ՀՕՐ ԳՐԻԳՈՐԻՍ ՎԱՐԴԱՊԵՏԻ, կրկնուած քանի մ'անգամ: Հետաքրքրական է մանաւանդ անո՛ր համար, որ Թէքիրտաղի ժամանակակից երէցներն ու գլխաւոր անձինք յանուանէ կը յիշուին:*

*Ձեռագիր՝ Թ.* 1059, 49 *ա*—52 *ա*:

դ. Թուղթ առ Հայրն ծերունի: «*Զայս ի խնդրոյ ումեմն Մանուէլի գրեաց որ առ Հայրն ծերունի:*

*Երկնահանգոյնդ եւ ամպըդ քաղցրահոսան...*

*Տուներու սկզբնատառերը կը յօդեն՝ ԵՐԵՄԻԱՅԷ ԱՍԱՑԵԱԼ ԵՂԵՒ:*

*Ձեռագիր՝ Երուսաղէմի, Թ·* 1059, 28 *բ*—30 *բ*:

Ե· Թուղթ առ Աբրահամ Չէլէպի· «Զայս գրեաց վերծանութեամբ առ Աբրո ոմն իշխան, *որում գլուխն ունէր բան վեց տամբ յանկեալ անդրադարձ եւ գի ոչ գտաւ. իսկ մնացեալն այս է, որ գրեցաւ, որում գլուխն «Ի գերահրաչ»:*

*Ի գերահրաչ լուսոյն լցեալ,*
*Շնորհօք նորին գերազարդեալ,*
*Պարգեւ նորին աղբիւրացեալ,*
*Վտակօրէն ի քեզ հեղեալ...:*

*Կը յաջորդէ՝*

Ի ներքոյ նամակիս զայս գրեաց *թէպէտ տանաւորաբար, այլ նախագիծքն՝ զանուն իշխանին եւ վերջնագիրքն՝ զանուն գծողին յայտնէ. եւ զայնս որ ասացաւ՝ Փռանկի տառիւ եւ հոռմի գրեցաւ, թէպէտ սատ անդէպ:*

*Այս բան որ սատ գծեալ է*
*Բայիւ, բառիւ կապ հիւսեալ չէՐ,*
*Րամկականաց զհետ եղէ*
*Ասա զնոցին բառս զնեՄ...*

*Տողերու սկզբնատառք* ԱԲՐԱԱՄ ԻՇԽԱՆ ՄԱԿԵԴՈՆԱՑՈՑ ՆՈՒԷՐ ԵՒ ԸՆԾԱ, *իսկ վերջնագիրք՝* ԷՐԷՄԻԱ ՉՆՉԻՆ ԴԱՐԱՆԱՂԵՑՒՈՑ ԱՍԱՑԵԱԼ ԷՂԵՒ *կը կազմեն:*

*Ասոր կից կայ՝*

Իսկ զայս ի վերայ գրեաց *թէ հասնի առ*

*այս ինչ ձեռ ուրուք եւ այլազ(գ)աբառ վի-պեաց. Նաեւ նախագիծն եւ վերջնատառ ունի գլայտնի ինչ. եւ զտառսն տաճկի արար՝ զանունն ի միջի եւ զթիւն ամսօք:*

*Մալիմ իզէթ չէլէպիմէ*
*Ալիշան ու սուլթանըմէ...*

*Սկզբնատառք տանց՝* ՄԱՐՏԻՐՈՍ ՓԱՓԱ ՉԱՏԷ... ՊԷՆՏԷ, *իսկ վերջնատառք՝* ԷՐԷՄԻԱ ԿԷՏԱԷՄ (՞) *կը կայեն:*

*Վերջին երկու տողերն են՝*

*Տիյէ պիտէչաթնամէ պէնիմ* ١٠٠٠
*Էլիփ պէ րէ վավ*[49] *չէլէպիմ:* ٤٠
٢٠
١١
٦٠٠
———
١٦٨١

*Ձեռագիր՝ Թ.* 1059, *թղ.* 33*բ*—36*բ:*

զ. Թուղթ առ պարոն Սարգիս Ապրոյեան (1658): *«Զայս նամակ առ որդի նորին [Աբրահամ չէլէպւոյ] գրեաց, որում անունն նախագիծ տանց յայտնէ եւ գիւրն ի վերջնատառն այլազն տառիւք»:*

*Անծինն անեղ եւ գերալրում,*
*Էն եւ Աստուած լոյսն անպատում...*

*Տուներու սկզբնատառերն են՝* ԱԲՐԱՀԱՄ

---

[49] *Այս ինքն* ԱԲՐՕ: *Լուսանցքի թուարանական գործողութիւնը առեղծուածային է. գումարը նշանակուած է* 1681, *իմա՛* 1671. *Ապրօ վախճանած է* 1676*ին:*

*ԻՇԽԱՆԻ ՈՐԴՈՒ ԱՌ ՊԱՐՈՆ ՍԱՐԳԻՍ · իսկ վերջնատառերն են՝ ՄԱՐՏԻՐՈՍ ԻՐԻՑՈՒ ՈՐԴԻ ՅԷՐԷՄԻԱ ԾԱՌԱՅԷԴ ։*

*Ասոր կից կայ ·*

Զայս ի ներքս թղթին արար՝ *տառս իբր հանելուկս, այսինքն անդրադարձ ի գլխէ առ վերջ · հայ բառ, ի կիսոյն տաճկի · նոյն եւ դարձն ։*

*Է լավ թէ վառ, էր պաղ թէ հաՄ ,*
*Բամէ յավէտ նայէ մըսԱ*
*Էմ իթէրսահ գայըք նագիՐ*
*Միդանէ դին աճիպ էմըս Գ·*
*Իսրաֆ պա՛րէ թաճի թէլլի*
*Աֆէրիմ թա իպրէթ նիքէՍ ։*

*Նոյնը հակառակ ուղղութենէ կարդացուած՝*

*Սահէթ գապուէ տավէթ վալէ*
*Ասըմ էյան տէքվայէմաՐ*
*Բիղան քըյադ հարէթիմէ*
*Գալմէ պիճա հիդէ նագիՄ*
*Իլլէթ իճաթ էրապ Փարսի*
*Սէքին թէրպիաթ միրէՓԱ*

*Երեմիայի նիադ ՌՃԷ է*[50]
*Բամ տառիւքս գթիւ ախէ ,*

---

[50] *Այս ինքն՝ ՌՃԷ* = 1658 ։

*Էն փրկչի տեառն* ԾԱՌԱՆ ԵՄ (= 1657),
*Մակ երկ քառից գծիւ ածեմ*[51]:
*Ի սէր սիրոյդ ճոխ պարոնի,*
*Այսքան եւեթ բաւ ծանիցի:*

*Կը յաջորդէ՝*

*Գիրս անյարմար ընթանայցէ,*
*Ի Կոստանդնու մեծ քաղաքէ...*

*Տողերու սկզբնատառերը կը յօդեն՝* ԳԻՐՍ ԵՒ ԲԱՆՍ ԵՐԵՄԻԱԷ:

*Ձեռագիր՝ Թ.* 1059, 36 *բ*—39 *ա*:

Է. Աղերս առ Պետրոս չէլէպի (*անխորագիր*):

*Պերճապատիւ ազնուափառ ի մեծ ազգէ...*

*Տուներու սկզբնատառերը՝* ՊԵՏՐՈՍ ՉԷԼԷՊՈՅ. *վերջատառերը կրկնութեամբ՝* ԵՐԷՄԻԱՅԻ ԱՂԵՐՍ:

*Ձեռագիր՝ Թ.* 1059, 41 *բ*—42 *ա*:

Ը. *Անխորագիր*:

*Է՛յ ծնունդ մտացս իմ ըղձմանէ,*
*Է՛յ իմ թռչուն որ մատանցս է...*

*Տողերու սկզբնատառերն եւ վերջատառերը՝* ԷՐԷՄԻԱՅԻ:

*Ձեռագիր՝ Թ.* 1059, 40 *ա*:

Թ. *Առ Յովնաթան* (*անխորագիր*):

---

[51] *Ըսել կ'ուզէ անշուշտ, թէ* 1657 *փրկչական թուականին միաւորը պէտք է* ութ *կարդալ* (1658):

Է՛ բանաւոր Թռչուն 'ւ արդոյ···

Տողերու սկզբնատառերը՝ կրկնութեամբ· ԵՐԵՄԻԱՅԻ· վերջատառերը՝ ՅՈՎՆԱԹԱՆ:

Ձեռագիր՝ Թ· 1059, 40 բ:

ժ· Առ Պոնտացիս (անխորագիր)·

Է՛յ բանաւոր Թռչուն 'ւ արի
Է՞յ իմ մտացս մատանցս շնորհի
Բանեալ ծանո՛ գանձկութեանս տաՊ: ···
վ· Անմոռաց լեր անուանց յարգՈ
Այն Յովակիմն բարեբարՈ
Յովաննէսն որ երէց բանխոՍ
ՅԵրեմիայէս որք ի ՊոնտոՍ:

Սկզբնատառք՝ ԵՐԵՄԻԱՅ· վերջատառք՝ Ի ՊՈՆՏՈՍ:

Ձեռագիր՝ Երուսաղէմ, Թ· 1058, 67 բ:

ժա· Առ պարոն Իմանիէ (անխորագիր):

Է՛ բանաւոր Թռչուն 'ւ արի·
Է՛յ դու մտացս մատանցս շնորհի·
Բամկիս գրաղծանս հոգւոյ բանաՄ
Բանեալ ի քեզ գրանս իմ փութաՄ···
վ· Ահա անունն անմոռաց է
Աղնիւ պարոնն Իմանիէ:

Սկզբնատառք՝ ԵՐԵՄԻԱ· վերջատառք՝ ԻՄԱՆԻԷ:

Ձեռագիր՝ Երուսաղէմ, Թ· 1058, 66 ա:

ժբ· Առ Պետրոս վարդապետ յէջմիածին (1684): Անխորագիր:

*Երաժշտի տեառն Պետրոսի*
*սուրբ կրօնազգեաց դպրապետի*
*Րաբունօրէն զմանկունս մարզես,*
*հոգւով սրբով շնորհազարդեՍ..*
*վ. Աղերսեմ զի ընդունելի,*
*իբր իմն ընծայ ը՞ստ իմում կարի*
*Լրմամբ ի Թիւս մերոյ Փրկչին,*
*Ի ԾՆԸՆԴԵԱՆՆ*[52] *հուպ ի տօնին:*

*Եղեւ գրեալ յէջմիածնում,*
*Րահորդ ի գիւղն ի վերջն հաշո՞ւում,*
*Է եւ սա քեզ օժանդակում,*
*Մին եւս ընկեր ի քո շաւղում.*
*Ի ձեռն Մէլիք որ իմանում,*
*Ա՛Ծ Ի ԲԱՌԱԿ Հայոց Թըւում*[53]*:*

*Սկզբնատառք՝* ԵՐԵՄԻԱՅԻ ԳԸՐԵԱԼ. *վերջատառք՝* Ի ՍՈՒՐԲ ԷՋՄԻԱԾԻՆ: *Գրութեան տարին է* ԱԾ Ի ԲԱՌԱԿ, *այն է* ՌՃԼԶ = 1687:

*Ձեռագիր՝ Երուսաղէմ, Թ.* 1058, 66 *ա:*

ժգ. *Առ Վարդան ոմն* (*անխորագիր.* 1691):

*Է քերթողաց քերածն հորդան,*
*Րամն որ նախադասիւդ կարդան...*
*վ. ԻՁԻՆ շրջանդ բանի բօրդան:*

---

52 *Ձեռագիրն ունի «ի ծննդեան եւս հուպ ի տօնին». Երեմիա հոս բառախաղով կ'ակնարկէ փրկչական* 1688 *թուականը, որ նոր է սկսած.* Եւս *անիմաստ կը մնայ, զոր պէտք է ջնջել:*

53 *Կ'երեւայ թէ տողերուս մէջ Երեմիա արեւելեան բարբառին* -ում *բայակերտ եւ հոլովակերտ ածանցը ակնարկել կ'ուզէ:*

*Տողերու սկզբնատառերը կը կազմեն ԵՐԵՄԻԱՅԻ:*

*Ձեռագիր՝ Երուսաղէմ, Թ.* 1058, 66*բ:*

ժդ. Տաճկաբարբառ թուղթ (առ Գրիգոր Չէլէպի) եւ արզ. ճախագիծ զնորայն անուն:

*Գամէթ բլ թիֆիլ ու սէրմի բէյան,*
*Վէրիփ տուր սանա թանգրիմըզ սուլհան:*

*Տուներու սկզբնատառերը՝ ԳՐԻԳՈՐ ՉԷԼԷՊԻ ՍԷԼԱՄ:*

*Ձեռագիր՝ Թ.* 1059, 30*բ*—31*բ:*

ժե. Տաճկաբարբառ թուղթ որ է մուխապէթնամէ առ Պուրսացիս ոմանս:

*Էյ վարում օմրումտան թահտենէ սուլթան,*
*Օլուր Աէյլի Մէճնուն հումունէ պաքան..*

*Տուներու վերջադաս տառերը՝ ՆԻԱԶ ԷՏԷՐ ՔԷԼԱՄ:*

*Ձեռագիր՝ Թ.* 1059, 31*բ*—32*բ:*

ժզ. Առ տաճիկ ոմն հայազարմ թուղթ ճաեւ արզնամէ ճախագծօք:

*Էյ մէնիմ սուլթանըմ չէլէպի աղամ,*
*Էյ խզէթլիմ մէնիմ րուհ ու բէյան...*

*Սկզբնատառք՝ ԽՐԷՄԻԷ ՊԷՆՏԷ:*

*Ձեռագիր՝ Թ.* 1059, 32*բ*—33*բ:*

ժէ. Առ Ապրօ Չէլէպի (*անխորագիր*):

*Քէյամըմ նաւիրան եօղսուլէն կէտա,*
*Եօմ եթմիշտիմ պու էզէլտէն այա...*

*Տողերուն սկզբնատառերը կը կազմեն՝* *ՔԵՕՄՈՒՐՃԻ ՋԱՏԷ ԷՐԷՄԻԱՏԷՆ. վերջատառերը կրկնութեամբ՝ ԱՊՐՈՒ ՉԷԼԷՊԻԷ։*

*Ձեռագիր՝ Թ.* 1059, 39*բ*:

ժը. *Անխորագիր*:

*Էսրարի սաֆիաթ սըտգի սատէ ...*

*Ձեռագիր՝ Թ.* 1059, 41*ա*:

ժթ. Թուղթ առ Մուրատ չէլէպի (*անխորագիր*):

*Մումինան աւլի փաքտէն*
*Ուչմադէ նայիլ էճտար.*
*Նէսըլի կիւզին խըրէթ փէյտա,*
*Մէյվէտարի սէն տիլզար:*

*Ընդ ամէնը* 12 *տուն. սկզբնատառք՝* *ՄՈՒՐԱՏ ՉԷԼԷՊԻՄ*:

*Ձեռագիր՝* 1059, 52*բ*:

ի. Թուրքերէն ոտանաւոր մը, 12 *եւ կէս տուն, ուղղուած բարեկամներուն, որոնց անունները կը յիշուին: Սկիզբը կը պակսի: Վերջին տունն է.*

*Աչի զարըէ ֆազաթ ըիճամ*
*Քիմ տուատէն ունութմամազ.*
*Էրէմիա պու ճիհանտէ*
*Թէք պիր կէտա դուլունուզտուր:*

*Ձեռագիր՝ Թ.* 1059, 53*ա*:

*Բ.* Մխիթարականք:

իա. Թուղթ մխիթարական առ Աբրահամ Չէլէպի (1664):

«Զայս Թուղթ յերկար ողբերգական առաքեալ առ Աբրահամ չէլէպին, որ էր ի Կորնթոս Մօռա եւ ասա վեցամեայ դուստր մի ունէր զի մեռաւ. Նախերգաբար եւ գամագամ արամատութեամբ. յիշեա ի Քրիստոս:

Խանդակաթ սէր սիրապանծեալ,
Խանդաղատիւ յուրն ճեմեալ...

Ընդ ամէնը 41 քառեակ: Վերջին երկու տուներն են.

Եղեւ ի գրաւ սիրալրական
Բոռեալ քարտէսս մելանական,
Երախտաւորդ իմ պատուական,
Մաննայ ընկալ աղերսական:
Ի ԿԱԹՈԳԻՆ[54] գոլոյս թմլական,
Աստուածածնիս տօնի փոխման,
Յորս ցնծացուք յուսով համայն,
Ի շնորհս լինել մեզ օրհնաբան:

Ձեռագիր՝ Թ. 1059, 44բ—49ա:

իբ. Թուղթ վշտակցութեան առ Կարնեցի խօճայ Կարապետ (1681):

Երբ ի կատար եհաս որդիդ
    տեսեր ծաղկեալ
Յօր հարսանեաց գթագն եւ գըրակըն
    համբուրեալ...

Ընդ ամէնը 32 տող. վերջաւորութեան սկզբնատառերը կը կապեն՝ ԽՐԻՄԻԱ

[54] Իմա՝ ՌՃԺԳ = 1664:

*Եղէ լսող ձայնի փողոյն տարսոնացի,*
*Բոտեալ զափոփանս սրտի նորա զձաուս*
*երգեցի.*
*Ետու ինչ զեղ վշտակցելով նորա վշտի.*
*Մեր թիւ Հայոց հազար հարիւր եւ երեսնի,*
*Ի Կոստանդնուպօլիս դիպեալ սեպտեմբերի,*
*Առն Խօճայ Կարապետի որ կարնեցի։*

*Ձեռագիր՝ Թ.* 1059, 57 *բ*։

իգ. Ողբերգութիւն ի մահ երիտասարդի ուրուք (*անխորագիր*)։

*Այրն ասէ. ա՛յ մարդ լըսէ իմ գանգատիս,*
*Աշխարհս է արտասուօք լի թէ լաւ նայիս..*

*Անձինք, նմանութեամբ Մարտիրոս Ղարահիսարցւոյ տաղերուն։*

*Ձեռագիր՝ Թ.* 1059, 58 *ա*—59 *ա*։

Գ. Գովասանականք։

իդ. Գովեստ Փիլիպպոս Կաթողիկոսի։

*Տէր Փիլիպպոս սրբահոգի*
*տատրակ ամբիծ.*
*Տի տղայական չիք արատ քեզ*
*եւ կամ ինչ բիծ...*

*Ընդ ամէնը* 34 *տող, որոնց սկզբնատառերն են Տ. վերջին տունն է՝*

*Տեառն հաճոյ յաղօթս քո*
*սուրբ եւ բարի,*
*Տարփամ յիշել վասն Աստուծոյ*
*Տէրդ իմ բարի։*

*Ձեռագիր՝ Թ.* 1059, 53*բ*—54*ա*։
իե. Գովեստ Նահապետ Կաթողիկոսի։

*Նահապետ հայրապետ,*
*Նոր անձամբ նեալ նորնակէտ.*
*Ներգործակ ներախոհ,*
*Նեղկատունդ նօյեմքին...*

*Ընդ ամէնը* 32 *տող, որոնց սկզբնագրերը, ինչպէս նաեւ բառերուն մեծագոյն մասը Ն գրով կը սկսին։ Ի կատարածին կան հետեւեալ տողերը.*

*Իսկ Թէ Հայոց մեծ նշանիւս*
*Թուական խնդրի.*
ԸՂԾԱԿԱՆԻԾ [1] Դ ՀԱՆ ՄԱԿԱԲԱՆԴ [2]
ՑԱՆԳԵԱԼ(Ն) [3] ՆԻԾ ՄԻ [4]
Է ՀՈԳԵԾԱՆԴ [5] ԻՁԻՆ [6] ՄԻՋԻ [7]
ՁԱՄԱՆԴ Խ(Ը)ՆԿԻ [8]
ԽԱՆԴ(Դ)ԱԿԱԹ ԻՄՆ [9] ԿԱՊԵԱԼ(Դ) ՁԹԱԳ
ԻՄ [10] ԳՈՆԵԱ ԱՃԻ [11]
ԵՒ ՃԱՌԵԼԴ [12] ՃՈԽՆ [13] ՄԻՆ ՑՂԿԵԱԼ Է [14]
ԺՈՅԺ ԻՄ [15] ԻՆՁԻ [16]
*Վերջասանիւք բայիւ բանիւ*
*արձանագրի։*

*Ձեռագիր՝ Թ.* 1059, 54*ա*—54*բ*։

*Հեղինակը փորձած է հոս* ՌՃԽ (1691) *տարին* 16 *բառախաղերով ներկայացնել։ Ասոնցմէ Թ.* 1, 2, 4, 5, 6, 7, 10, 12, 13, 15, 16 *գրերու գումարմամբ կու տան ճշգիւ*

*ՌՃԽ ։ Մնացեալները պէտք է լրացնել՝ Թ․* 3 *յանգեալ = յանգեալն,* 8 *խնկի = խընկի․* 9 *խանգակաթ = խանդղակաթ․* 10 *կապեալ = կապեալդ ։ Իսկ Թ․* 11 գոնեա անի *կու տայ «ՌՃԼ» եւ Թ․* 14 մին յղկեալ է *կը համապատասխանէ «ՌՃԺԳ» տարւոյն ։ Թերեւս «գոնեա ածի» բառ իմաստին կ'ենթադրէ թէ կարող է լրանալու․ նոյնպէս «մին յղկեալ է» կ'երեւայ թէ գումարին թերի ըլլալը կ'ակնարկէ ։ ՌՃԽ =* 1691 *ճշդիւ Նահապետ կաթողիկոսի գահ բարձրանալու տարին է ։*

*Այսպիսի բառախաղերով ներկայացուած են նաեւ ՌՃԼԳ եւ ՌՃԼԴ տարիները Թ․* 1058 *ձեռագրին մէջ (թղ․* 66 *բ)․*

*Ի ՊԱՀԵԼ ԻՄ․ ՌԱԲԲԻ ՀԱԼԷ․ Ի ԴԱ ԱՋ ԻՄ․ ՄԵԿՆԵԱ ՁԻՆԵԱԼ․ Ի ԴԱՌ ԱՃԷ․ ԱՄՊԱԽԱՂ թիւք ։*
*Ի ԾԱՂԿԱՆԻՇԴ․ ՌԱՄԵԱԼ ԷԻ․ ԷՂԵԱԼՆ ՇԱՂ․ ՄԻ Է ՊԱՀԵԱԼ․ Ի ԲԱՆԴ ՆԱՅԵԱ՛․ ԱՀԱ ԱՌԱԿ ։*

իզ․ «Առ թագաւորն Լեհայ» *Յովհաննէս Գ․ Աղերս մաղթանաց ի պատեհաւորիթ դահակալութեան նորին, ի կողմանէ Հայոց Կամենից քաղաքի* (1679) ։

*Ը՟նդ տիրապետութեանդ բառ կարգի արքայ ,*
*Ի գահ այդմ փառաց քաջազեղ արքայ ,*
*Բօլօնեայ երկրիդ մեծանուն արքայ ,*
*Երրորդ Յովհաննէս չքնաղ թագաւոր ։*

Ամբողջը կը բաղկանայ 67 տուներէ, որոնք կը վերջանան «Թագաւոր» բառով: 54—61 տուները կը վերաբերին Լեհաստանի հայ գաղութին:

Անյագ գազանէն նախնիքն այնց եւ մեր,
Զո°ւեալ հաւեալ էին ի տէրութիւն ձեր.
Դառնաչունչ ժանեաց բռնորացըն մեր,
Ոգեպահելով առ ձեօք, Թագաւոր:

Ցաւքն հայրենական առ նոսա ժայթքեալ.
Տնանկացեալ, Թոպեալ եւ նախատեցեալ,
Ի տար հալածեալ, լըլկեցեալ, սպառեալ,
Մինչ Տէր ռահ դիպման եցոյց, Թագաւոր:

Մինչ յայգր եհաս արդ չունչըն մահաբեր,
Խըղեաց, խոցոտեաց անպատրաստ զազգ մեր.
Ի վշտակրութիւնան կարդացին առ Տէր,
Աղօթս առնելով սակս քո, Թագաւոր:

Մնացելոցն փութով այց արար դարձեալ,
Ըստ յԵգիպտոսէ եղեն ազատեալ.
Ըստ Բաբիլոնին գերեդարձ եղեալ,
Զետեղեալ ի խնամս մեծիդ, Թագաւոր:

Փորձելով ի բովս եւ ընտիր գտեալ,
Զի զաստուածապաշտս փրկել կարացեալ.
Ի մարց յխառնէ եղեն սարտուցեալ,
Դարձ նոցա անդրէն առ քեզ, Թագաւոր:

*Ը՞ստ որում Տարսոնի փողոյն կցորդեալ,*
*Ընդ նոսա եւ մեք յայն վայր վշտակցեալ,*
*Բանիւք թէ թղթովք զոմանս թէ սփոփեալ,*
*Այժմ խնդամք նոքօք առ քեզ, Թագաւոր:*

*Արդ ամենախնամ աջօք քով սրբով,*
*Զբեկեալ սիրտ նոցա սփոփես բուժելով.*
*Զվէրս նոցա պատել Շամր(տ)ացի գոլով,*
*Տի տէրդ ծառայից բարի, Թագաւոր:*

*Երանի՛ իցէր թէ էաք համայն*
*Ընդ հովանեաւ մեծի քոյոյ տէրութեան,*
*Ի փառս 'ւ ի պատիւ քրիստոնէութեան,*
*Պարիլ եւ ցնծալ ի լոյսդ, Թագաւոր:*

*Վերջին տունն է.*

*Երգս ընծայական Բաքովլիդ յաղթող,*
*Երջանկիդ փառօք Մըտացդ լուսոնող,*
*Ի յօժար հոգւոյ Աղերս քեզ ազդող,*
*Ի թիւս Տեառն ԱՃԻԼ ՌԷ ՇԱՀ, Թագաւոր:*

*Ձեռագիր՝ Թ.* 1059, 61 *բ*—65 *բ*:

38. Վ ե ր տ ա ռ ո ւ թ ի ւ ն ք ն ա մ ա-
կ ա ց կ ա մ Գ ր ա ռ ա ջ ք:

*Երուսաղէմի Ս. Յակոբեանց Թ.* 1059, *թղ.* 3 *ա*—28 *բ կը բովանդակէ Երեմիայի ինքնագիր գրչութեամբ այլ եւ այլ գրառաջներ, այս ինքն առ այլ եւ այլ անձինս ուղղուած նամակներու սկզբնաւորութիւններ. այսպէս՝ Կաթողիկոսի, Եպիսկոպոսի, Առաջ-*

*նորդի, Փիլիսոփայի, Րաբունւոյ, Րաբունապետի, Եպիսկոպոսի եւ Վարդապետի, Անուանի Վանահօր, Վարդապետի իմաստնոյ, Աբեղայի, Անուանի եւ գլխաւոր Քահանայի, Սարկաւագի, Իրիցու ագրանի (°), Մուհապէթնամէ, Վեհ եղբօր, Կրօնաւորաց, Իմաստուն մարդոց, Իմաստուն նօտարի, Իմաստուն մանկան, Իշխանի տիկնոջ, Կուսի, Գեղեցիկ կնոջ, Բարեպաշտ եւ մեծ ազգի կնոջ, Տանուտէր մարդոյ, Հօր, Խաթրինայ եղելոյ· Պարոնի փաշայի, Գլխաւոր մարդոյ, Սիրելի եւ սիրուն եղբօր, Իմաստնոյ եւ բարեպաշտի, Պազի սիրելեաց, Խելահաս մարդոյ, Պատուական ծնողի, Պատուական վարդապետի· ընդ ամէնը 41 տաղաւոր, որոնց մէկ քանին թերի մնացած են եւ մէկ քանիներու տանց կամ տողերու սկզբնատառերը Երեմիայի անունը կը յօդեն, ինչպէս կը գրէ Մեսրոպ եպ. Նշանեան:*

*Այս խումբին տակ պէտք է յիշել* Տապանագիրները *եւ* Արձանագրութիւնները, *զորոնք յօրինած է Երեմիա տաղաւոր չափով: Այսպիսիներ կը գտնուին Տարեգրական պատմութեան ձեռագրին մէջ, Երեմիայի ինքնագրութեամբ. զասոնք Սոմալեան կ'անուանէ* «parecchi Epitaffi, Inscrizioni, Cantici, ec.» (Quadro, 160):

*Տապանագիրներէն եւ Արձանագրութիւններէն հրատարակած է Թորգոմեան՝ քաղե-*

լով Տարեգրական պատմութենէն, հետե-
ւայները·

ա· Տապանագիր մահտեսի Ամբակումի·

Այս է շիրիմըն մահտեսի Ամբակումի...

(† 1658, Նոյեմբ· 23)։ Տողերու սկզբնա-
տառք՝ ԱԻՄԷՐԷ, այն է Երեմիա։

Հրտ· Թորգոմեան, էջ 739։

բ· Ի նոյն·

Ամբակումըն է այս տապան...

Տողերու սկզբնատառք՝ ԱԻՄ(Է)ՐԷ։

Հրտ· Թորգոմեան, 740։

գ· Ի նորակերտ տունն Խօճայ Դաւթի եւ
որդւոյ նորա Գրիգոր Չէլէպւոյ (1662)։

Էին աջոփս պահպանական,
եւ օրհնութեամբըն աստուածական...

Տուներու սկզբնատառք՝ ԷՐԵՄԻԱ։

Հրտ· Թորգոմեան, 740—741։

դ· Տապանագիր Տէր Մինաս նոր նահա-
տակին († 1634, Օգոստ· 10)·

Այս է տապան երապոլցի Տէր Մինասին...

Հրտ· Թորգոմեան, 742—743։

Սկզբնատառք տողերու՝ ԱԻՄԵՐԵ։

ե. *Վերտառութիւնն ի Շուրջառն, նուիրեալ ի Ս. Կարապետ ի Կեսարիա* (1664).

*Է յիշատակ շուրջառս այս*
*Ի պատիւ սուրբ պատարագին...*

*Սկզբնատառք տողերու՝* ԷՐԵՄԻԱՅ:
*Հրտ. Թորգոմեան՝ էջ* 743—744:

39. Գանձեր եւ ողբեր:

ա. Ողբ ասացեալ Երեմիայի ի մահն մահտեսի Ամբակումի, որ էր Կ ամաց, ի թուին ՌՃԷ (1658):

*Յաւուրս սըգոյ Հայաստանեայց աղէտին,*
*Որ զսուրբն Յակոբ ձեռաց մերոց խլեցին..*

*Տուները կը կապեն* ՅԵՐԵՄԻԱԷ ԲԱՆ ՈՂԲՔ:

*Ձեռ. Երուսաղէմ, Թ.* 1042, 77 *բ*—79 *բ*:
*Հրտ. Թորգոմեան, էջ* 745—748:

բ. Ներբողեան ասացեալ Երեմիայի առ ի թաղումն Աբրահամ չէլէպու դստերն փոքեր որ ի թուականն Հայոց ՌՃԺ (1661), ի Է. օգոստոսի:

*Ներբողեանս բաժնուած է ինը գլուխներու, որոնք ունին ուրոյն վերնագիրներ: Ասոնք են.*

ա. Գովասանութիւն նախ:

*Յերգս բարիյօգս յօքնադրուատ,*
*ձայնս բարձրագոչ.*
*Առ ի պատիւս վեհագնից*
*սիրտ 'ւ ի յոգւոջ...:*

Տուները սկզբնագիրները կը յօղեն՝ ՅԵՐԵՄԻԱՅ ԾԱՌԱՅԷԴ։

բ. Նամէ սիրոյ այլ իմն յեղանակ։

Զունիմ կարիք թէ գովեմ զանուն քո
  վերապատուական.
Եւեթ այսու ծանուցից զիղձս սրտիս
  սա իմ բաղձան...։

գ. Գուժ մահուան։

Բայց չէ ոք լըսեալ զայս բան
  ի պարս երգոց հրճուական.
Աղէտ անդէն դիպեսցի
  կամ համբաւ վատ եւ տխրական...։

դ. Բան ողբերգական գուժի։

Բայց թէ զգիրս իմ անդաւոր
  ոք տեսցէ թէ ո՛ւր դադարեաց.
Վասն այն որ ի քէն կարօտ
  որ ննջեալ փափաք տխրացած...։

ե. Լաց լալականի։

Եղուկ ասի սոյն աւուր
  որ աչք մեր զնոսա տեսանէր,
Աւաղ ասեմ նոյն ժամու
  զի անկեալ փողոցս բողոքէր...։

զ. Բան մխիթարական։

Արդ մակոյկ լեզուիս առ այս
  ով տէր իմ յոյժ տկարանայ.
Թէ որպէս սփոփեմ զքեզ
  կամ զի՛նչ ծրեմ որ չնորհն երեւայ...

է. Բանք վկայականք:

*Յիշեա զիշխանն որ ունէր*
*մանուկ մի իւր խիստ ցանկալի,*
*Որ խնդրեաց վարդապետէն,*
*աղօթեա մանուկս մեռանի...:*

ը. Այլ իմն ջեղանակ:

*Մեք եմք սղալոյ արժան*
*Թէ առ մեզ ի՛նչ պատահանան.*
*Կամ ողեվարին ժամուն*
*կամ յանեղ հրեշտակին տեսլեան...:*

թ. Բանք նոխութեանց:

*Զի դու որ ունիս զծառայ*
*զերկուսինն ըղվայելչական.*
*Կանաչ պահին պահպանին,*
*եւ յաւէժ ամօք անսասան:*

*Ձեռագիր՝ Երուսաղէմ*, *Թ.* 1042, 79 *բ*—90 *բ*:

գ. Ագուլեցի խօնայ խօսքովի մահուան ճառ ի սկզբանէ մինչ ի նորին վաղճան. ասացեալ ի խնդրոյ ամուսնոյ նորին: Զգանձն եւ զողբսն երգօղն թէ յարմարեցէ ըստ ոճին զեղանակն՝ նա մէրիէպա տեառն շնորիիւ:

ա. Գանձ:

*Եկայք եղբարք ատ ժողովեցէք,*
*Զնոր եղեալ իրքս դուք նոր իմացէք...:*

*Տունները սկզբնատառք՝ ԵՐԵՄԻԱՅԻ:*

բ· Ողբ եւ տաղ վասն մահուան· «Բարձաւ ի մէնջ մեծն Մովսէս»· ի նոյն եղանակն ասա։

*Եկ դու հարցիր զմահն Խօսրովին,*
*էվա՜հ, էվա՜հ...*
*Թէ ո՛րպիսի կեանքն վճարին,*
*էվահ, էվահ...։*

գ· Վասն սուտ բարեկամացն առաջնոց՝ ոչ երեւեալ ի մահ նորին· յեղանակն՝ «Արդ պաղատիմք»։

*Անողորմից սիրտքն ոչ գիջին,*
*Որ զպարտս բազում պահանջէին·*
*Արդ զդի սորա հանեալ տեսին,*
*Վըճռեալ զըրեալ զմահն սորին...։*

դ· Վասն ի տուն բերելոյ զդի Խօսրովին· յեղանակն՝ «Ես եմ կորուսեալ», «Աշխարհս է ի ծով նման», եւ զոր կամիս։

*Երբ ի զնտանէն հանին,*
*իբր զղարիպ ի տուն հասուցին·*
*Խիստ խիղճ էր տեսիլքն նորա,*
*լսողաց զարմանք թէ պատմին...*

ե· Փոխէ զգոյնն· «Վայ այս Պոլրոսիս»· քանզի է ողբ վասն աւուրն եւ պահուն այն։

*Սեւ բօթն որ վաղ հասուցին,*
*յայն տարերքն խռովեալ խառնակին·*
*Խառնիլ սկըսաւ լերդ 'ւ աղիքն,*
*մըրրկաւ սուգն նոր սըգաւորին...*

գ. փոխէ զգոյնն:

*Մի լար դառնիկ, մի ողբար,*
*տուր սրտիդ համբեր փոքր մին.*
*Այս սուտ յանցաւոր յաշխարհիս,*
*ով հասեր սրտի մուրատին...*

*Ձեռագիր՝ Երուսաղէմ, Թ.* 1042, 90 *բ*—96 *բ*:

դ. Գանձ ասացեալ Երեմիայի ի վերայ մօրն իւրոյ. ՌՃԺԲ (1663) թվին Հայոց, յորում ամի հանգուցեալ լինի ի Քրիստոս. նորա եւ մեզ ամենեցուն Տէր ողորմի. ամէն:

*Կը բաղկանայ մէկ գանձէ եւ չորս ողբէ. վերջինը Թուրքերէն:*

ա. Գանձ:

*Երգս ողբական ողբոց արժանի*
*ծնօղիս կարօտեալ եւ փափաքելի.*
*Վիրօք խոցեալս անբըժըշկելի,*
*հարեալ ի սիրտ յաւէտ ցաւալի...:*

*Տուներու սկզբնատառերը՝ ԵՐԵՄԻԱՅԻ:*

բ. Ցեղանակն «Վկայից հանդիսից» Հրաշալւոյ:

*Որդեակ իմ Երեմիաս ըղձական*
*աշխատես Թուղթ քարտէս 'ւ ի մելան.*
*Ձայն գուժի եւ լալոյ ողբական*
*հոչակեա՛ ի յաշխարհ հեռաստան...:*

գ. (Յորդորակ)։

*Գանգատ ունիմ առել ձեզ սիրելիք,*
*Որ յիս ժողովեալ գեղեցկաչէն*
*անձն իմ զոր գիտէիք,*
*Այ իմ ի հող դարձեալ տեսէք*
*տեսէք լացէք.*
*՚ւ ափսոսացէք, ձեզ ողորմեցէք...։*

դ. (Տաղ)։

*Եթէ ծովուն թանաք մարթացեալ,*
*Կամ մորենեաց ի գրչի կազմեալ,*
*Համատարած երկինքն թուղթ սփռեալ,*
*Զգանգատս ի գիր ումեք չկարացեալ...*

ե. (Ողբ թուրքերէն)։

*Նէնէ պէնի սիզ աղլաման սըզլաման.*
*Էճէլ կէլտի էմրուլլահտի սիզ անլան.*
*Սօղօմէնըզ օլտի տէյի փէք եաման.*
*Հէմէն տէյըն քի Սօղօմէ գուրթուլտի...։*

*Ձեռագիր՝ Երուսաղէմ*, *Թ*. 1042, 96 *բ*—108 *բ*։

ե. Գանձ եւ Ողբ ի վերայ հօրն (Տէր Մարտիրոսի Քէօմիւրճեան) ասացեալ այ-զուցն։

*Կը պարունակէ մէկ Գանձ եւ մէկ Ողբ*։

ա. Գանձ։

*Երգս ողբոց արժան, երգս կականական,*
*ողորմ ողբական.*
*Աւաղ եղական, ընդ մեր թշուառութեան,*
*որբոցս հիքական...։*

*Տուներու սկզբնատառերը՝* ԵՐԵՄԻԱ։

բ. Ողբ։

*Գանկատիմ ձեզ սիրելեացդ,*
*որ եկիք այսօր յիմ տապան.*
*Տեսէք զիս ի հող բանդեալ՝*
*անկասկած էր ինձ 'ւ անկիւման...։*

*Ձեռագիր՝ Երուսաղէմ, թ.* 1042, 111 *ա* —114 *բ*։ *Գանձը քաղուածաբար հրատարակուած՝ Թորգոմեան, էջ* 749—753։

գ. Գանձ եւ ողբք ի վերայ Յակոբ կաթողիկոսի († 1680). *անխորագիր. բայց թղ.* 69 *բ կը գրէ Երեմիա ինքնաձեռագիր. «Այն Յակոբ վարդապետ երգօղ (գանձին ի մահն Մովսէս կաթողիկոսի եւ Գրիգոր Վ. Կեսարացւոյ*[55] *յետ ԽԶ տարոյ եկեալ կաթողիկոս ի Ստամպօլ վախճանեալ, որոյ եւ սակի ասացեալ եղեւ Գանձս եւ Ողբս յԵրեմիայէ ՌՃԻԹ* (1680) *թուականի»*։

ա. Գանձ։

*Երգս ողբոց արժան, երգս կականական,*
*ողորմ ողբական.*

---

[55] *Յիշուած Գանձն եւ Ողբերն, որոնք կը գտնուին բացի Երուսաղէմի թ.* 1042, *թղ.* 66 *ա*—69 *բ ձեռագրէ նաեւ Վիեննայի Մխիթ. Մատ. թ.* 387, *թղ.* 6 *ա*—13 *բ* (*Հմմտ. Տաշեան, Ցուցակ, էջ* 840—841), *Հանդ. Ամս.*, 1909, *էջ* 372, *ընծայած ենք մենք Յակոբ Կեսարացւոյ, որուն եւ կը վերաբերին ըստ անձնական խոստովանութեան։ Յակոբ Ջուղայեցի եղած է Մովսէս կաթողիկոսի աշակերտ, բայց ծանօթ չէ, թէ աշակերտած ըլլայ նաեւ Կեսարացւոյ։*

*Ազգիս Արամեան, տանս Թորգոմեան,*
*ցեղիս Աբեթեան...*
*վ. ՁԾԻՌ Հայոց անցեալ, եւ մատամբքն*
*հասեալ, յօգոստոս մըտեալ...*
*Բարեխօս կանգնեալ, ազգիս տառապեալ*
*որդեացս որբացեալ։*

*Գանձիս տուներու սկզբնատառերը կը կապեն՝ ԵՐԵՄԻԱՅԻ է։*

*Ձեռագիր՝ Երուսաղէմ, Թ.* 1042, 70 *ա*—73 *ա*: *Հրտ. սստ, էջ* 193—202:

բ. Անցելովքն ընդ ներկայիս կափա։

*Ողբամ զքեզ Հայոց աշխարհ,*
*լալական եղեալ ըստ Մովսիսի.*
*Ո՞ւր քո թագաւորք՝ ու իշխանք,*
*պայազատք ազգիս Արամի...*

*Ձեռագիր՝ Երուսաղէմ, Թ.* 1042, 73 *ա*—74 *բ*: *Հրտ. սստ, էջ* 203—207:

գ. Այլ իմն եղանակ ըստ դիպման թէ յօրինես։

*Բարձաւ ի մէնջ մեծն Մովսէս, էվահ, էվահ.*
*եւ ոչ ունիմք փոխան զՅեսու, էվահ.*
*Սուրբ Եղիայն յերկինս ելեալ*
*եւ ոչ ունիմք զԵղիսէոս...*

*Ձեռագիր՝ Երուսաղէմ, Թ.* 1042, 74 *բ*—75 *ա*: *Հրտ. սստ, էջ* 207—209:

դ. Ըստ դիպման աւուրն պատմաբար կափա:

*Յարքայագահում ննջեալ՝*
*յԻստամպօլ մայրաքաղաքի.*
*Յաւագ սրբոյ տաճարին՝*
*որ յանուն սուրբ Աստուածածնի...:*

*Ձեռագիր՝ Երուսաղէմ, Թ.* 1042, 75*բ*—76*ա*: *Հրտ. աստ, էջ* 209—212:

ե. Գովասանաբար առ վախճանեալն. վանկն յաւել պակաս անգիտութեամբ չէ:

*Ի չորից բաղկացեալ, եւ եռիւք զարդարեալ,*
*'ւ երկիւք յօրինեալ տաճար,*
*դու զիա՞րդ քակեցար:*

*Ձեռագիր՝ Երուսաղէմ, Թ.* 1042, 76*ա*—77*բ*: *Հրտ. աստ, էջ* 213—218:

*Այս Ա—Ե գանձ-ողբերու մասին հմմտ. Մեսրոպ Վ. Նշանեան՝ Ո՞վ է Ջուղայեցի Յակոբ Դ. կաթողիկոսին յաջորդը. Տաճար (Կ. Պոլիս),* 1912, *էջ* 369—371, *յատկապէս էջ* 370, *ուր յառաջ բերուած են Ա. եւ Ե. երգերու վերջին տուները: Տե՛ս եւ Թորգոմեան, էջ* 736:

է. Գանձ մանկահասակ ննջեցելոց՝ արուաց եւ իգաց. որոյ ասօղն յօրինեացէ. ոգեալ Երեմիայի ՌՃԺԴ (1665) թվականիս Հայոց:

*Եկայք ժողովք ազգայքս համայն,*
*Դուք լսեցէք զողբքս լալական.*
*Օրս այս եղեւ ինձ օր դառնական.*
*Տագնապ ցաւոց յեղակարծ մահուան:*

*Տուներու սկզբնատառերը կը կազմեն՝ ԵՐԵՄԻԱ:*

*Ձեռագիր՝ Երուսաղէմ, Թ.* 1042, 114 *բ*, —120 *բ* (*ժէ*): *Էջմիածին՝ Թ.* 2248, 124 *ա*—126 *ա* (1690):

ը. Ողբ ննջեցելոց ի գունն Ա՛յ վա՛յի:

*Յանկարծակի այսօր յիս հնչեաւ,*
*Հողմն մահու խիստ ցաւուս հասեալ,*
*Ի յանողորմ տեսլեան հրեշտակին,*
*Սաստանեցայ յերկիւղ ահագին:*
*Ա՞յ վա՞յ յանկարծ խեղճ մահուս,*
*Հազար եղուկ կարօտեալ սրտիս...*

*Հեղինակին անունը կը պակսի. երկու ձեռագիրներու մէջ ալ կը յաջորդէ Ողբս* Եկայք ժողովք *սկզբնաւորութեամբ Գանձին, Էջմիածնի օրինակին մէջ նոյն իսկ առանց խորագրի՝ անմիջապէս կցուած նախորդին: Ո՞ր Երեմիայի սեպհականն է:*

*Ձեռագիր՝ Երուսաղէմ, Թ.* 1042, 121 *ա* —122 *ա*: *Էջմիածին, Թ.* 2248, 126 *բ* (1690):

թ. Ողբ տղահասակի ի գուն «զանգատի»:

*Գանգատ ունիմ ասել ձեզ*
*բարեկամք իմ եւ սիրեցեալք,*
*Որք եկայք տեսիք զիս անշնչացեալ*
*'ւ անպիտանացեալ...*

*Առանց հեղինակի անուան:*

*Ձեռագիր՝ Երուսաղէմ, Թ. 1042, 122 բ —123 բ:*

ժ. Տաղ տղայոց աննեղաց:

*Անեղծ էութեան, 'ւ էդ անեղական*
*էիցս գոյական*
*Երրեակ եզական, անձամբ յատկական,*
*երեք սրբենեան...*

*Առանց անուան հեղինակի:*

*Ձեռագիր՝ Երուսաղէմ, Թ. 1042, 124 ա —124 բ:*

ժա. Այլ (ողբ) տղայոց մահուան:

*Հայիմ 'ւ ողբամ ծընօղ տըղայիս*
*վայ եւ եղուկ ասեմ իմ անձինս*
*Արդ զի՞նչ առնեմ եղուկ եղկելիս,*
*տեսի մեռեալ զոսկեհատ որդիս...*

*Երեւխայի՛ ստեղծագործութիւնն է տաղս, թէ ուրիշ տեղէ առնուած գրուած է Գանձատետրիս մէջ: Թէ ձեռագիր եւ թէ տպագիր օրինակները անյիշատակ կը թողուն հեղինակին անունը:*

*Ձեռագիրք՝ Երուսաղէմ, Թ. 1042, 126 բ*

—127 բ: Վիեննա, Մխիթ. Մատ. Թ. 149, 84 ա (ԺԷ/ԺԸ). Երեւան, Պետ. Թանգարանի Ձեռագիր Գանձուրանք:

Հրատարակուած՝ Մաշտոց, 1667, էջ 61—62: Armenian popular Songs, Գ. տպ., էջ 31—32:

40. Գովաբանութիւն Տնօրինական տեղեաց յԵրուսաղէմ: 1665ին Բերիայէն Երուսաղէմ գացած էր Երեմիա. եւ հոն ժամանակ մը մնացած: Այս առթիւ յօրինած է այլ եւ այլ տաղեր՝ թուով 40, նուիրուած Ս. Տեղեաց գովասանութեան: Այս տաղերը 1677ին առանձին տետրակով (35 էջ) հրատարակած է ի Կ. Պոլիս, իւր սեպհական տպարանին մէջ, զարդարած 15 պատկերներով: Տետրակիս խորագիրն է.

«Տեղեաց տնօրինականաց տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի որ ի սուրբ Երուսաղէմ եւ ընդ գաւառն: Զպատմողաբարն ոտաւորեալ, զոր տեսեալ տէր Յովսէփ վարդապետ հրամանատար տեառն Եղիազար կաթուղիկոսին Երուսաղէմայ, կամակցութեամբ տեառն Սուքիաս բաբունապետի եատուն տպագրել ի փառս փրկագործութեան Քրիստոսի եւ ի պարծանս քրիստոնէութեան հաւատոյս: Երախայրեցուցեալ առ հոգեւոր Տէրն, ընաբանիդ Պխէ. Տնօրէնի թիւ Խ եղանակ է:

Խընդա՛յի՛ երբ ա՛սէի՛ն (թէ) գնամք ի յԵ՛րուսա՛ղէ՛մ. որպէս մարգարէ՛ն ասէր. Տուն Տեառն է ինքն Երուսաղէմ: Հասեալ լի-

*նէին ոտք մեր առ դըրունս քո Երուսաղէմ։ Զքաղաքդ Աստուծոյ տեսնելու զփա՛ռս քո ա՛յ Երուսաղէմ»։*

*Ի կատարածին կ՚ըսուի* (*էջ* 30—31).
*Ի սուրբ Երուսաղէմ սա երգեցաւ*
*ՊԷՅԱԶ ընծայեալ.*
*Յարկըն տէր Եղիայ՝*
*որ լուսարարն արժանաւորեալ։*

*ՊԷՅԱԶ կը համապատասխանէ Հայոց ՌՃԺԴ* (1665) *տարւոյն։ Իսկ տպագրութեան ժամանակի մասին կը պատմուի Յիշատակարանին մէջ թէ Կաթողիկոսի՝ Եղիազարու նուիրակը Տ. Յովսէփ Կ. Պոլիս գալով՝ հոն տպագրել տուած է տետրակս եւ Երուսաղէմ ղրկած. ի վերջոյ կ՚ըսուի բառախաղով.*

*ԷՀՊԱՊ Քրիստոսի թուէք.*
*Եւ ՋԱԶ ԻՄ ի Հայս յիշեցէք.*
*Ի բարեացդ խնդրի բարիքն,*
*Միշտ գրարին ՅԻՆԷՆ մի խնայէք։*

*ԷՀՊԱՊ կը համապատասխանէ փրկչական* 1678 *տարւոյն. իսկ ՋԱԶ ԻՄ եւ ՅԻՆԷՆ Հայոց ՌՃԻԷ* (1678) *թուականը կ՚ակնարկեն*[56]։

---

[56] *Հմմտ. Հ. Գ. Զարբանալեան՝ Պատմութիւն հայկական տպագրութեան, էջ* 133—134. *Նոյն՝ Մատենագիտութիւն, էջ* 446 *եւ* 672—673. *Աղաւնունի, Միաբանք եւ Այցելուք,* 136։

41. Տաղեր զանազան նիւթոց վրայ: Այս տեղ կ'ամփոփեմ այբուբենական կարգով այն տաղերը, որոնք մուտ գտած են զանազան տաղարաններու մէջ եւ կը կազմեն Երեմիայի Դիւանը, անկախ իր միւս տաղաչափական գրուածներէ:

ա. Տաղ ի Ս. Աստուածածինն:

*Ահաւոր, սոսկալի, դէմք հիանալի...*

Կը յիշէ Նորայր Բիւզանդացի իր անտիպ մէկ գրուածքին մէջ:

բ. Տաղ ի վերայ Ջրոյ:

*Ա՛յ ջուր յորդախաղ գետոյդ,*
*յորդորական գետ յորդորական.*
*Ա՛յ ջուր ճոխական ընթացք,*
*ո՞ւր երթաս յորդախաղական...*

Ձեռագիր՝ Վենետիկ, Մխիթ. Մատ. Թ. 556:

Հրտ.՝ Ա. Զօպանեան, Անահիտ, 1903, էջ 191:

գ. Տաղ ի վերայ Ջրոյ:

*Ա՛յ ջուր, պասքելոց դու զովացարան,*
*Կարօտով եմ քեզ միշտ ի փափաքման.*
*Դու նազիս խաղաս ի յորդորական,*
*Սրտակաթ առնես ծալիդ ծաւալման...*

Ձեռագիր՝ Վենետիկ, Մխիթ. Մատ. Թ. 556:

Հրտ.՝ Ա. Զօպանեան, Անահիտ, 1903, էջ 190:

գ· Տաղ սուրբ Աստուածածնի· յԵրեմիայէ ասացեալ:

Աստուածածին կոյս Մարիամ Թագուհի,
Տեղ ես մաքուր հօր Աստուծոյ անեղի,
Եւ ծնօղ Թագաւորին համայնի·
Եւ սուրբ հոգւոյն տաղաւարեալ տիրուհի:

Տուներու սկզբնատառերը կը կազմեն՝ ԱՐԵՄԻԱՅԷ:

Հրտ·՝ Տաղարան փոքրիկ[57], էջ 53—55:

ե· Տաղ սուրբ Աստուածածնին· ի յԵրեմիայէ ասացեալ:

Աստուածածին սրբարան,
Տուն եւ տեղի մաքրութեան·
Աստուածորդւոյն գրկարան
Որ ի քեզ բազմեալ տեսաք: ...

Հրտ·՝ Տաղարան փոքրիկ, էջ 56—57:

զ· Տաղ սիրոյ եւ ուրախութեան:

Արեգակն որ է ստեղծեալ,
յարարչին[58] խրում գործն երթայ·
Քեզ է սպասաւոր պատրաստ միշտ,
տալով զբարիս քեզ ընծայ...

---

57 «Տաղարան փոքրիկ եւ գեղեցիկ, Երգեցեալ ի բանաստեղծից իմաստասիրաց, Ի խրախճանս մանկանցն Սիօնի· եւ ի փառս ամէնամեծին Աստուծոյ»· 12°, էջք 128: Տպագրութեան տեղն եւ տարին չէ նշանակուած, բայց կ'երեւայ թէ տպուած է Կ· Պոլիս, ԺԸ· դարուն, 1722էն յետոյ:

58 Տպ· յարարչէն:

Ձեռագիր՝ Վենետիկ, Մխիթ. Մատ. Թ. 556։

Հրտ.՝ Ա. Զօպանեան, Անահիտ, 1903, էջ 192։

Է. Տաղ։

Ելք արեւու ծագող լուսոյ անեղին,
Սըուի փինհան Փիլէպէտի չուչանըն...

Տուներու սկզբնատառերը կը կազմեն՝ ԵՐԵՄԻԱՅԻ է։

Ձեռագիր՝ Էջմիածին, Թ. 523, Թղ. 131ա։

Ը. Գովասանութիւն ի վերայ ջրոյ, ասացեալ ի յԵրեմիայէ։

Երամք երկնային թռչնոց խմբեցան
Հաւք մեր կանգ առին[59] յեղերդ զանազան.
Մինչեն կարկաչեն[60], երգեն քաղցրաձայն,
Քեզ հարցմունք լինին ու կան հայցական։..

Ձեռագիր՝ Վենետիկ, Մխիթ. Մատենադարան, Թ. 556։

Հրտ.՝ Տաղարան գեղեցիկ, էջ 43—48։ Ա. Զօպանեան՝ Անահիտ, 1903, էջ 189—190։

Ժ. Գովեստ առ Ս. Աստուածածինն ասացեալ յԵրեմիայէ բանասիրէ[61]։

---

59 Տաղարանն ունի. «հաւքեր կաքաւին...»։

60 Տղ. «կաքաւեն»։

61 Ոմանք կը խորագրեն՝ «Ստամպօլցի Քօմուրճի դատոյ Երեմիայէ ասացեալ ի վրայ Աստուածածնայ». կամ պարզապէս՝ «Տաղ ի վերայ Ս. Աստուածածնի»։

Երանեալ կոյս սուրբ տալիթայ Մարիամ,
ուրուհի փառք վէ ուրուքարի սուլթան.
Փրկչին մերոյ տուն եւ տեղի բնակու-
թեան.
պանըմ արզըմ սանդայ սունուրում Մէ-
րիամ...

Վ. է հարք 'ւ եղբարք իղձս ո՛չ արգել յայս-
մանէ,
Քիսէ օղլարիմ ղարարիմտան գիտէ.
Անմեղադիր լինել հայցեմ գիտէ,
Միզա՛ եասըր կէտա՛ Քէօմուրճի ղատէ:

Տուներու սկզբնագրերը կը կազմեն՝ ԵՐԵՄԻԱՅԻ է:

Ձեռագիր՝ Էջմիածին, Թ. 41, Թղ. 135 ա (ԺԸ). 2394, Թղ. 43 ա (ԺԸ): Վիեննա, Մխիթ. Մատ., Թ. 671, Թղ. 62 ա: British Museum, Conybeare, Catalog, Թ. 108, Թղ. 281 բ: Եւ այլն:

Հրտ.՝ Գիրք Դպրութեան եւ Տաղարան, էջ 193—194: Տ. Վ. Պալեան՝ Բ ի ւ ր ա կ ն, 1897, էջ 612—613: Թորգոմեան, էջ 756 (միայն հայերէն տողերը):

ԺԱ. Տաղ ասացեալ ի յԵրեմիայէ ի վե-րայ Ս. Երուսաղէմայ. տաճկի բարբառով:

Մուճտէմ վարտըր տոստղարիմէ.
Սէլամ օլսուն հազըրլարէ.
Քութսու չէրիփ մուպարէքտէ.
Նէ ազիզ սէյրան ու մէքեան...

Վ. Երեմիա՛ կէտա՛ մէնէնթ քուլլէր·
Պիլլահքի Մէճնունի Լէյլան։

Ձեռագիր Յ. Քիւրտեանի, Տաղարան։

Հրտ.՝ Տաղարան փոքրիկ, էջ 41—43։

ԺԲ. Տաղ ասացեալ յԵրեմիայէ ի վերայ Սողոմոն իմաստնոյ։

Յարհեստ քերթութեան հմտասցիս ի բան·
Գտցես զանուն Սողոմոնի անուն յարական··

Հրտ.՝ Տաղարան փոքրիկ, էջ 51—52։

ԺԳ. Տաղ ասացեալ ի յԵրեմիայէ (վասն անցաւորութեան աշխարհիս)։

Յիսուսի Քրիստոսի Աստուծոյն մերոյ փրկչին
Տուք օրհնութիւն եւ գոհութիւն միաբան·
Որ արար յոչէից զեղեալքս ամենայն·
Եւ զբոլոր արարած ինչ որ ի սմա կան…

Տուներու սկզբնատառք կը կազմեն՝ ՅԵՐԵՄԻԱՅԷՍ։

Հրտ.՝ Տաղարան փոքրիկ, էջ 61—64։

ԺԴ. Տաղ Յովհաննու Մկրտչի· ասացեալ ի յԵրեմիայէ։

Ով դու մարգարէ մեծի,
Բարձրեալն ընտրեալ յարգանդի·
Աւետեօք Գաբրիէլի,
Սքանչելի ծնունդ, սքանչելի…

Վ. Ես նուաստ Երեմիայ
Սուրբ գերեզմանդ քո յուխտ եկայ·
Ամենից չնորհատու տեսայ,
Տուր մեր արգըն սուրբ Կարապետ։

Ձեռագիր՝ Վիեննա, Մխիթ. Մատ Թ. 577, թղ. 122ա (ԺԸ):

Հրտ.՝ Տաղարան փոքրիկ, էջ 48—50:

ԺԵ. Տաղ ի վերայ Ս. Գերեզմանին Քրիստոսի, տաճկի բարբառով:

Քերէմ պապը աչըլանտէ,
Կիւլճէմալըէր կէօրունէնտէ.
Հասրէթի զար օլան հալքէ.
Կէօյեաքի սուրրէթ ուէհման:

վ. Քէօմուրճու զատէի խաքի,
Կէօյեաքի քէնտի լութֆունտան:

Ձեռագիր՝ Վիեննա, Մխիթ. Մատ. Թ. 436, ԺԳ. թղ. 15բ:

Հրտ.՝ Տաղարան փոքրիկ, էջ 52—53:

ԺԶ. Երգ սիրոյ:

Ա. Զօպանեան, Անահիտ, 1903, էջ 189 հրատարակած է տաղ մը այս խորագրի տակ, որուն թէ սկիզբն եւ թէ վերջը պակասաւոր է: Թէ ի՞նչ հիմամբ Երեմիայի կ՚ընծայէ Զօպանեան այս տաղը, ինձի անծանօթ է. կը կասկածիմ թէ Երեմիայի հարազատ ըլլայ:

Երուսաղէմի Թ. 1059 ձեռագիրը ունի իր ծոցը քանի մը խրատական տաղեր, զորոնք կ՚ուզեմ յիշել հոս.

ԺԷ. Ղարիպի:

*Փորձանաւորդ ի պատահմանց մի հոգար,*
*Փրկել ըզքեզ գըթածն Աստուած մի հոգար,*
*Փայփայելոյ մերձ է կարօղն մի հոգար,*
*Փառաւորել, դարձեալ յարգել մի հոգար:*

*Տաղս կը բաղկանայ* 11 *տունէ եւ տողերու սկզբնատառ գիրն է «փ»:*

*Ձեռագիր՝ Երուսաղէմ,* 1059, 68 *բ*—69 *ա*:

ժը. *Անխորագիր* (18 *տուն*):

*Յիշեա՛ ըզՅոբն, արդար եւ անարատ էր.*
*Որպիսի փորձութեանց նա միշտ համբերէր.*

*Ձեռագիր՝ Երուսաղէմ, Թ.* 1059, *Թղ.* 87 *բ*—88 *ա եւ* 90 *ա*:

ժթ. *Անխորագիր* (20 *տուն*):

*Մըտածես զփառս քո առաջին,*
*Եւ աւաղես զկեանքդ ի նըմին.*
*Միթէ չա՞տ էր կամ այլ մեծ էր,*
*Փառք եւ պատիւդ քան զԱդամին:...*

*Ձեռագիր՝ Երուսաղէմ, Թ.* 1059, 88 *բ*—89 *ա*:

*Նոյն ձեռագրին մէջ՝ Թղ.* 71—87 *ա կան ուրիշ* 28 *ոտանաւորներ ալ, որոնք կը սկսին այբուբենի տառերով յաջորդաբար: Այս ոտանաւորները մեծ մասամբ Թերակատար ձգուած են, ոմանց մէջ տեղ տեղ անգամ բաց տողեր կը տեսնուին:*

---

## ՅԱՒԵԼՈՒԱԾ

Յիշեցինք վերագոյն, երբ կը խօսէինք Երեմիա Չէլէպիի կենսագրութեան եւ գրուածներու վրայ, թէ ինքը որչափ ալ յարած էր Եղիազարի եւ բարեկամն էր Մարտիրոս Կաֆայեցւոյ, բայց եւ այնպէս չկորսնցուց իր հաւասարակշռութիւնը, երբ Եղիազար մէկ կողմէն եւ Յակոբ կաթողիկոս Ջուղայեցի եւ Մարտիրոս Կաֆայեցի միւս կողմէն բախում ունեցան կաթողիկոսական իշխանութեան շուրջը: Երեմիա ճանչցաւ Էջմիածնի աթոռին գերակայութիւնը եւ մնաց հաւատարիմ հանդէպ անոր ներկայացուցչին Յակոբ Ջուղայեցւոյ: Կաթողիկոսը Էջմիածնի իրաւասութիւնը Տաճկահայոց վրայ պաշտպանելու համար երկիցս հարկ տեսաւ գալ Կ. Պոլիս. թէ հոգեկան տառապանքները եւ թէ տարիքին տկարութիւնները ընկճեցին ի վերջոյ իր ոյժը, եւ 1680ին վախճանեցաւ Կ. Պոլիս, ուր մինչեւ այսօր ցոյց կու տան «Հոգեւոր Տիրոջ» շիրիմը, յարգուած ամէնէն:

Երեմիա, որ ականատես էր իրադարձութեանց, կաթողիկոսին մահէն ետքը նուիրեց մեծ հանգուցելոյն յիշատակին Գանձ մը եւ չորս տաղեր, որոնք ոչ միայն Երգչին ազնիւ զգածմանց թարգմանն են, այլ եւ արժէքաւոր

են իրենց պատմական բովանդակութեամբ։ Մեսրոպ եպիսկոպոս Նշանեան, որուն կը պարտիմ Գանձիս եւ տաղերուս օրինակութիւնը Երուսաղէմի Ս. Յակոբեանց Մատենադարանի Թ. 1042 ձեռագրէն, ուրիշ տեղ առիթ ունեցած էր անդրադառնալու Գանձիս եւ տաղերուս, բացատրութիւն տալ փորձելով Երեմիայի այն տողերուն, ուր Յակոբ կաթողիկոս իր յաջորդը կ'անուանէ Սահակ ոմն, Նշանեան սրբազանին այդ գրութիւնը յիշած ենք արդէն վերը, էջ 179։

Մենք կը հրատարակենք բնագիրները անփոփոխ, այնպէս ինչպէս Մեսրոպ Սրբազան ներկայացուցած է մեզ։ Գանձին ստորեւ լուսաբանական ծանօթութիւնները Երեմիայի գրչէն են, նշանակուած ձեռագրին լուսանցքներուն վրայ։

Այս գանձ-ողբերու կից կու տանք Հրկիզման պատմութեան վերջաբանը եւ Երուսաղէմեան Թ. 33, 605 Բ եւ 892 ձեռագիրներու նկարագրութիւնը, զորոնք տրամադրած է մեզի Մեսրոպ Սրբազան։ Գ. Յաւելուածը կը ներկայացնէ էջմիածնի Թ. 348 Աստուածաշունչին Յիշատակարանը, զոր օրինակած եմ 1925ին բնագրի վրայէն, դժբախտաբար քաղուածաբար։ Իսկ Ը. Յաւելուածն է Ապրօյեանց տոհմածառը, որ էական մասով հիմնուած է Երեմիայի հաղորդած տեղեկութեանց վրայ։

## Ա․

## ԵՐԵՄԻԱ ՉԷԼԷՊԻՈՅ ԳԱՆՁ ԵՒ ՈՂԲ Ի ՎԵՐԱՅ ՅԱԿՈԲ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ

*Երգս ողբոց արժան, երգս կականական,*
*ողորմ ողբական,*
*Ազգիս Արամեան, տանս Թորգոմական,*
*ցեղիս Աբեթեան,*
*Ողբս մովսիսական, ըս°տ փիլիսոփիան,*
*սրբոյ Խորենեան,*
*Ողբս կողեռական, սրբոյ Յոհաննեան,*
*աւաղ եղկական։*
*Անէծք Ներսիսեան, ցեղին պահլաւեան,*
*լուսաւորչական.*
*Ըս°տ Սահակայ տեսլեան, մարգարէութեան,*
*հոգւոյն ազգական.*
*Իսկոյն լրացան բանքն զոր խօսեցան*
*եւ կատարեցան.*
*Երկուց գաւազանն, թագաւորականն,*
*հայրապետականն,*
*Ազգին Արշակեան պայծառ թագքն բարձան*
*եւ նուաստացան,*
*Սրբոյ Գրիգորեան լուսաւորչական*
*աղօտեալ շիջան։*
*Օտար ազգք յարեան ի մեզ բռնացան,*
*մեք ծառայական.*
*Աշխարհ մեր աւան, գլխաւորքս մեր կերան*
*մեզ ակն յանդիման։*

Բարի աղօթիւք Սուրբ Հայրապետիս
Տէր այց արա՛ տառապեալ ազգիս,
Աղաչեմք. լուր Տէր:

Ռոտեալ իսկ ոմանք, ինքնակոչ յայտնեալք,
զանձինս ընծայեալք,
Յառաջ մատուցեալք օրինաց դիմակք
եւ կարգաց ներհակք,
Սահակին հակակ, սահմանաց ակամակ,
սրբոց հակառակք,
Բռնի տիրացեալք, արծաթով ընտրեալք,
յուսով հրովարտակք.
Զոյս ի մարդ եղեալք, տըհասք՚ւ անպիտանք,
խոտանք՚ւ ապիրատք.
Նախանձու մոլեալք, ի փառս մըրրկեալք,
ընդ կենցաղումս միտեալք,
Դարանակալեալք, չարեաց պատճառք լեալք,
զմիմեանս ատեցեալք,
Պարզամիտք գթեալք, եւ բազմաց նենգեալք
եւ խորամանկեալք,
Գիտունք տիրեցեալք, իմաստունք մաշեալք,
եւ ի ցաւս հարեալք,
Անմիտ ազգ յարեալք, զմեզ զկըծեցուցեալք,
մեք անտիրացեալք:
Բարի աղօթիւք նոյն:

Երբեմն մեզ սուրբ հարք յարեան երանեալք
սուրբ հոգւով զինեալք,
Սրբութեամբ ընտրեալք, մաքրութեամբ
պարզեալք եւ գերազանցեալք,

Սքանչելեօք փայլեալք,
հրեշտակաց նմանեալք, չքնաղ երեւեալք,
Սուրբ Յոհաննիսեանք, մաքուր Ներսիսեանք,
եւ Գրիգորիսեանք,
Իմաստիւք յարդեալք, հանճարով լցեալք
եւ փարթամացեալք,
Առաջնոցն նմանեալք, առաքինացեալք
եւ ճգնազգեցեալք,
Անուամբ հռչակեալք, գործովք վկայեալք
եւ փառաւորեալք·
Զհօտն լաւ պահեալք, ըն°դ գալար վայրն
անուցեալք, ի ջուրս հանգուցեալք:
Այլազգիք տեսեալք, ըզմեզ երանեալք,
չարք ի մեզ դաձեալք:
Բարի աղօթիւք եւայլն:

Մինն ի սուրբսն ընտրեալ, Մովսէսն երանեալ,
երջանիկ ցուցեալ,
Ի Տաթեւ տնկեալ, ի վանքն ուռճացեալ,
սրբութեամբ բուսեալ,
Բարուք կանաչեալ, վարուք սաղարթեալ,
հովանաւոր լեալ·
Սուրբ գործովք ծաղկեալ, պտղօքն քաղցրա-
ցեալ, հասուն կատարեալ·
Գոյնն գեղեցկացեալ, հոտով սխրացեալ,
համով սիրեցեալ:
Զբարի գործսն տեսեալ, մարդիկ զարմացեալ,
զՏէրն փառաւորեալ·
Գաւազան հասեալ, եպիսկոպոս լեալ,
յաշտանակ կանգնեալ·

Ընտրեալ եւ սրբեալ, պարզեալ եւ մաքրեալ,
յառաջ հրաւիրեալ.
Կոչեալ եւ ձայնեալ, ի գահն մեծարեալ,
կաթուղիկոս լեալ.
Լոյսն լուսաւորեալ, յարեւելս ծագեալ,
յարեւմուտս սփռեալ.
Այնմ շառաւիղեալ, յաշխարհ տարածեալ,
այնմ շաւղօք յարգեալ.
Ազգ Հայոց բերկրեալ, պարծանօք լցեալ
եւ մխիթարեալ.
Ի չուքն ժողովեալ, ի հոտն զմայլեալ,
զպըտուղն ճաշակեալ:
Մովսէսս երանեալ, երբ վախճան հասեալ,
զկըտակ արարեալ.
Յերկինս փոխեցեալ, ընդ սուրբ հարսն
հետեւեալ, ընդ հրեղէնսն պարակցեալ:
Բարեխօսութեամբ Սուրբ Հայրապետիս...

Իսկ զաթոռն յանձնեալ ի Փիլիպպոսն ընտրեալ,
հանուրց պետ կարգեալ.
Սա շնորհօք զարդարեալ աղօթիւք փայլեալ,
իբր հրաշիւք ճեմեալ.
Թագ ի գլուխ եդեալ, իբր զարքայ յայտնեալ,
Հայք փառաւորեալ.
Այլ ազգ երբ տեսեալ, երանի տուեալ,
զսուրբ հայրն մեծարեալ.
Դպրատունք բացեալ, մարգարանք բանեալ,
աշակերտք վարժեալ.
Դասատունք հաստեալ, վարժապետք
յարգեալ, տէլէտք ճոխացեալ.

Իմաստք յառաջեալ, գիտութիւնք աճեալ,
    ըղչնորհան որ ձրրեալ․
Տեսուչք խրախուսեալ, փաղերայք փայլեալ,
    րաբունիք ճեմեալ․
Հռետորք հրազինեալ, իբր զուրբ առաքեալ,
    քարոզք տարածեալ․
Լոյսք լուսաւորեալ, աղք զհամեմս սփռեալ,
    ուսմանց պատճառք լեալ․
Ամբիոնք վառեալ, ատեանք ցնծացեալ,
    ազգ Հայոց սփոփեալ:
  Բարեխօսութեամբ Սուրբ Հայրապետիս…

Արդ սահմանքն աճեալ, կարգն
    պայծառացեալ, օրէնքն ճոխացեալ․
Կրօնաւորանքծաղկեալ, անապատքպլողեալ,
    ճգնաւորք մաքրեալ,
Պահեցողք պատեալ 'ւ առաքինացեալ,
    սրբոցն հաղորդեալ
Գետքն հորդահոսեալ, հովիտք առոգեալ,
    պտղօք զարդարեալ,
Առաջնորդք յայտնեալ, յաշտանակ
    կանգնեալ, հարց շաւղօք գնացեալ․
Տօնք հանդիսացեալ, խորհուրդք քարոզեալ,
    խնկեալ մեծարեալ․
Ինքեանք գործեցեալ, օրինակ եղեալ
    'ւ այլոց ուսուցեալ:
Փիլիպպեայ ընտրեալ սմն աշակերտեալ,
    ուսալ 'ւ անդրանկեալ,
Յակոբս անուանեալ, աթոռակալեալ,
    զուրբ Տունն յայսմ յանձնեալ,

Ի գործն տնտեսեալ, արի եւ ժրացեալ,
    իշխանաւորեալ,
Զքանքարն շահեցեալ, զմխարանսն խնամեալ,
    կուռ կառավարեալ:
Փիլիպպոսն փոխեալ, ընդ սուրբս
    դասակցեալ, յիշատակ թողեալ,
ԶՅակոբ մեծարեալ, յաջորդ իւր կանգնեալ,
    տեղապահ ցուցեալ:
Բարեխօսութեամբ Սուրբ Հայրապետիս...

Յարեւելս ճեմի, աշխարհ զուամարի,
    մեծ հանդէս լինի,
Օրհնութիւն լինի կաթուղիկոսի,
    օծմամբըն շնորհի,
Տէր Յակոբս բազմի, ի գահն մեծարի,
    սուրբ յաթոռն նստի,
Աշխարհ հնազանդի ըն°դհանրական թղթի
    որոյ հրամանի.
Յոտսն յաղերս դիմի, կեցցէ՛ արքայի,
    շնորհաւոր ասի.
Անցեալքն յարգի, անուամբ հռչակի,
    պայծառութեամբ լի:
Տաճարք հիմնարկի, Նախավկայն շինի,
    շատ գործք հաճելի.
Միշտ տընարարի, երախտաւորի,
    ըստ ամենայնի.
Ըս°տ երկոտասանի ամօք մեծարի,
    արդիւնաւորի:
Բարեխօսութեամբ Սուրբ Հայրապետիս...

Իսկ Գլուխս երանեալ, մինչ անձամբն ճեմեալ,
անդամօքն բերկրեալ,
Յանկարծ հողմ բախեալ, անդէպ մրըրկեալ,
զփորձանս փոթորկեալ.
Ակունք[1] գայթակղեալ, լեզուք[2] այլայլեալ,
բերանք[3] զչարս նիւթեալ.
Ունկան խոր խըցեալ, ձեռք որ վաղ կոընծեալ,
ոտք[4] գայթ ի գայթ լեալ.
Սիրտըք տխրեցեալ, անձինն մաշեցեալ,
ի ցաւսն վշտակցեալ:
Ըս°տ որում ոչ յանցեալ, եւ աննենգ գըտեալ,
Գլխոյն սրբանեալ:
Ոմն[5] ձախմէ զչարեալ եւ սատան կանգնեալ,
ի Գլուխս մխեցեալ.
Ոմն[6] յաջմէ ձախեալ, բարեկամացեալ,
Գլխոյս զխաս բերեալ:
Նախանձու մոլեալ, ընդ միմեանս բախեալ,
զԳլուխս պատճառ եղեալ,
Ընդ փառս նկըրտեալ, ըն°դ պատառս
ագահեալ, զԳլուխս զիջեցուցեալ.
Հուրն այնց անթեղեալ, դիպուկ ժամս
վառեալ, Գլուխս է մէջ այրեալ.
Ոսոխքն զրպարտեալ, բարուրանս եղեալ,
առ Գլուխս ոգորեալ.
Գլխոյս բողոքեալ, առ անձն իբր օգնեալ,
զիրաւունս խնդրեալ.

---

1 եպիսկոպոս:
2 վարդապետ:
3 իշխան:
4 ժողովուրդ:
5 Եղիազար:
6 Մարտիրոս:

*Որ աւուր աճեալ, ցաւըն սաստկացեալ,*
*ըն°դ փշօքն պատածեալ·*
*յԻստամպօլ եկեալ, զբազում ծախս հանեալ,*
*զդեղսն ի ցաւ փոխեալ·*
*Փասքուսաց[7] դիպեալ, որք խորամանկեալ,*
*զՍուրբս միշտ նենգեալ·*
*Բժիշկ իբր ցուցեալ, զդեղս միշտ մատուցեալ,*
*զախտն ծանրացուցեալ·*
*Սուրբս ապուշ մնացեալ, միամիտ վարեալ,*
*զարտաքնոցն չգիտեալ·*
*Ազգիս բողոքեալ, զդատաստան խնդրեալ,*
*զոչինչ չահեցեալ:*
*Փուշքն[8] զօրացեալ, խոցոտիչքն խըստեալ,*
*զԳլուխս դառնացուցեալ·*
*Ի Սալիմ ելեալ, զդեղն ոչ եւս ճարեալ,*
*յԻստամպօլ դարձեալ·*
*Յիդմիւռին իջեալ, զհանդիստ ոչ առեալ,*
*անտի աքսորեալ[9]·*
*Յաթոռն սուրբ ելեալ, անդ զակնատ տեսեալ,*
*իշխանաց մատնեալ·*
*Նոր մ°րիկ[10] եւս չընչեալ, եւ բքախառնեալ,*
*սաստանք կարկտացեալ·*
*Երբեմն հալածեալ, եւ շատ տարադրեալ,*
*աստ 'ւ անդ տառապեալ·*
*Ի փախուստ դիմեալ, յօտարս վըտարեալ,*
*վըշտուք տարբերեալ·*

---

7 Միրզէ, Խօսրով, Աստուածատուր, Պնեաթ:
8 Ի Մարտիրոսէ:
9 յԵդիկազարէ:
10 Կարկուտ [Ոնոփրիոս վարդապետ]:

Աստուած ապաստեալ, Տէրն իւր միշտ օգնեալ,
ի մահուն փրկեալ[11].
Մանիչքն կոր փշրեալ, Թշնամիքն պատժեալ,
սատանայքն սատակեալ.
ՅԸսպահան հասեալ, դանկատ արարեալ,
ի Շահն ինչ ափոփեալ.
Անափ եւ դարձեալ, ընդ Հոռմաստան շրջեալ,
իբր դդեղ ինչ հնարեալ.
Բոնի սաստ բերեալ[12], միշտ դաւաճանեալ,
դատ ՚ւ ի դուռ մատնեալ.
Զհամարս պահանջեալ, զտոկոսս յարբարդեալ,
զպարտս բազումս խուզեալ.
Ցեցքն եւս զօրացեալ, զոսկերսն միշտ ծըծեալ,
մինչ յուղիղն հասեալ:
Յայս հակիրճ ողեալ, ընդ ողբս չարադրեալ,
զպարգան ընդ վէպան թողեալ:
Բարեխօսութեամբ Սուրբ Նահատակի. եւն:

Էկեւ հաչեցեալ, զանդուզան որ տեսեալ,
սիրան իւր միշտ մաշեալ.
Զամս հնգետասանեալ, ընդ ես ալեօքն
խռնեալ, տաղնապօք ծըփեալ.
Մինչեւ իմացեալ, զչարս զբարիս ծանեալ,
զարգս զանարգս ջոկեալ.
Յայս համայն լըսեալ, խուլ եւ համր եղեալ,
զբերանն ոչ բացեալ.
Զանխծօղան օրհնեալ, եւ խստամբերեալ,
ակն իւր արտասուեալ,

---

11 Խանն Րէփանայ:
12 Ի Խոսրովենց:

Զելսն ի մտի եդեալ, զվախճանն նրկատեալ,
զմահն իւր խոկացեալ·
Զաշխարհ օրհնեցեալ, զկապանս արձակեալ,
զկըտակ արարեալ·
Զտէր Սահակն ընտրեալ, տասն ամօք հաճեալ,
յաջորդ կամեցեալ·
Սրտին խոստացեալ, բերանովն ուխտեալ,
մատամբն իւր ցուցեալ·
ԶՃԻՌ Հայոց անցեալ, եւ մատամբքն
հասեալ[13], յօգոստոս մըտեալ·
Զանցաւորս թողեալ, զսուտ կենցաղս լքեալ·
մահու հնազանդեալ·
Օրերն իւր լըցեալ, եւ ս°տուեր կեանքն
սպառեալ, ի ստուգ կեանսն փոխեալ·
Իսկ հոգին մաքրեալ, առ Աստուած սլացեալ,
ի լոյսըն խառնեալ·
Սիոնին բարձրեալ, արժանաւորեալ,
ընդ հրեշտակսն դասեալ·
Տխրութիւնքն մերժեալ, ցաւքըն փարատեալ,
վիշտքըն դադարեալ·
Քաղաքաց տասնեալ, յուսովն ըզմայլեալ,
տիրելովն բերկրեալ·
Բարեխօս կանգնեալ, ազգիս տառապեալ,
որդեացս որբացեալ:
Բարեխօսութեամբ Սուրբ Հայրապետին...:
(Մատենադարան Ս. Երուսաղէմի Ձեռ.
Թ. 1042, Թղ. 70 ա—73 ա):

---

13 6 + 100 + 20 + 1000 + 3 = 1129 (1680):

## Բ.

## ՈՂԲՔ Ի ՄԱՀ ՅԱԿՈԲ ԿԱԹՈՒՂԻԿՈՍԻ ՅԵՐԵՄԻԱ ՉԷԼԷՊԻՒՈՅ

### Ա.

Անցելովքն ընդ ներկայիս Կափա:

*Ողբամ զքեզ Հայոց աշխարհ՝*
*լալական եղեալ ը՞ստ Մովսիսի.*
*Ո՞ւր քո Թագաւորք 'ւ իշխանք՝*
*պայազատք ազգիս Արամի:*
*Բարձան Թագք ի մեր գլխոց՝*
*եւ եղաք ողորմ ու լալի.*
*Վանեալք, տարագրեալք, ցրուեալք՝*
*ոտից կոխ ազգաց օտարի:*
*Բարձան առաջնորդքըն սուրբք՝*
*հովուապետքըն քաջ եւ արի.*
*Հայրապետքըն սրբազանք՝*
*զրկցաք ողորմ ու լալի:*
*Հոգաբարձուք խնամածուք՝*
*հեղինակք ընդ այցելուի,*
*Ոչ երեւին 'ւ ոչ գտանին՝*
*վասն որոյ եղաք մեք լալի:*
*Վարդանանց պատերազմէն՝*
*մինչեւ ցարդ մեք Թշուառելի.*
*Տապաստ անկեալ երկեր մեր՝*
*ի Պարսից, Տաճկաց, Թաթարի:*
*Աշխարհ մեր հրձիգ եղեալ՝*
*յաւարի 'ւ աւեր 'ւ անտիրի.*

*Սպառ սպուռ եւ ցիր եւ ցան՝*
*կոտորեալ, վարեալ եւ գերի։*
*Լանկթամուրն եւ անօրէն՝*
*սուր ՚ւ ի սով ածեալ ի վշտի,*
*Ճելալիքն եւ այլ առակ՝*
*կատաղեալք ի յԱնատօլի։*
*Արքայն պարսից Շահ Աբաս՝*
*յերկիր իւր քըշէր զհայազգի,*
*Զաւհմանացն եւ Օսմանցոց՝*
*Ջուղայոյն ընդ Նախչուանի։*
*Սուր եւ սով եւ հալածումն՝*
*ցիր եւ ցան եւ տարագրելի.*
*Սուրբ հայրս ի Ջուղայ ծնեալ՝*
*որ ընդ հարբն յԸսպահան վարի։*
*Ի Նոր Ջուղայն եւ սնանի՝*
*ուր Հայոց ճոխքն բնակի.*
*Ցընթերցմունս սա գեգերի՝*
*՚ւ աբեղայ կուսան ձեռնադրի։*
*Խաչ ընդ յուս բառնալ դիմէ՝*
*եւ ի կրօնս մաքրական միտի.*
*Գաւազանի ժամանէ՝*
*վարդապետ լինի բարունի։*
*Եպիսկոպոս ձեռնադրի՝*
*եւ աթոռակալ մեծ կարգի.*
*Տընարար եւ շահարար՝*
*երախտիք յարեւելս փայլի։*
*Ի Վաղարշապատ քաղաք՝*
*ի յաթոռն սուրբ Էջմիածնի,*
*Բազմեալ սա մեծ պատրիարք*
*եւ կաթողիկոս՝ մեծարի։*

Յերկիր հայկազնեայ ծնեալ՝
եւ ի տուն Արամայ սնանի.
Առիւ գայ ի Թրակիա՝
Հռոմայ տուն տարագրեալ շրջի :
Որպէս գթագաւոր տիրէր՝
քաղաքաց, թեմի, վիճակի.
Արդ երբ ըզգարիպ եւ զօտար՝
յԻստամպօլ մըղլով փախճանի :
Աշակերտքըն ցիր եւ ցան՝
սըգաւոր ի տուն դառնալի,
Երթան ու խապար տանին՝
սուրբ Օճաղն ի Էջմիածնի :
Թուղթ 'ւ ի գիր առնուն ըզգուժն՝
գրօդ խապարն դրկեն ամենի.
Խնդալն մեր անչահ եղեւ՝
կորուսաք զթագն ի մեր գլխի :
Զքուրց վերայ քըցի գդեցէք՝
կրօնաստանք ընդ անապատի.
Բարձաւ կառավարն ձեր՝
Տէր Յակոբ հայրապետն արի :
Թեմ եւ վիճակ հայկազնի՝
ո՞ւր կաթուղիկոսն ձեր բարի.
Տարագրեալ սուրբ յԱթոռոյն՝
թաղեցաւ այժմ ի Պէկօզլի :
Աղբիւրըն մեր ցամաքեցաւ՝
պապակեալ մընամք ծարաւի.
Զրկեցաք յօրհնութենէն՝
եւ եղաք ողորմ ու լալի :
Զրկեցաք սուրբ տեսլենէն՝
'ւ ի խրատուցըն սուրբ եւ բարի.

Անմխիթար կըսկըծով՝
որպէս կին մի որբ եւ այրի։
Հայրըն մեր սուրբ եւ բարի՝
ծերունին ի մէնջ պակասի·
Մատաղ որբերքս տառապեալ՝
կու շըջիմք անհայր ի յերկրի։
Ազգ արէք ի տուն Հայոց՝
յԱրարատ Արամ աշխարհի·
Ի քեզ բազմեալ հոգեւոր
Թագաւորն ի հող գնտանի։
Կաթուղիկոս մեծարեալ՝
ի յԱթոռ սուրբ Էջմիածնի,
Այսօր ի հող գրաւեցաւ՝
որ բընաւ հետքն չերեւի։
ՅԱրեւելս կանգնեալ սուրբ այրն՝
յԱրեւմուտըս ճառագայթի·
Առիւ հագիւ սլացուցին՝
գայ ի մայրն ի հող մըտանի։
Աթոռն սուրբ ունայնացաւ՝
աւա՛ղ մեր ազգիս հայկազնի·
Քահանայապետըս մեծ՝
արդ ի մէնջ անդարձ-հրաժարի։
Զո°ւարթունս որ յոտին կանգնէր՝
միշտ մաղթէրն համայն աշխարհի,
Մահուն քընով արդ թմրեալ՝
աղօթողն արդ մեզ կարօտի։
Թագիւ պճնեալ գլխապետն՝
ընդ գերեզման հողով ամփոփի·
Առիւծիս եհաս վախճան՝
աղուեսուց մնացաք խաղալի։

*Հօտապետըն քաջ հարաւ՝*
*հօտն այսօր ի տար եւ ցրուի,*
*Որ յոյս տայր եւ խափոփանք՝*
*զմեզ եթող գրթոյն ծարաւի:*
*Տէրըն մեր ի մէնջ բարձեալ՝*
*որբացեալքս սըգով կսկծի.*
*Կարօտ մնացաք եւ չիւար՝*
*աղօթից սորա փարելի:*
*Ինքն եղ հովուէս տրտմալի՝*
*բաղձանացն եհաս հրճուալի.*
*Այց արասցէ Տէրն բարի՝*
*հովուապետ շնորհել հաճելի:*
*Աղօթք նորա ժամանէ՝*
*եւ կտակն իւր հաստատելի.*
*Յաջորդն փոխանորդեսցէ՝*
*ազգս Հայոց այնուիկ սփոփեսցի:*

(*Մատ. Ս. Երուսաղէմի, Ձեռ. Թ.* 1042, *Թղ.* 73 *ա*—74 *բ*:)

Բ.

Այլ իմն եղանակ ըստ դիպման թէ յօրինես:

*Բարձաւ ի մէնջ մեծն Մովսէս՝ էվահ, էվահ,*
*եւ ոչ ունիմք փոխան զՅեսու՝ էվահ.*
*Սուրբ Եղիայն յերկինս ելեալ,*
*եւ ոչ ունիմք զԵղիսէոս:*
*Սեդեկիայն գերի վարեալ,*
*եւ ոչ ունիմք զԶօրաբաբէլ.*
*Տէր մեր յերկինս է համբարձեալ,*
*եւ ոչ ունիմք զսուրբ զառաքեալսն:*
*Վախճան էառ Լուսաւորիչն,*
*եւ ոչ ունիմք զՍուրբըն Ներսէս.*

Սահակ պարթեւն ընդ հրաբունեացն,
եւ ոչ ունիմք զմեծ Թարգմանիչսն:
Արշակունիքն սպառեցան,
եւ ոչ ունիմք զԲագրատունիսն,
Եւ Ռուբինեանքն պակասեցան,
կենցաղք Հայոց աւաղելի:
Տաթեւացին Մովսէս չուեալ,
Փիլիպպոսէն մեք վերջացեալ·
Տեառն Յակոբայ հայրապետիս
ի մէնջ այսօր արդ հրաժարեալ:
Ի հայրենեաց իւր տարագրեալ,
յօտար յաշխարհ գայ վտարեալ·
Սուրբ յԱթոռոյն իւրմէ զրկեալ,
պանդուխտ վայրի շատ դեգերեալ:
Ցաշակերտաց միջոյ զատեալ,
վարդապետաց դասուց մեկնեալ·
Ցիւր աշխարհէն ի տար վարեալ,
եւ ընդ ռամիկս հաւասարեալ:
Սիրտք մեր խոցեալ եւ մորմոքեալ,
լացցուք զվտանգս յորդ արտասուեալ:
Զմեզ եթող որբ միջաբեկեալ,
հայրազրկիկ եւ տառապեալ·
Լացէ՛ք, լալկա՛նք, զորբերս ողբով,
Թագն ի գլխոց մերոց բարձեալ:
Ո՛վ Հայաստան, հարսն զարդարեալ,
շքեղ փեսայն քո արդ մեռեալ·
Զայրիութիւնդ նիւթ ողբացեալ,
այլ ոչ դառնայ՝ անդարձ գնացեալ:
Սիո՛ն, զորդիս քո հրաւիրեա՛,
յողբս եւ ի կոծս այսօր շարժեալ,

Զի գահավլուխն ընդհանրական,
 գերկրաւ գիջեալ ըն°դ հողով ծածկեալ:
Հրաչալի բեմն արդ ողբացեալ,
 եւ սուրբ սեղանն սեւով ծածկեալ.
Տեսուչք, հռետորք եւ րաբունիք
 ժողովրդովք ի սուգ մտեալ:
Հովուապետ քո ի քէն բարձեալ,
 ոչխարազգեստ գայլք սփլացեալ.
Խարեբայից ոտք արձակեալ,
 կեղծաւորք արդ զատեան գրտեալ:
Մեզ Երեմիաս պիտոյացեալ,
 զի լայր ողբովք զազգս տառապեալ,
Զնարգեանս հասեալ չուառութիւնս,
 ի քաջ հովուաց որ եմք զրկեալ:

(Մատ. Ս. Երուսաղէմի, Ձեռ. Թ. 1042, Թղ. 74 բ—75 ա):

Գ.

Ըստ դիպման աւուրն պատմաբար կափա:

Յարքայազահում ննջեալ՝
 յԻստամպօլ մայրաքաղաքի,
Յաւագ սրբոյ տաճարին՝
 որ յանուն սուրբ Աստուածածնի:
Ուխտ եկեղեցեաց խմբին,
 կարգ օծմանց պաշտի մեծարի.
Զեղեւ պարապ ընթացից՝
 եօրեայ քո ուխտաւորի:
Ըն°տ հնգից խոցուածոց Փրկչին՝
 գնչխար քո հինգերորդ օծեալ,
Մինչեւ անարգելք յորդորեալք՝
 բազմանօք զսուրբ աջդ համբուրեալ:

'Ի ի համայն եկեղեցիս՝
պաշտօն քո հսկմամբ կատարեալ,
Զհանգուցեալդ յիշատակել՝
զպատարագըն սուրբ մատուցեալ:
Եռօրեայ դիդ մեծարեալ՝
ամենայն ազգի հռչակեալ,
Թէ Հայոց կաթուղիկոսն
յիստամպօլ այսօր վախճանեալ:
'Ի ի պատիւ քո հանգստեան՝
յերկիս տեղս գերեզման բացեալ,
Վիճեալ չառք ջատագովեալ՝
եւ դնչխար քո փառաւորեալ:
Երբ ծանուցաւ ժողովոյն՝
ըս°տ ըղձին քո որ ի Պէկօղլի,
Առօք եւ փառօք բարձին՝
ընթացիւք քեզ հետեւօղի:
Իղձ քո ըն°դ յԱրեւելս հաստէր՝
ըն°դ յարեւու խորանն ծագօղի,
Հայիլ եւ մընալ յաթոռդ՝
զքեզ պըսակօղին Քրիստոսի:
Բաղձմամբ փափաքին ժողովք՝
բառնալոյ զդագաղդ աղերսի,
Քահանայք կոխեն զմիմեանս՝
փոխ առ փոխ բարձմանդ ի յուսի:
Ծովով ցամաքով հասին՝
ի Թաղումդ ակումբ ժողովլի,
Զդին քո մեծարեալ պատուեն՝
իբր ըղոսուրբ այր ընդունելի:
Լապտերօք եւ բուրվառօք
տանէաք ի դիր հանգստի·

Եպիսկոպոսք, վարդապետք՝
գըրկարաց եղին զքեզ չիրմի:
Յիջուցանելն ի տապան՝
ի մխիլ անձինդ ի հողի,
Հողք եւ քարինք խաղացին՝
զգըլխօք մեր ընդ չիրմի քո սփռի:
Յոյնք եւ զխտմամբ սքանչացան՝
եւ լատինք ի քեզ ժողովլի,
Եպիսկոպոսն Փըրերօք՝
կարգ Թաղմանդ եւ յոյնց օրհներգլի:
Կանայք 'ւ աշխարօղք լըցան
զքո զխօքդ պար բոլորի,
Լացին զքաւչապետըդ մեծ՝
կսկծեալ զսուրբ հայրդ ծերունի:
Զմահուանդ զոր մեծարեցին,
մօմօք եւ խնկօք տօնելի,
Իբր ի մահ զմայր Միածնին՝
զկուրծս բախեն վասն քո խղճի:
Գանձիւք 'ւ ողբովք արտասուաց՝
լալական եղեն ընդ աղէտի·
Ոչ մեկնեալք յամփոփմանէ՝
արեւուդ ի մօրդ ի հողի:
Ձեռս զընէին յերկիր՝
եւ զաչերս ի քո տապանի·
Իբրեւ սրբոյ յուխտ զիմեալք՝
յուխտատեղ քո գերեզմանի:
Աշակերտք քո տխրադդեացք՝
վըրանօք կացեալք ընդ քո չիրմի·

Զցայգ եւ զցերեկ ոչ մեկնեալք՝
կատարման եօթնօրեայ կարգի:
Քառասնաւուրբք կատարեն՝
եւ զխորհուրդն սուրբ պատարագի:
Սաղմոսերգութեամբ պաշտամամբ՝
կանխելով քո գերեզմանի:
Հայցեն եւ յուսան յայտնիլ՝
ժառանգորդ սուրբ դիտապետի.
Զցաւս մեր բուժեալ սփոփեսցէ՝
կեցցէ՛ տէրն ի փառս Յիսուսի:
Երթան ու խապար տանին՝
ի յԱթոռն սուրբ Էջմիածնի.
Զխրղճերս ողբալով պատմեն՝
հռետորաց եւ վարդապետի:
Զօրհնութիւնս Տեառն Յակոբայ՝
մեր սրբոյ կաթուղիկոսի.
Առեալ արմաղան տանին՝
մեզ եւ ձեզ 'ւ ամէն աշխարհի:
Ժողովք րաբունեաց խմբին՝
նոր յօրհնումն կաթուղիկոսի.
Զիսահակ սուրբ հայրապետն՝
մեծարեն յԱթոռն սուրբ նախնի:
Մեզ գիր մխիթարանաց՝
օրհնութեամբ նորոգ ժամանի.
Ի լոյս նորա ցնծասցուք՝
Տէր Յակոբն փոխիլն չը թուի:

(Մատ. Ս. Երուսաղէմի, Ձեռ. Թ. 1042, Թղ. 75 բ—76 ա:)

Դ.

Գովասանաքար առ վախճանեալն
վանկն յաւել պակաս անգիտութեամբ չէ:

*Ի չորից բաղկացեալ, եւ եռիւք զարդարեալ,*
*՚Ի երկիւք յօրինեալ տաճար՝*
*դու զի՞րդ քակտեցար:*

*Թագդ ականակուռ՝ դու ազգիս հիւսեցար,*
*Ի գլուխ բարձրացեալ, պայծառ,*
*զի՞րդ խըլեցար:*

*Աշտարակ կանգնեալ, Սիոնի պատուար՝*
*Ապաստան ՚ւ յուսոյ տեղիք,*
*զի՞րդ քանդեցար:*

*Համասփիւռ ծաղիկ, հոտով տարածեալ,*
*Ի ձեռաց մերոց խլեցար,*
*եւ թարշամեցար:*

*Յայգւոյն Յիսուսի որթ սորեկդ ընկեալ,*
*Իմաստութեան գինի՛դ թափեալ,*
*յարմատոյ կտրեցար:*

*Ակնըդ չափիւղայ, տեսօղաց բերկրութիւն,*
*Մահուն դիպմամբ յերկի՛ր անկեալ,*
*զի՞րդ փշրեցար:*

*Պարիսպ կանոնի, եւ ցանկ օրէնի,*
*Հերքեցօղ փըշո՛ց մեր անդեաց,*
*զի՞րդ կործանեցար:*

*Վերջացեալ ժամուս՝ ճըրագ դու լուսատու,*
*Ի բքաբեր հողմո՛յն մահու,*
*զի՞րդ դու շիջար:*

Վաճառակա՛նդ գեր, նա՛ւըդ չահաբեր,
Եռալեան բախմա՛մբ մահուն,
ա՛րդ խորտակեցար:

Ի հազարս ընտրեալ, ի բիւրուց կոչեալ,
Գերագով մա՛րդդ աստուածարեալ,
արդ ի հող լուծար:

Բժիշկ ամենից, չնորհաբաշխ ձըրիչ,
Արդ անձնդ կարօ՛տ համայնից,
զի՞ խեղեալ թուլացար:

Ղեկավար ճարտար, ի տար հեռացար,
Մոլորելոց դե՛կ եւ ուղղիչդ,
զիա՞րդ բեկտեցար:

Ինքնակոչ անձանց՝ էիր սաստ եւ սանձ,
Երկիւղ գողո՛ց ՚ւ աւազակաց,
զիա՞րդ բանտեցար:

Բեկումն ապստամբաց, լախտ անզգամաց,
Գաղտառից եւ քաղցկեղից,
զիա՞րդ վախճանեցար:

Արեւ դու յԱրեւելս, յԱրեւմուտս ծագեալ,
Փոքր մի ցնծայաք լուսովդ,
զիա՞րդ խաւարեցար:

Ծառըդ չըքեղաւոր, ի գնացս ջուրց տնկեալ,
Զպտուղդ ի ժամու բաշխեալ,
զիա՞րդ ճըղատկեցար:

Նըպաստ հռետորաց, ձեռնտու դասատանց,
Ջատագով աճման իմաստութեանց,
զիա՞րդ վերջացար:

Պատմութեանց խնդրող, զթշուառքս
ափսոսող,
Այցելութեան Տեա՛ռն մաղթող,
զիա՞րդ պակասեցար:

Հովուապետորդ քա՛ջ, ի գայլոց գզողաց,
Հանդերձիւք օղեա՛ցն վանիչ,
զիա՞րդ դու մեռար:

Հոգաբարձու կրօնից, սահմանաց եւ կարգաց,
Վրէժխնդիր մարդել 'ւ ուղղել,
ա՛րդ ի մէնջ սպառեցար:

Սիրով միշտ մերձ առ մերձ, եւ հայր
խաղաղութեան,
Միշտ հակառակորդ խռովութեանց,
զիա՞րդ զընտանեցար:

Ընդ զուարթունս արթուն, եւ հսկօղ միշտ ի
յաղօթս,
Զյաւիտենից քո՛ւնն ննջեցեր,
եւ ի մէնջ հրաժարեցար:

Հայելիդ մաքուր, օրինակ հանուրց,
Դիտանոց միշտ առաքինեաց,
զիա՞րդ բեկեցար:

Տածօղ սրբութեամբ, ըղմանկունս քո յար-
բունս,
Որդեսէր հայր, սո՛ւրբ ծերունիդ,
արդ ի մէնջ մերժեցար:

Զարաճրճիկ արանց, խստասիրտ անգգամաց,
Զօրումն ի մէնջ իւլելոց խոնջեալ,
աշխատեա՛լ լռեցար:

Ծագաց ի ծագս քեզ, միշտ երկրպագուք քեզ,
Աղերսանօք խընդիր գային,
զիա՞րդ անպիտանացար:

Դու փառք եկեղեցեաց, պարծանք Հայկազանց,
Հանդիսաւոր ի գլո՛ւխ կանգնեալդ,
զիա՞րդ գլորեցար:

Սեղան բարելից, ճաշակ եւ բաժակ՝
Իւրաքանչիւր ըստ արժանեաց,
արդ զիա՞րդ դառնացար:

Ցուականին յօրինակ, ըզյարդոյն եւ զխստանք
Ընտրօղդ զբարին յըշտեմարանդ,
զիա՞րդ ի մէնջ լըքար:

Զհօգարդ ի Տէր ձըգէիր, միշտ յԱստուած յանձնէիր,
Եւ զգաստութիւն այնց խնդրէիր,
աւա՜ղ զի՞ տրոհեցար:

Դու լայիր ընդ լացօղս, խնդայիր ընդ խնդացօղս,
Անյիշաչար ՚ւ անոխակալդ,
վա՜հ զ՚ի մէնջ զատեցար:

Զանիծօղդ օրհնէիր, զհալածիչդ մաղթէիր,
Աւա՜ղ ՚ւ ափսո՜ս որբացելոցս,
որ ի մէնջ բնաւ բարձար:

Մարգարտին ըստացօղդ, բազմագանձ տանուտէրդ,
Ըզնորն եւ զհինն առ մեզ ձըրօղդ,
զիա՞րդ կողոպտեցար:

Զպատմութիւնս գրեցեր, յիշատակ մեզ թողեր,
Զգանկատդ աշխարհի՛ ծանուցեր,
աւա՜ղ զի՞ լռեցար:

Երանեալ կրօնիւք, երանեալ դու կարգօք՝
Հասարակաց մահո՛ւդ վճարմանդ,
եւ երանեցար:

Փոխանո՛րդդ, ժառանգո՛րդդ մեր Սուրբ Լուսաւորչին,
Ի գաւս լուսոյ սո՛ւրբ երամին,
այսօր դո՛ւ խառնեցար:

Յանկալի է մեզ ա՛րդ զտապանովդ ընկողմնիլ,
Զաղօթս քո կենդանի խնդրել,
պահապա՛ն մեզ տուար:

Յանկալի է մեզ ա՛րդ միշտ ի յուխտ քո դիմել,
Ի գերեզմանդ մաղթանս կանխել,
բարեխօ՛ս մեր կացար:

Յանկալի է մեզ արդ զյիշատակդ կատարել,
Զօրհնութիւնս քո միշտ ընդունել,
մեզ արձա՛ն կանգնեցար:

Յանկալի, ըղձալի՝ զքեզ օրհնել եւ խնկել,
Զմահուան օր քո մեծարել,
զի մեզ շնո՛րհ դու տուար:

Յանկալի է մեզ ա՛րդ եւ զմիմեանս սփոփել,
Քո աղօթիւքդ զյաջորդդ խնդրել,
զի նպա՛ստ դու տուար:

Ցանկալի է մեզ ա՛րդ փոխանորդդ աղերսել,
Կեցցէ՛ արքայ՝ նոր հոգեւոր տէրն,
զի պըսակ նորա տո՞ւար:

Ցանկալի է մեզ ա՛րդ ի հոգւոյ քո մաղթել,
Զմխիթար անդ մեզ պարգեւել,
բարեխօ՛ս բարերար:

Ցանկալի է մեզ ա՛րդ զգերեզմանդ համբուրել,
Զօրհնութիւնս քո տացիս համայնց,
դու մաղթեա՛ անդադար:

Ցանկալի է ժողովոյս, որք առ քեւ դեգերեալք,
Լընուլ զբաղձանս, զիրգս լըսօղաց,
աղօթո՛ղ կանգնեցար:

(Մատ. Ս. Երուսաղէմի, Ձեռ. Թ. 1042, Թղ. 76 ա—77 բ:)

## Գ.

## ԷՋՄԻԱԾՆԻ Թ. 348 ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉԻ ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆԸ

(Թղ. 604 ա—606 բ:)

*Փառք … Եւ արդ ի սոցունց դասուն հանդունակից տեսանի իսկապէս մահտեսի այրս այս Ամբակում … լուր նորա հռչակէր առ սուրբ հայրս եւ միաձունս ուխտից բնաւից որոց զընծայսն եւ զպարգեւս մատուցանէր : Նաեւ ի հայրն հանուրց եւ առ սրբազան կաթողիկոսն Փիլիպպոս, որ փայլէր յաւուրս իւր … եւ ըղձայր միշտ … երթալ ի քաղաքն աստուածահոտ ի սուրբն Սաղիմ. եւ առաքէր նախն աւուրբ նամակ ողջունի եւ օրհնութեան առ անտես սիրելին իւր յԱմբակում թէ ե՛ւ դու յօժարեցիս պատրաստեցիս ելանել յԵրուսաղէմ. զի անդէն տեսեալ զմիմեանս առցուք զփափաք տենչանաց մերոց, ի միասին կատարելով զուխտն աստուածային : Իսկ երանելիս յորժամ լուեալ զլուրն սուրբ եւ զհամբաւ սխրագոյն առեալ զտոմսն սուրբ եդեալ ի վերայ աչաց իւրոց. որով եւ ի բաց լքեաց զամենայն աշխարհական զբաղմունս, յարեաւ փութապէս եւ դիմեաց սիրասուն Երեմիա թոռամբն. եւ հանդերձ ընտանեօք ի սուրբ քաղաքն : Որ եւ ի նոյնում ամի ոչ ժամանէր հոգեւոր տէրն սուրբ անդրէն ի սուրբ ուխտն, վասն զի ի չուս ճանապարհաց ի*

հարկէ արգելեալ ի մեծ քաղաքս քրիստոնէից փառաւորեալ յամենեցունց: Եւ ապա հաստանէր ի Թուականութեանս ՌԾ եւ ի միում ամին մեծաւ հանդիսիւ եւ գերալիր փառօք կատարելով զհրաշափառ սուրբ ուխտն որ յԵրուսաղէմ. եւ անտի չուեալ գայր յարքայարանս ըՍտամբօլ, որ եւ օթեալ աստ ամ մի ողջոյն. եւ աստանօր փառաւորեալ մեծարեցաւ յամենայն ազգաց եւ ի մերային ազնէ:

Իսկ ի տեսանելն զմիմեանս զնոյն իղձ եւ զսէր ի հերուն հետէ, զոր ունէին ծրարեալ՝ աստանօր լրապէս յանկեցաւ. տխնայ եւ այնու բաղձմամբ խնդրեաց հայրն սուրբ ի Նմանէ Թէ յաղագս առ ի սէր իմ եւ առ քոյդ յիշատակի արասցես Աստուածաշունչ մատեան մի, զի լիցի անջինջ յիշատակ եւ արձան վասն քոյդ որ առ իմ ի սուրբ եւ յամէնաւրհնեալ յաթոռն: Որ եւ անդէն խոնարհեալ Ամբակումայ երկիր պագանէր սուրբ հօրն. եւ... պատասխանէր ասելով. Եղիցին կամք քո աւրհնեալ: Եւ ապա այնու սկիզբն արարեալ պատրաստէր մինչ ի քաղաքս էր հայրն հանուրց: Իսկ ի կատարել ամին՝ ել գնաց աստի մեծաւ բերկրութեամբ եւ խաղաղութեամբ ժամանելով յաթոռն իւր սուրբ անվնաս յամենայնէ: ... Եւ հասեալ ի կէտ կոչմանն յետ երից ամաց ըստ անդարձ հրամանէ արարչին, որով սլացաւ անպատում խնդութեամբ ի կաճառս զուարթնոց...: Վասն որոյ ճառեցաւ յաղագս հանգամանաց աստիս, թէեւ սկիզբն

սորա ի ժամանակս մեծին Փիլիպպոսի եղեալ· վասն զի զգ(ր)ոյն աւարտումն ի մարմնի անդ լուաւ եւ վախճան ընկալաւ: Իսկ գրաւ եւ աւարտ սորոյն Յակոբայ ընկալեալ: Իսկ այլ ի լրումն տառիս եւ ի եզրանկել սորին եւես Ամբակում եւ անտէն ի կեանս իւրում յաւէտ զուարճացաւ որպէս եւ սպասէր միշտ մեծաւ յուսով յաւարտ եւ ի կատարած սորին տեսանել: Ուստի ի տեսանելն բերկրեցաւ յաւէտ խնդութեամբ, եւ ապա կացեալ սուղ ինչ աւուրս եւ անդէն զգոհացողականն մատուցանելով հանդերձ առ Քրիստոս, որոյ յիշատակն աւրհնութեամբ եղիցի: Եւ արդ եւեռակ եւ մու ամի եղեւ սկիզբն եւ աւարտ սորին: ... Եւ մինչչեւ էր ննջեցեալ ի հանգիստն կենդանութեան ... առ մահճօքն առնէր անդարձ դամազամ բարեխառ խորհրդով· այն եւ կրկին պատուէր առ սիրալի եւ հոգեծին որդեակի իւր Երեմիայի, որպէս զի աւարտեալ զսա ամենայն իւիք եւ յիշատակարանօք ընծայեսցեն յաթոռն սուրբ եւ առ ի սուրբն Յակոբ կաթողիկոսն Հայաստանեաց:

Եւ նոյն ինքն Երեմիաս բարի ժառանգ նորին. եւ ուղղաշաւիղ շառաւիղն հանդերձ հարազատ ըստ մարմնոյ ծնողաւ իւրով Մարտիրոս իրիցաւ, եւ վարժապետաւն տէր Յովաննիսիւ քահանայիւք, որ էին գործակալ ի վերայ բարի արդեանց·առն Ամբակումայ զոր ունէր առ համայնս ըստ վերոյ յիշեցելոյն: Վասն զի այնքան էր կամք նորա առ ի սէր եւ

ի ջան յիշատակի, քանզի անկարօտ գոլով յամենայնէ բայց ի մարմնական ծննդոց, որ եւ պահէր առ իւր ի սմանէ զսիրասունն Երեմիաս զաւակ ըստ հոգոյ առնելով. ուստի եւ ի նոյն փոյթ եւս ոչ չատացեալ զնոյն եւ առնէր անդարձ. Եթէ տացէ քեզ Աստուած որդի, յանուն իմ լիցի անուն նորին. վասն զի մի ջնջեսցի անունն իմ ի միջի ձերում եւ ազգաց յազգս առ յազինս ձեր: Ուստի եւ ի լրանալ զկնի վախճանելոյ նորին, յամսեանն վեցերորդի, ետ Աստուած արու զաւակ Երեմիայի, որ եւ Ամբակում կոչեցաւ ըստ կտակի ծերունոյն Ամբակումայ, զոր եւ տէր Քրիստոս անփորձս եւ ամբողջս պահեսցէ յերկար ամօք... Բայց մայր մինչեւ ցարդ սուրբ եւ յորդաբուղխ զանձս աստուածային խցեալ եւ ծածկեալ սակս զբաղանաց վերոյասացելոցն որ կային ի մեծամեծ հոգս, մինչ զի եւ լինէր ցաւն մեծ հուրն անպատմելի յարքայարանս վաղածախ բոցով վասն ամենայն մեղաց մերոց. որ ի բարձրանալ Թվականութեանս ՌՃ. եւ Թ. երորդի: Եւ ապա ձեռամբ տեառն Մարտիրոսի քաջ բարունոյ առաքեցին առ սուրբն Յակոբ կաթողիկոսն. որ եւ նա յետ ելանելոյ յաթոռոյ պատրիարքութեան չուեալ գնաց առ սուրբ Հայրապետն առնուլ զաստիճան մեծի եպիսկոպոսութեան: Եւ հրաւիրեալ զսուրբ Հայրապետն մեծաւ փառօք տարան ի սուրբ (Երուսաղէմ ջնջուած. 10 տող դատարկ ձգուած):

Եւ արդ գրաւեալ յանկաւ... զանազան գունափորութեամբ որպէս եւ տեսանի իսկ, զի եղիցի արձան յաւիտենական եւ յիշատակ անջնջելի հոգւոյ իւրոյ: Եւ ըստ կողակցին եւ բարէ ծնօղաց իւրոց եւ համօրէն ազգականաց եւ մերձաւորաց իւրոց. հօրն Մարտիրոսին. եւ մօրն Խուպիին. պապուն տէր Յակոբին. եւ հօրեղբարցն Խաչին, Առաքելին, Թորոսին, եւ եղբօրն Աստուածատուրին. եւ Պէկլէրին. եւ քուերցն Մանուշակին, Վարդեծոցին եւ Թուրվանտին. եւ համայն գնացելոցն ի Քրիստոս: Զի ետ զսա յիշատակ... յէջմիածին ի վայելս տեառն Յակոբայ սրբազան կաթողիկոսին մեծի: ...

Արդ գրեցաւ... ի թվականութեանս հայկազան սեռի որ եւ Ի ՆՐՇԿԱՀԱԿԷ ԱՆԿԵԱԼ ԵԶԵրի[1] ի քաղաքս Կոստանդինուպօլսի. եւ ընդ հովանեաւ սրբոյ Սարգսի զօրավարի եւ որդոյ նորա Մարտիրոսի, գահավիժելոյն ի հրակիզմանէ երկրորդ անգամ. եւ կայ մայրս սուրբ հերատարած եւ ծոցարաց ընդդէմ արեգական խիղճ զիմօք յաղագս անօրէնութեանց մերոց: Այլ եւ ի հայրապետութեան Հայոց մեծաց տեառն սրբոյն Յակոբայ որ ի սուրբ էջմիածին: ...Այլ եւ ի յաջորդութեան սատուածահոտ սուրբ քաղաքին Երուսաղէմի տեառն Աստուածատրոյ. եւ տեղապահութեան տեառն Եղիազարի նորին փոխանորդի: Այլ եւ հեղինակի ծովապար արքայարանիս տեառն

[1] Իմա՛ փրկչական տարին 1660:

*Մարտիրոսի մեծահամբաւ հռետորի Ղրիմեցոյ աշակերտին Աստուածատրոյ, աստուածահաճոյ եւ առաքելաշաւիղ հայրապետի:...*

2 *բ* (Արարչագործութեան նկարին տակ). *Զստացօղ սուրբ Աստուածաշընչիս մահտեսի Ամբակումին եւ զՄարկոս պատկերահանս յիշեսջիք ի տէր:*

3 *ա*. Կիսախորանին վրայ. *Յիշատակ է ի դուռն սուրբ Էջմիածնա ի Թվականիս Հայոց ՌՃԻ:*

131 *բ*. Ա. թգ. ցանկին տակ. *Յայսմ վայրի էր Թվականն Հայոց Ի. եւ Բ. յոբելեան եւ Գ. ամ* (= 1654). *որ մոլար մտաւք գրէի:*

281 *ա*. *Ոհ ոհ զեղկելի մեղաթաւալ Ակընցի Թամուր գրիչս...:*

292 *բ*. 321 *բ*. 465 *բ*. *Յիշատակ է Աստուածաշունչս մահդասի Ամբակումին եւ ծնօղացն Մարտիրոսին. եւ Խուպիին եւ պապուն տէր Յակոբին եւ ամենայն արեան մերձաւորացն, ի դուռն սուրբ Էջմիածնայ. Թվին ՌՃԹ, ի ձեռն տէր Յակոբ ամենայն Հայոց կաթողիկոսին:*

*Նոյնն* 471 *ա եւ* 567 *բ*. *...Թվ. ՌՃԺ:*

567 *ա*. *Զծաղկօղ սուրբ Աստուածաշընչիս եւ զնկարօղ պատկերիս, զմեղօք զառածեալ Մարկոս եթէ յիշման արժան առնէք եւ դուք յիշեալ լիջիք... Կատարեալ Թվականիս ՌՃԴ:* (Տասնաւոր մը ջնջուած՝ *ՌՃԺԴ՞*):

Դ.

## ՎԵՐՋԱԲԱՆ Կ. ՊՈԼՍՈՅ ՀՐԿԻԶՈՒԹԵԱՆ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ

... (Աշխարհա)կալութիւնք տիեզերաց սքանչանային յեղակարծահաս պատժոյս կայսերազահ մայրաքաղաքիս: Եւ բազում այն էր որք հազարք հազարաց փութային ի տեսութիւն քան թէ լինել ականջալուր. եւ որք նախարարք եւ գործակալք էին արքունեաց կային ընդ արքային անդր ի Պօլին Անդրիանեայ: Քանզի Քեօփրուլին վէզիր առաքեալ էր զօրս եւ զօրագլուխս, իշխանս եւ գաւառակալս մեծաւ պատրաստութեամբ յերկիրն Մաճարաց ի պատերազմ: Եւ հայէին անդ կատարածին: Եւ ոչ ոք իշխէր թարց հրամանի նորա գալ առ այսր: Եւ առաքեն զմանկունս եւ զապասաւորս, որք եկին եւ մտին ի ճանապարհ սլանալ այսր եւ չտային հանգիստ իրերաց յոքնախմբից ի խուռն ընթացից անկեալ զպարանոցէ քաջարշաւ երիվարաց զվեցօրեայ ճանապարհ զերկու օրն հատանել եւ գալ այսր՝ եւ դառնային առ տեարս իւրեանց: Եւ բազումք էին յեկելոցն որ զկնի ամսոյ միոյ ապա գտանէին զընտանիս իւրեանց: Եւ մեծամեծք եւ նախարարք յուզէին գալ՝ բայց երկնչէին ի վէզիրէն զի ոչ կամէր մուծանել զարքայ ի քաղաքս եւ անգամ ոչ կամէր զյիշատակու-

թիւն Հրակիզմանս այսմ: Որոյ պատճառէ լուր եւ զպատգամ քաղաքիս արծարծելոյ՝ զբազումս սպան Քեօփրուլի, յորոց եւ մինն Տապաղ կոչեալ Մէմէտ փաշայ, որ յաւուրս հրոյն եւ ի բազում յանկիւնս կայր կանգնեալ մանկամբ իւրով խոնջեալ ի ջան շիջման լափալից կրակին: Եւ Քեահեա Գասըմն գրէ թուղթ առ Վալիտէ մայր Թագաւորին եւ առ Թագաւորն պատմելով զաղէտ անցիցն եւ ասէ թէ Սուլէյմանն ոչինչ հոգացեալ վասն որոյ եւ այնչափ այրեցաւ վայրք. եւ Թապաղն բազումս ջանացեալ ի չաս քունճս մանկամբք իւրովք. եւ զի միայնակ զիա՞րդ կարէր ի հուն ելանել պատժին: Եւ Թագաւորն կոչեալ զվէզիրն ասէ. Լալայ, այրեալ է Իստամպօլ. եւնա ասէ թէ ոչ: Եւ նշանագիծ արարեալ կերպագրէ զքաղաքիս հրակիզութիւն ի վերայ բարակ կտաւոյ սեւացուցեալ զմիջոցն եւ զշրջապատն ամբողջ ցուցեալ զնմանութիւն եւ Թագաւորն ասէ. Ահա՛ իրաւ է. պատասխանէ վէզիրն. Թէ իցէր՝ գրէր Սուլէյման զայմախամն, պօստանճի պաշի ծառայք քո եւ այլքն: Եւ հանէ զգիր Քեհեայ Գասըմին ցուցանելով նմա. եւ յետ ժամուց հասանէ եւ սուրհանդակք զայմախամին եւ այլոցն առ վէզիրն: Եւ ի գովելն Քեհեայ Գասըմին զԹապաղն յետ աւուրց. զոր ծանուցեալ վէզիրի պատճառաւ խմիք արքայի եւ ա՛ռ խէթէչէրիշ ի Թագաւորէ եւ առաքեալ զՇապան աղայն ի Ստամպօլ եւ սպան զԹապաղ Մէհէմէտ փաշայն: Եւ արար եասաղ մեծ յէտրէնէ, զի մի եւս յիշեցի

հրակիզութիւն քաղաքին Իստամպօլոյ: Եւ շարժեալ գրգէին վալիոէ եւ մերձակայք զթագաւորն եւ նախարարացն եւ բազում սիրելեաց, որոց յարկք եւ ապարանք այրեալ էին. եւ վէզիրն այնքան ընդդիմանայր մինչեւ պատճառ լինի գտին թէ առաւ կլայն Մաճարայ որ կոչիւր Վարատ: Եւ ի հասարակն օգոստոսի ամսոյ տօնանմայ առնել հրամայեաց ի քաղաքս. եւ բազումք ծիծաղէին ընդ անվայելուչսն. եւ կէսք վայ կարդային ընդ անօգուտ պատազումն նոցա: Եւ ի մուտն հոկտեմբերի եւ վէզիրն արքային եւ մեծամեծօքն եւ եկին ի քաղաքս: Եւ էր նեղութիւն հացի, զի ոչ բաւականանայր սակաւ փուռք ի հացագործութիւն. եւ նուազութիւն ջրոյ, զի աւերեալ էր ճանապարհ անցից ջրոց ադրերաց: Եւ զօրս ի վերոյ ասացաք բազումք յերկիւղէ զանցելովք վշտին վիրաւորեալք մեռանէին եւ վասն հրաժալի լինելոյ տանց եւ ապարանաց զտնանկութիւն իւրեանց հեղձամուղձ լեալ ցաւոտեալ հեծեծանօք զհոգիսն արձակէին: Եւ բազմաց աւերման առիթ դոաւ հուրս որ մինչեւ ի դատաստան ծախէ եւ անծախ պահէ իբրեւ զարբեալս. եւ կարծեմ հեռի է մխիթարութիւն եւ չիք բժշկութիւն եւ այեղանիս:

Քանզի եւ մեք եւս կայաք ընդ այլ քրիստոնեայս ի սահմանս Սուլումանաթբ կոչեցելոյ ընդ հովանեաւ սրբոյն Գէորգեայ եկեղեցւոյն. եւ յետինս խռովութիւն առաւել սաստկանայր եւ անխաղաղ էր ժամանակս:

*Քանզի արին Մարտիրոս ԺԹ ամիս եկաց ի պատրիարքութեան ըստ հաճոյից ամենայն քաղաքացւոցն առնէր զեկեղեցիսն ազատ, զժողովուրդս խաղաղ, զժառանգաւորս անձնապաստան եւ անտրտունջ պահէր: Եւ ել սատան ոմն Ղազար որդի Սեբաստացոյ աննշանի ծնեալ ի քաղաքս. եւ երթայ յաթոռն սուրբ Էջմիածնի յընթերցումն գրոց: Եւ ըստ բնական բարուց փութայ ի բանսարկութիւն եղբարց. եւ ըստ հասակի աճմանն եւ նա՛ յաւելու ի քմսութիւն եւ առեալ զկարգ խորամանկութեամբ ցանկայ ձեռնիրիցութեան գալ ի քաղաքս. եւ պատճառաւ խիք յետ վախճանի սրբոյն Փիլիպպոսի ելեալ անտի պայմանաւ եթէ դառնայցէ անդրէն յաթոռն սուրբ: Եւ իբրեւ եկն այսր՝ ժայթքէր զխմոր չարութեան գաղտնի եւ յայտնի չարախօսեալ զնոցանէ՝ յորդորելով եւ զպարզամիտս ի հակառակութիւն տանն Աստուծոյ Էջմիածնի եւ աթոռակալաց նորա: Որ եւ տէր Յակոբ կաթողիկոսն ընդ բանիւ իւրով կալաւ զնա. եւ սա՛ անզղջաբար եւս առաւել յանդգնաբար երթեալ ի Սիս առնէ եպիսկոպոսութիւն ի կաթողիկոսէն Խաչատրոյ ի վերայ Տիվրիկոյ. եւ ամիս եւս ո՛չ ժուժեալ անդէն գայ ի քաղաքս: Եւ ի լինել Մարտիրոսին պատրիարք՝ նենգէր Ղազարն եւ սատան լինէր օր ըստ օրէ: Եւ եգիտ զոմանս ամբարտաւան աչօք եւ ագահ սրտիւ զերիցունս նորաբոյս ոմանս եկեղեցւոյն սուրբ Նիկողեայ եւ զուին արբանեակ զՏիվրիկցիս ոմանս փասքուսս եւ պատառարուծս. մուֆ-*

լիս, հրվան, ըրըղ, մանուկ Թուրքմէն՝ Յո-
վանէս. եւ նոքօք այնչափ զեղերեցին ի դրունս
այլազգեաց կաչառուք՝ մինչեւ հանին զա-
րին Մարտիրոս ի պատրկութենէ: Եւ նեն-
գաւորն Ղազար բռնի էառ զպատրկութիւն եւ
անհաւատ հոմանեօք կեղեքէին զժողովուրդս
եւ զքահանայս զարիւն եւ զչարաւ անմեղաց
ծծելով ոչ միայն քաղաքիս այլեւ զաղքատ
գիւղիցն. բռնադրէր զպարզամիտս թէ բերէք
զհարկս, զի արարից զձեզ իրիցունս եւ սար-
կաւագունս: Նուիրակն ուրոյն շրջէր եւ
զզուեցուցանէր. նուիրակ կերակրի եւ ճաշա-
րանի ուրոյն. նուիրակ վասն ոչ գալոյ նոցա
երկրպագութեան պատրկին. նուիրակին ու-
րոյն ընծայս եւ խղմէթ: Եւ ինքն եւս շրջէր
զնոքօք եւ նստէր յարկս յաղքատաց բռնի.
պահանջէր իւրն ազերս ուրոյն: Եւ ի քաղաքս
զորս միանգամ յանկիւնս աղբեաց վարժեալք
էին խնդրեալ եզխտ եւ ետ կարգս ի կարգէ
իւրմէ ընլով զեկեղեցիսն: Անիրաւէր առ
տեարս վիճակաց մատնելով զնոսա բռնակա-
լաց. խրոխտայր եւ սպառնալեօք յափշտակէր
զապրանս ի ձեռաց նոցա: Ոյք ասէին՝ զլեզուս
մեր մեծս արասցուք՝ շրթունք մեր առ մեզ են
եւ արդ մեր ո՞վ է տէր: Զի անէծք եւ դառ-
նութիւն եւ նենգութիւն լի էր ի բերանս նոցա
եւ ի ներքոյ լեզուի նոցա ցաւք եւ վաստակք.
եւ որոգայթ իւրեանց խոնարհեցուցանել զաղ-
քատս վարանէին: Եւ վիարուորքն ի նոցանէ
այսոքիք. Կիրակոս Պեղինկոյ, Նորտունկ Սե-
բաստիոյ, Մինաս Գաղատիոյ, Դաւիթ Բե-

բիոյ, Թութունճի Վանայ, Ոհան Սըսայ, Աս-տուածատուր Կընպօչ, Սարգիս Թէքիրտա-ղոյ, Իգնատիոս Վանայ վարդապետք եւ եպիսկոպոսունք. Մարկոս Կեսարիոյ, միւս Մարկոս Արմաշոյ, Յոհանն Բիւզանդիոյ, Ոհան Անդրիանոյ, Պետրոս Սըսոյ, Ներսէս Ուրֆայոյ, միւս Յոհանն, Յովանէս Ականն, եւ բազումք զորոց վիճակս փոփոխեցին եւ զոմանց թէ ընդէ՞ր մտեր ի քաղաքս որ ընդ-իշխանութեամբ իմով է: Եւ աղքատ եւ տնանկ եւ փորձանաւոր ոք ժողովարաց որք դիմէին առ քաղաքացիս՝ զտրոցն կէս նոքա յափշտա-կէին: Կաշառօք զաւաք իրեցունս փոփոխե-ցին. եւ զպատարագն զապալով ետուն իրի-ցանց. ոչ թողին զչհասս եւ զմեղօք ազգակա-նութենէ կնքահարութեան կողմանէ ի բա-զում ամաց՝ զորս ըստ հաճոյից կաշառուն հրամայեցին անխնայաբար. եւ բազում չա-րութեան պատճառս գտան: Եւ որք բարե-պաշտօնք՝ վասն ձանձրանալոյ ի բազում խռո-վութեանց եւ առ սակի պէսպէս փորձու-թեանց ոչ կամէին խօսել եւ հոգալ: Եւ ըստ Երից մանկանցն ասից. Ոչ էր ի ժամանակիս իշխան մարգարէ եւ առաջնորդ. եւ ժամ էր իշխանութիւն խաւարասիրացն. եւ կարծեօք եւ հաւաստի ասել կամիմ զի աճումն վատ-թարութեան սոցա բեղնաւորեալ՝ կործա-նումն բոլոր ազգիս երեւեցուցանէ. զոր թող-ցուք առ վրէժխնդիրն Աստուած եւ ասաս-ցուք. Բարձր լեր որ դատիս զերկիր. հա-տուսցես զհատուցումն ամբարտաւանի. զի

*որ տնկեցեր զունկն միթէ դու ո՞չ լուիցես, կամ որ ստեղծեր զակն՝ միթէ ո՞չ տեսանիցես։ Եւ փառս տացուք երկայնամիտ ներողութեան նորա. եւ խնդրեսցուք մի ցրել զուխտս իւր եւ մի՛ մերժել զմեզ յողորմութենէ իւրմէ։*

*Եւ յաւարտ անկեալ բանիցս Հրակիզման Կոստանդնուպօլսոյ՝ եղրանկեալ աւարտեսցուք. եւ ասասցուք թէ այս ամենայն եկն ի վերայ մեր ըստ մեղաց իմոց անօրէնութեանց*։ ... (Շարունակութիւնը տե՛ս էջ 82)։

Ձեռագիր Երուսաղէմի Ս. Յակոբեանց Մատենադարանի, Թ. 892։

## Ե.

## ՆԿԱՐԱԳՐՈՒԹԻՒՆ ԵՐՈՒՍԱՂԷՄԻ Ս. ՅԱԿՈԲԵԱՆՑ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆԻ Թ. 33 ՁԵՌԱԳՐԻՆ, ԳՐՈՒԱԾ ԵՐԵՄԻԱ ՉԷԼԷՊԻ ՔԷՕՄԻՒՐՃԵԱՆԻ ՁԵՌՔՈՎ[1]

ԹՈՒՂԹՔ՝ 583: ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 34 × 24,6 × 9,5 սմ.: ԳՐՈՒԹԻՒՆ՝ երկսիւն 27,3 × 8 սմ.: ՏՈՂՔ՝ 36—38: ԳԻՐ՝ նոտր. գլխագիրները կարմիր երկաթագիր: ՆԻՒԹ՝ թուղթ: ԿԱԶՄ՝ փայտեայ կաշեպատ: ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ լաւ. տեղ տեղ թուղթեր բաժնուած կազմէն: ԴԱՏԱՐԿ՝ առաջին եւ վերջին թղթերը: ՆԿԱՐ՝ թղ. 2բ. վերը՝ Դաւիթ արքայական զգեստաւորմամբ նստած պալատի մ'առջեւ. ձախ ձեռքը կիթառ, զոր կ'ածէ աջով. վարը՝ երիտասարդ աբեղայ մը — հաւանօրէն Երեմիայի որդին Գրիգորիս վարդապետ — վեղարով ու սեւ փիլոնով, ծնրադիր, երկու ձեռքով բռնած խոշոր գիրք մը, որուն առաջին տողին վրայ կը կարդացուի «Երանեալ է այր»: ԽՈՐԱՆ՝ միայն թղ. 3ա, գրուած է էջին երկու երրորդը: Վարը կը սկսի գրութիւնը՝ տող մը խոշոր թռչնագիր, տող մը երկաթագիր, տող մը բոլորգիր: ԿԻՍԱԽՈՐԱՆՔ՝ երկու հատ, կանոններու սկիզբը: ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴԵՐ՝ բաւական թուով, կարմիր եւ կապոյտ ներկով: ԳՐԻՉ՝ Երեմիա Չէլէպի Քէօմիւրճեան: ԺԱՄԱՆԱԿ՝ ՌՃԽ (1691): ՏԵՂԻ՝ հաւանօրէն Կ. Պոլիս: ՏԷՐ՝ Կ. Պոլսեցի Սողանեէմէզեան Աբրահամ վարդապետ: ՎԵՐՋԻՆ ՍՏԱՑՈՂ՝ խաչատուրի որդի Պայաթճի Յակոբ՝ Կամախի Բագառին գիւղէն: ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ՝ չունի:

*Մատեանս է՝* Ներսիսի Լամբրոնացւոյ *Մեկնութիւն Սաղմոսացն Դաւթի:*

---

[1] *Տրամադրած է ինձ Արհիապ. Մեսրոպ եպիսկոպոս Նշանեան:*

Յիշատակագրութիւն ստացողի. Թղ. 582բ. *Ի վայելումն Աբրահամ վարդապետի, որ է Կոստանդնուպօլսոյ, Սօղան-յէքմէզի Թոռ եւ մահտեսի Ասլանի որդի: Արդ գրեցաւ Թվին ՌՃԺ ամին ձեռամբ Քոմուրճիզատէ Երեմիեա չէլէպուն, որ այժմ հանգուցեալ է. Աստուած ողորմի իւր հոգւոյն ամէն:*

Յիշատակագրութիւն վերջին ստացողին. *Թղ. 2ա. Ի Թվականիս Հայոց հազար հարիւր եօթանասուն եւ հինգ, ամսեանն յունիսի ԺԹ. ես յետնեալ ծառայս Կամախըցի, Փազարիճ գիւղէ, Խաչատուրի որդի Պայաթճի Յակոբս եկի այսմը Թվականիս ի սուրբ աթոռն Սիոն գի սուրբ մեռօն օրհնեցին այն օր եւ առաւօտուն ըստամպօլցի Աբրահամ վարդապետն առ Աստուած փոխեցաւ. եւ զոր ինչ ունէր զամենայնն Ղօզան օղլու անիծեալ Մուրթազայ աղան զաբթ արար մինչ ի հողաթափըն. եւ գի էր նայ պեղամալճի եւ մի ըստ միոչէ վաճառեաց զամենայն. եւ ես անպիտանս վերոգրեալ Յակոբս ըստացայ զայս գիրքս սէր սուրբ արդեանց իմոց եւ եառու յիշատակ սուրբ Յակոբայ եւ սուրբ Յարութեան տաճարին Քրիստոսի. եւ ով ոք պատահի սմայ կալդալով* (sic) *յիշեսջիք զծնողք մեր՝ զպապս Շատարեւն եւ զհայրն իմ Խաչատուրն, իմ որդի Աբրահամն եւ մօրն իմոյ Շափաչաւին եւ ամենայն ննջեցեալք իմ յիշեսջիք մէկ հայր մեղայիւ եւ դուք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ Աստուծոյ մերմէ. ամէն:*

---

Զ.

ԵՐՈՒՍԱՂԷՄԻ Թ. 605 Բ.

*Ձեռագրիս առաջին մասը կը պարունակէ տոմարական գիտելիքներ եւ աղիւսակներ։ Բ. մասին մէջ կը գտնուին Երեմիայի երեք տաղաչափեալ գրութիւնները.*

1· Յաղագս Դերաքրիստոսին... *անխորագիր (տե՛ս վերը, էջ 120—121)։*

2· Վասն վերստին խայտառակութեան Հրէից *անխորագիր (տե՛ս էջ 123)։*

3· Վասն Էքմէքճի առնաուտ Տիմոյի (*տե՛ս էջ 123*)։ *Գրութեանս վերջաւորութիւնն է.*

*Երանի սէֆայ թէ օկտիկ ինչ բան.*
*Բոտեալ ինչ յախորժ ի խրախճանութեան.*
*Եմ միշտ ի մաղթանս յիշել զիս տարտամ,*
*Մաղթանաց ըղձի սակի գրելս այսքան.*
*Ի շնորհսն Յիսուսի լինել աւրհնաբան,*
*Արժանաւորիլ իւրոյ տեսութեան,*
*Յարքայականին փառաց իւր յագման,*
*Ի կեանսն անզրաւ ընդ ձեօք միաբան։*

*Տողերու սկզբնատառերը կը կազմեն ԵՐԵՄԻԱՅԻ։*

*Ձեռագրին ստացողի Յիշատակարանն է.*

*«Արդ ըստացաւ զսա Գրիգոր վարդապետն, ի յերկրէն Տիգրանակերտու, յԱմիթ*

կոչեցելոյ, զոր ինքնայօժար կամօք եւ փափագանօք դիմեաց յաստուածակոխ քաղաքս սուրբ յԵրուսաղէմ առ ի ծառայութիւն առեալ աթոռոյս սրբոյն Յակոբայ եղբօր Տեառն եւ Դամբարանի սրբոյն Յակոբայ գլխադրի որդւոյն Զեբեդեա: Որոյ ողորմութեամբ մարդասիրող Բանին մեր էառ սատ զկարգ քահանայութեան հրամանաւ եւ կամակցութեամբ վերադիտողի սուրբ Աթոռոյս եւ առաջնորդի սուրբ քաղաքիս Պաղեստինոյ տեառն Եղիազար կաթողիկոսի ի թուականիս մերոյ ՌՃԻ (1671). եւ եդ զվերոգրեալ Գրիգոր աբեղայս սպասաւոր եւ աւելածոյ երկնահանգէտ տաճարիս սրբոյ Յակոբա եւ ի ծառայութիւն սրբոց տնօրինականացն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի»:

Ձեռագրին գրչութիւնն ալ ըլլալու է այս շրջանէն, արտագրուած Երուսաղէմ:

---

## Է.

## ՆԿԱՐԱԳՐՈՒԹԻՒՆ ԵՐՈՒՍԱՂԷՄԻ Ս. ՅԱԿՈԲԵԱՆՑ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆԻ Թ. 892 ՁԵՌԱԳՐԻՆ

ԹՈՒՂԻՔ՝ 274: ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 20,8 × 15,7 × 4,8 սմ.: ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասիւն: ԳԻՐ՝ նոտր: ՆԻՒԹ՝ 8—11 չորս թէրթ մագաղաթ, մնացածները թուղթ: ԿԱԶՄ՝ փայտեայ կաշեպատ: ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ բովանդակն լաւ: ՆԿԱՐՆԵՐ՝ 101 բ Դաւիթ տաւիղ ի ձեռին. 173 ա, 193 ա, 218 ա—բ, 226 ա, 244 ա, 246 ա—բ, 263 ա՝ հրդեհին զանազան տեսարանները: ԽՈՐԱՆ ԵՒ ԿԻՍԱԽՈՐԱՆՆԵՐ՝ ունի սակաւ: ԴԱՏԱՐԿ՝ թղ. 1—4, 10 ա, 165 բ, 167—172 ա, 257, 270 բ, 274 բ: ԳՐԻՉ՝ Ա. մասին՝ Յովհ. երէց Երկան: Բ. մասին գիրը կը նմանի հեղինակին եղբօր Տէր Կոմիտասի գրին:

*Մատեանս կը պարունակէ.*

ա. 5*ա*—165*ա*. *Յակոբ Թոխաթեցւոյ Սաղմոսարան տաղաչափեալ*:

բ. 172*բ*—270*ա*. Պատմութիւն հրակիզութեան Կ. Պոլսոյ *Երեմիա Չէլէպի Քէօմիւրճեանի*:

գ. 166*ա*—*բ*. *Յաղագս գիտութեան երկնից բարձրութեան եւ հօթն պարունակացն մինչեւ ի խորանն անմատոյց քանի՞ ասպարէզ է. ասացեալ Արիստոտէլի եւ Նիկոմաքայ իմաստասիրի*:

Յիշատակարանք՝ Ա. մասին. 1. *Յերեսս անկեալ աղաչեմ զհանդիպօղքդ զի մի ողորմիիւ յիշել զանարժան գծողս զՅովանէս սու–*

սանուն երէցս եւ Տէրն մեր Յիսուս Քրիստոս
ողորմեսցի յիւր միւսանգամ գալստեանն ձեզ
եւ ծնօղաց ձերոց. ամէն. Հայր մեր որ»:

2. Թղ. 96 բ. Եւ զեղկելի գծողս աղաչեմ
յիշել ի Տէր եւ դուք յիշեալ լիջիք. ամէն: —
Մինաս Ամթեցւոյ գրչէն. Գրեցաւ ի Թվին
Հայոց ՌՃԻԴ (1675) ի քաղաքն Ըստամպօլ ի·
վայելումն տէր Մինաս վարդապետին, որ
հրամանաւ տեառն Եղիազարու կաթողիկոսի
սուրբ Երուսաղէմի եկն ի քաղաքս վասն ուխ-
տաւոր տանելոյ յԵրուսաղէմ եւ ետ ինձ Եր-
կան Տէր Ովանիսիս գրել զոտանաւոր Սաղ-
մոսարանս զայս ի գրօսանս անձին իւրոյ եւ
յետնամնացից վայելողացն ըզլուսափթիթ
զգիրս զայս աստուածահայր մարգարէին
Դաւթի:

3. Թղ. 132 ա. Եւ զեղկելի հողս զմեղա-
ւոր գըծողս աղաչեմ յիշել...: Մինաս Ամ-
թեցւոյ ձեռքէն. Գրեցաւ թվին ՌՃԻԴին ձե-
ռամբ Երկան Ովաննէս երիցին ի քաղաքն Ըս-
տամպօլ ի դուռն սուրբ Աստուածածնին, որ եւ
Ղումղափի վերաձայնի եւ ըստ Հայոց Դուռն
աւազի կոչի:

Յիշատակագրութիւնք՝ 132 ա. Յիշեցէք
զՄարկոս ըզվարդապետն, որ է ուսուցիչ եւ
ձեռնադրօղ եւ խրատօղ ըստացողի գրոցս Մի-
նաս վարդապետի. կից կնիքն՝ ՄԻՆԱՍ ՎԱՐ-
ԴԱՊԵՏ:

Թղ. 165 ա. Շնորհիւ Աստուծոյ ես տէր
Մինաս վարդապետս Յամթեցի շնորհեցի զո-
տանաւոր Սաղմոսարանս եւ զկոստանդնու-

*պօլսոյ զհըրճիզութեան գիրքս, որ ի մի տուփ գրեալ կայ, խմում հարագատի նորընծայ քահանայի Պետրոսի ի վայելումն անձին իւրոյ եւ գեռահասակ որդւոյ իւրոյ Աստուածատուր Ջահրնկալի, որ ընդ նմին կայր ի սուրբ քաղաքս յԵրուսաղէմ ուխտ սուրբ Գեթսեմանին Քրիստոսի Աստուծոյ մերոյ, զոր Աստուած բարով վայելել տացէ նոցին. ամէն:*

*Գրեցաւ* ՌՃԾԱ (1702) *թվին ապրիլի Ժ. ձեռամբ խմով եւ կնքեցի զսա մատանեաւ խմով վասն հաստատութեան բանիցս վերագրելոց խմոց:* Կնիք՝ ՄԻՆԱՍ ՎԱՐԴԱՊԵՏ:

## Ը.

## ԱՊՐՈՅԵԱՆՑ ԱԶԳԱԲԱՆՈՒԹԻՒՆԸ

## 1500—1804

Ապրոյեանց տոհմին սկզբնաւորութեան պատմիչն եղած է Երեմիա Չէլէպի, որ իբրեւ դաստիարակ Աբրահամ Չըլէպիի որդիներուն մօտ գտած ըլլալով Ապրոյեանց տունը, գրի առած է ինչ որ պատմուած է հոն աւանդաբար տոհմին հին անդամներու մասին: Տոհմիս պատմութեան նուիրուած է յանուանէ Վիպասանութիւնն յԱպրօ Չէլէպի. բայց Երեմիա Ապրոյեանց մասին յաճախ խօսք ըրած է նաեւ իր միւս գրուածքներու մէջ: Այս գրուածքները չունիմ դժբախտաբար այժմ առձեռն, որպէս զի կարենայի վերստուգել այն տեղեկութիւնները, զորոնք ունիմ ուրիշ ճանապարհով տրամադրութեանս տակ:

Ապրոյեանց ազգաբանութեամբ զբաղած է նաեւ Զմիւռնիոյ առաջնորդը Մեսրոպ արքեպիսկոպոս 1804ին. սա օգտուելով գրաւոր եւ անգիր աւանդութիւններէ կազմած է Ապրոյեանց ազգաբանական ծառը, հասցնելով մինչեւ յիշեալ տարին եւ իբրեւ վկայական յանձնած է Ապրոյեան երեք եղբայրներու, վաւերականութիւնը կանխաւ հաստատել տալով ժամանակակից իրաց ծանօթ անձնաւո-

րութիւններու։ Այս վկայականէն օրինակ մը պահուած է Վիեննայի Մխիթարեան Մատենադարանին Թ. 779, ձեռագրին մէջ, թղ. 70 ա—72 բ. հաւանօրէն արտագրութիւն մը *Հայաստան* թերթին մէջ 1846ին[1] հրատարակուած բնագրէն։

Մեսրոպ արքեպիսկոպոսի այս վկայականը կարելի է վստահելի համարել, որովհետեւ յեցած է մասամբ Երեմիայի գրուածքներու եւ Ապրոյեանց դիւանին մէջ պահուած վաւերագիրներու եւ մասամբ ալ տոհմին կենդանի աւանդութիւններուն վրայ։ Ստորեւ հատուած հատուած յառաջ պիտի բերեմ վկայականին խօսքերը, դուրս ձգելով միայն նախաբանն եւ վերջաբանը, եւ իւրաքանչիւր հատուածին կից մատնացոյց պիտի ընեմ այն տեղիքները, որոնք կը ճշդեն, կ՚ուղղեն եւ կը հաստատեն վկայականին տեղեկութիւնները[2]։

1. «Յայտ առնեմք զի նախնիքն այսր տոհմի յետ փախստեան յերեսաց աւերածոյ Անի քաղաքին՝ անընդհատ շարունակութեամբ իջեալ ի սերունդս որդւոց՝ դան ժամանեն մինչեւ ի նախահաւն սոցա ԱՍՏՈՒԱԾԱՏՈՒՐ, այր ճոխ եւ փառաւոր, որ նոյնպէս զհայրենին

---

[1] *Հայաստան*, Կ. Պոլիս, Ա. տարի, 1846, Թ. 14։ Մասամբ լոյս տեսած նաեւ Ս. Գարամաճեանի Տարեցոյցին մէջ, 1923, էջ 94. հմմտ. առ այս Հ. Հ. Ոսկեան, Ապրոյ Չէլէպիի տոհմածառը, *Հանդ. Ամս.* 1926, էջ 415—416։

[2] Ապրոյեանց ազգաբանութեան վրայ խօսած են նաեւ Ա. Ալպօյաճեան, *Բիւզանդիոն*, 1909, Թ. 3891 եւ Յ. Քիւրտեան, *Բազմավէպ*, 1925, էջ 258—261. 1926, էջ 37—42։

*գնալով ճանապարհ՝ բաստադեղուն ստացուածովք պերճացեալ՝ ոչ սակաւ նպաստամատոյց ամենեցուն լինէր։ Սոյն սա ծնանի ի Կարին գերկուս որդիս, զորս վարժեալ ի հայրենի կրթութիւնս՝ զմահտեսի* Ալփիարն *ասեմ եւ* զԱսլան, *ալեւորեալ լի աւուրբք կնքէ զկեանս իւր»։*

= *Այս տեղեկութիւնները քաղուած են Աւետարանին Յիշատակարանէն։ Ամէն բան Անիէն սերեցնելը հին ըմբռնում մըն էր, որ նաեւ հոս չահագործուած է։ Բայց Ապրոյեանց համար եւ այն փառք է, որ Բարձր Հայքն եղած է իրենց տոհմին խանձարուրքը։*

2. «*Յետ սորա յաջորդէ ի տանուտէրութիւն անդրանիկն իւր մահտեսի* Ալփիար. *եւ այն ինչ զուն գործէ ի բարիոք անօրէնութիւն կառավարութեան, յառնէ խռովութիւն ի մէջ երկուց ազգաց Օսմանցւոց եւ Պարսից, որ ձգի ցմիջոցս իբր ամաց յիսնից. ի թագաւորել ի վերայ Հագարու սուլտան Սիւլէյմանայ, եւ ի վերայ Պարսիցն շահ Դահմասայ առաջնոյ յամի Տեառն* 1521։ *Վասն որոյ թողեալ մահտեսի Ալփիար զկողմանս զայնոսիկ՝ առնու զեղբայրն իւր զԱսլան եւ զամենայն ընտանիս իւր եւ զնորա՝ հանդերձ ծառայիւք եւ աղախնօք, աճապարէ ի կողմանս արեւմտից, զտեղի բնակութեան առեալ ի սահմանս Մաճառայ ի Պէլլրդատ, ուր ականի զվաճառականութիւն, եւ համբաւ բազում ստանայ յայնոսիկ կողմանս։ Ծնանին սմա երկու ուստերք՝* Մուրատխան *եւ* Յովհաննէս. *եւ երկու եւս դըս-*

տերք՝ Կիւլզատէ եւ Մարիամ: Եւ եղբօր սարա եւս լինին երկու որդիք՝ Աստուածատուր եւ Եաղուպ. որք սերեալ ցերկրորդ ծնունդս՝ յուէն. Նմանապէս եւ դուստր մահտեսի Ալփիարայ ժամանեալ յերկրորդ ծնունդս՝ դադարէ: Իսկ ինքն մահտեսի Ալփիար հանգուցեալ ի Քրիստոս՝ թաղի ի Պէլրդատ»:

= Ալփիարի գաղթը դէպի արեւմուտք տեղի ունեցած է ըստ Երեմիա Չէլէպիի՝ Սուլթան Սուլէյման Ա.ի (1520—1566) օրով, երբ սկիզբ առած են Օսմանեանց եւ Պարսից մէջ թշնամութիւնները (1533 Հոկտեմբեր), որոնք տեւեցին մինչեւ 1554 եւ միւսանգամ սկսան 1577—1590: Հաւանօրէն Ալփիար եւ իւր եղբայրն Ասլան «Հանդերձ ընտանեօք եւ ազգականօք» Կարնէն հեռացան 1550ին. իրենց բնակավայր ընտրեցին ի Պէլիգրատ (Բելգրատ), ուր կը պարապէին վաճառականութեամբ: Ասլանի ժառանգները չեն յիշուիր: «Ասլան՝ մի ի նախահարց ծանօթ եւ ճոխ տոհմի այժմու Ասպրյեանց՝ առաքէր անդր (ի Վենետիկ, 1624) զՅակոբ ընտանի իւր, եւ ի վաճառ՝ պղպեղ բարձեալ յԱնկոնայ»[3]:

3. «Զկնի այսր պայազատէ զտանուտէրութիւն անդրանիկն իւր (Ալփիարի) մահտեսի ՄՈՒՐԱՏԽԱՆ. եւ առաւել ընդարձակի ի բարօրութիւն ընչաւէտութեան. որ եւ յետ բազմաց բարեպաշտութեանց ի ծերութեան իւրում գնացեալ յուխտ ի սուրբ Երուսաղէմ

---

³ Հ. Ղ. Ալիշան, Սիսական, էջ 449:

յամի տեառն 1634, յամս ծառայարկլին· եւ դարձեալ ի Փիլիպպուպօլիս, կնքէ անդ զկեանս իւր: Լինին սմա որդիք երկու՝ Աբրահամ, որ եւ Ապրօ, եւ Պետրոս, եւ երեք դըստերք, Աննա, Թագուհի եւ Մարիամ· յորոց միայն Աբրահամ յարուցանէ ժառանգ, զի այլք ի ծաղկահասակ տիս փոխին յաստեացս»:

= Երեմիայի համաձայն Մուրատեան ամուսնացած էր «բազմահամեստ» Եահրիտանի հետ: Պետրոս, զոր Երեմիա «ծիրանածին» կը յորջորջէ, իւր երէց եղբօր՝ Աբրահամի հետ վաճառականութեան համար կ'երթայ Կրետէ, օսմանեան բանակը, եւ հոն կը վախճանի իբր 1659ին: Երեմիայի մէկ թուղթը, առանց թուականի, ուղղուած է «Պետրոս չէլէպիի»· տե՛ս վերը՝ էջ 158:

4. «ԱԲՐԱՀԱՄ այր լայնախորհուրդ ժամանեալ յաստիճան տանուտիրական, քան զիւր նախնիսն առաւել եւս հետամուտ լինի բարի համբաւոյ· եւ ըստ նախնականն կրթութեան եւ մտացն առատութեան եւ եւս բարգաւաճի օր ըստ օրէ, սիրելի լեալ յաչս ամենեցուն, եւ մանաւանդ [Տէլի] Հիւսէին հոչակաւոր փաշային, որ զօրագլուխ էր զօրացն պատերազմականաց ընդ Կրետացիս· եւս եւ յաչս Քէօփրիւլի օղլու [Ահմէտ] մեծահամբաւ եպարքոսին եւ ամենայն աւագանւոյն դրան արքունի· զորոյ եւ զանուն իսկ փոխեալ Քէօփրիւլի օղլուն՝ հրամայէ Ապրօ՛ ձայնել յետ այնորիկ, որ կոչումն կայ մնայ ցայսօր ժամանակի յազգս նորա:

«Սա յորժամ ի Կրետէս էր ընդ բանակին Օսմանցւոց՝ արքունի վաճառական գոլով [Տէլի] Հիւսէին փաշային, յառնուլն նոցա զկղզին [1670] ճարտարաբան վիճաբանութեամբ առնու զեկեղեցի մի վասն Հայոց, զոր վասն զի ի ռմբացն թնդանօթից քայքայեալ էր, իւրովք իսկ ընչիւքն նորոգէ, պատրաստեալ եւ զամենայն զարդս նորա:

«Եւ վասն զի բազում նպաստաւորութիւն արարեալ էր բանակին եւ հաւատարմութիւն յիւրս արքունի ըստ ամենայնի, զզօրաւոր խաթթիշէրիֆ մի շնորհէ նմա սուլթան Իպրահիմն [1639—1648] որպէս զի յամենայնի ազատ լիցի եւ համարձակ՝ եւս եւ ի մաքսիցն անգամ յամենայն տեղիս իշխանութեան իւրոյ:

«Շինէ սա եւ զեկեղեցին սրբոյն Նիկողայոսի ի Կոստանդնուպօլիս ընչիւք իւրովք [1660] եւ զմի եւս ի Սիլիվրի [1675], եւ զմի եւս ի Մահալըճ. եւ ի գալ զերեացն Կամենիցայու ի Փիլիպպուպօլիս՝ շինէ անդ եւ զեկեղեցի մի [1676], ուր ամփոփեալ կայ մարմին հօր իւրոյ մահտեսի Մուրատխանի:

«Ծնանին սմա երեք որդիք [Սարգիս որ եւ] Մագսուտ, Մատթէոս. եւ Մուրատխան. եւ դուստր մի Սառայ. յորոց Մատթէոսն սերէ ի ծնունդս մինչեւ ցայսօր:

«Այլ նա ինքն Աբրահամ որ եւ Ապրօ, իբրեւ տեսանէ թէ չկայ անդորրութիւն ի կողմանս Պէլրգատու, առնու զիւրսն ամենայն եւ չուէ գայ ի Կոստանդնուպօլիս յամի Տեառն 1661. եւ յետ բազում ազգաշահ գործոց՝ լնու

*գընթացս կենաց իւրոց յԱնդրիանուպօլիս, ուր լինէր յայնժամ ընդ արքունեացն օսմանեան»:*

= *Աբրահամ (Ապրօ) Չէլէպի, որուն անունը յաւերժացաւ Ապրոյեան տոհմին մէջ, ամուսնացած էր «քրիստոսազգեաց եւ յոքնազգաստ» Կիւլիհանի հետ: Այս ամուսնութենէն սերեցան՝* Սարգիս, *կոչուած նաեւ* Մագսուտ (*ծն.* 1644*ին*), Մատթէոս-Մաթուսաղա (*ծն.* 1654*ին*), Մուրատխան *եւ* Սառա (*ծն.* 1656*ին*): *Մուրատխան վաղամեռիկ եղած է: Վեցամեայ կը վախճանի նաեւ Սառա* († 7 *Օգոստ.* 1661)[4]:

*Աբրահամ պատանեկական հասակին մէջ էր դեռ, երբ կ՚ընկերանար իւր պապին, որ վաճառականական գործով կ՚ուղեւորէր Վենետիկ:* 1644*էն սկսեալ կը գտնենք զինքը Կրետէ, ուր իբրեւ վաճառական կը պարենաւորէր Իբրահիմ խանի բանակը. իրեն հետ էր իր եղբայրը Պետրոս: Մտերիմն եղած էր Տէլի-Հիւսէին փաշային. այս պատճառաւ ալ երբ փաշան* 1659*ին իբրեւ պետական գանձին անհաւատարիմ ամբաստանուեցաւ եւ գլխատուեցաւ, մեղսակից մեղադրուեցաւ նաեւ Աբրահամ չէլէպի եւ բանտարկուեցաւ: Մեծ*

---

[4] *Երեմիա կը գրէր (էջ* 98) *թէ Աբրահամ Չէլէպի Մոռա կը գտնուէր* (1661), *երբ կը վախճանէր Կ. Պոլիս Սառա. մահուան օրը ճշդիւ կը նշանակէր էջ* 115. *«Ռճժ. ի ժ. Օգոստոսի». իսկ էջ* 163 *իւր առ Աբրահամ Չէլէպի գրած մխիթարական թուղթը թուական կը կրէ բառախաղով «Ի ԿԱԹՈԳԻՆ ի տօնի Վերափոխման», այն է* 14 *Օգոստ.* 1664: *Վերջինս պէտք է կարդալ հաւանօրէն «Ի ԿԱԹՈ(գ)ԻՆ, որով կը ստացուի* 14 *Օգոստ.* 1661:

*դժուարութեամբ կրցաւ արդարացնել ինք զինքը եւ ազատել բանտէն: Վերադառնալով Պէլիգրատ եւ տեղը անապահով համարելով՝ փոխադրուեցաւ ընտանեօք Կ. Պոլիս: Հոս իւր որդւոց դաստիարակ կարգելով Երեմիա Չէ-լէպին՝ ինքը անցաւ Մոռա, անկէ ալ Կրետէ, ուր մնաց մինչեւ* 1670: *Աբրահամ Չէլէպի գրասէր եւ ուսումնասէր էր. եւ գիտցաւ յարգել յանձին Երեմիայի գրագէտը: Ոչ միայն անձամբ հետամուտ էր ընթերցասիրութեան, այլ եւ կը յորդորէր իր զաւակները կարդալ Հաֆիզ մը եւ խելամուտ ըլլալ անոր արուեստին նրբութեան: Ուշադրութեան արժանի է, ինչ որ կը գրէ* 1672*ին Երեմիա (հմմտ. էջ* 103)*.*

*«Եւ երթալն Չէլէպոյն ի Կիրիտ ուղարկեցի նմա իբրու աղերս զպարգեւեալս* (1666)*, զի անդր ի պանդխտութեան ընթերցեալ երբեմն զբօսնոյր: Եւ յետ աոման կլային* (1670) *իբրեւ եկն չէլէպին ի Ստամպօլ՝ բերեալ ընդ իւր եւ զՄուսէվէտէն այսր՝ զոր առեալ ահա իմովք ձեռօք նօտրեցի առ ի յիշատակութիւն կրկնակի՝ անձինս մեղսամածի: Եւ մինչ դեռ զայս գիրք զծածրէի՝ իր իմն այսպէս հանդիպեալ,* զի ինքն Չէլէպին կրկին ջանիւ եդ ընթեռնուլ զգիրս երգոց Հաֆիզոյն Շիրազի ի լեզու փարսի. ընդ որում եւս ստիպեալ հարկէ զորդին զՄատթէոս ընթեռնուլ զայն: Որում եւ ես նախկնի ուսուցեալ էի նմա զգիրս Հայոց եւ Տանկաց զոմանս, եւ թէպէտ եւ ես ի ժամանակս անցեալս ընթերցեալ էի զՀաֆիզս եւ յետոյ թողեալ որպէս

զբազում բանս կիսալիր՝ *սակս յոլով դիպուածոց վշտաց եւ ի մարդոց նենգաւորաց՝ յօտարաց եւ ի մերձաւորաց երբեմն ըստ վերոյիշեցելոց: Իսկ զգիրս Չէլէպոյն առեալ ի ձեռս իմ զկատարմանէն զոր փոյթ ունէի. իբրեւ տեսի եւ զբանից Հաֆիզոյն Թարքմանաբար. զի զոյլն բանք նմանատարր եւ հանգիտագունակ իմոցս շարադրելոց սոյն գրոց ի բազում տեղիս. եւ առ այս յոյժ խնդացի...»:*

*1660ին Կ. Պոլսոյ Ս. Սարգիս եկեղեցին կը գտնուէր պարտքի տակ. եկեղեցւոյն հոգաբարձութիւնը հատուցանելու համար պարտքերը՝ ի վաճառ կը հանէ շարժական գոյքերը. անոնց մէջ էր* 1263*ին Յովհաննէս արքայեղբօր համար գրուած Աւետարանը, գեղեցիկ մանրանկարուած: Աբրահամ Չէլէպի կը գնէ զայն. եւ կը յանձնարարէ Երեմիայի, գրել ստացողին Յիշատակարանը (հմմտ. էջ* 113):

*Աբրահամ Չէլէպի նաեւ եկեղեցասէր էր եւ շնող եկեղեցիներու:* 1660*ին, երբ Կ. Պոլսոյ մեծ հրդեհին կ'այրին Ս. Նիկողայոս եւ Ս. Սարգիս եկեղեցիները, կ'առաջարկէ յիշեալ եկեղեցիներու հոգաբարձութեանց, գնել հողերը եւ իր հաշուին կառուցանել: Ս. Սարգսի հոգաբարձութիւնը յանձն չ'առներ ծախել. բայց Չէլէպին կը գնէ Ս. Նիկողայոսի հողն եւ կը կառուցանէ եկեղեցին: Որովհետեւ առանց պետական հրամանի կը շինուի Եկեղեցին, հարկ կ'ըլլայ բարերարին հալածանքի փոթորիկ մ'անցնել:* 1675*ին կը նորոգէ*

Սիլիվրիի Հայոց եկեղեցին. այս մասին նոյն եկեղեցւոյ մէջ պահուած ժամագրքի մը Յիշատակարանը կ՚արձանագրէ[5].

«Աւուրս Ս. Գէորգ եկեղեցւոյս ի ձեռանէ Հոռոմոց ազգին Թվին ՌՃԻԴ ամին... Գրէ մարգարէն յաւածն իւր ասելով. Շրջեցարուք զՍիօնիւ, պաշտպանեցէք զնա եւ պատմեցէք զաշտարակս նորա. զոր իբրեւ ընթեռնոյր այրս Աբրահամ Չէլէպին՝ ցանկայր եւ զնոյնն կատարել. ըստ որում եւ միւս մարգարէն՝ Երանի որ ունիցի զաւակ ի Սիոն. որ մասնաւորին է յարմարելի. զի զնոյն ինքն զբոլորն Սիօն ստացաւ զաւակ, առ ի յիշատակումն Տեառն խորհրդոյ խաչելոյն՝ զայնս Գողգոթայ յարմարէր, հաստատելով զեկեղեցիսն Աստուծոյ, զաւերականն ի տեղիս տեղիս վերանորոգելով: Եւ մանաւանդ իսկ նախարարք Թագաւորին հարկեալ ի սէր եւ ի խաթր սորա՝ առեալ ի ձեռաց Հոռոմոց զեկեղեցիսն եւ ետուն ազգիս Հայոց ի կլայս Սիլիվրիան յանուն Ս. Գէորգայ ըստ նախնական անուամբ դարձեալ վերահաստատեալ: Եւ Աբրահամ Չէլէպիս... զորս ունէր բազում որդիս պայազատացեալս Լաւոր ամօք եւ Խաւոր ամօք... եւ սոյն արգեամբք, որ զեկեղեցիս Ս. Գէորգայ ստացեալ եւ պայծառացուցանէ: Յիշեսջիք յաղօթս ձեր... Աստուած ողորմի ասելով հօրն Պելհրատցի մահտեսի խօճա Մուրատխանին եւ մօրն Եահրխտանին, պապուն խօճա Ալփխա-

[5] Հրտ. Ա. Ալպօյաճեան, Բիւզանդիոն, 1909, Թ. 3891:

րին եւ եղբօրն իւրոյ Պետրոս չէլէպոյն եւ ամենայն արեան մերձաւորացն եւ նախնեացն իւրոց · ամէն : Եղաւ յիշատակս որ կոչի Ժամագիրք եւ Սաղմոսարան ի Թուականիս ՌՃԻԴ · սկիզբն ամի առման եկեղեցւոյս Ս · Գէորգայ» :

Մահալըճ գիւղը, ուր կ՚ըսուի թէ Աբրահամ Չէլէպի եկեղեցի մը շինած ըլլայ, կը գտնուի Պրուսայի շրջակայքը : Այլուստ անծանօթ է ինձ շինութեանս մասին որ եւ է տեղեկութիւն :

Նոյն կամ յաջորդ տարին ալ Փիլիպէի հայ գաղթականութիւնը կը դիմէ իրեն հոգալ իրենց համար եկեղեցի մը : Աբրահամ չէլէպի կը յաջողի ստանալ Փիլիպէի Յունաց պատկանեալ Ս · Գէորգ եկեղեցին, որուն նորոգութեան համար ալ կը խոստանայ տալ կարեւոր գումարը · բայց 1676 Ապրիլ 15ին յանկարծ կը վախճանի : Իր որդին Մատթէոս ի գլուխ կը հանէ հօրը խոստումը (տե՛ս վերը, էջ 116) :

Տեսանք վերագոյն թէ ինչպէս 1670ին ալ ձեռք բերաւ Գանտիայի Ս · Կարապետ եկեղեցին, նորոգեց եւ զարդարեց կարեւոր սպասներով :

1663ին ալ փորձ ըրած էր եկեղեցի մը կանգնել ի Լիվոռնոյ. «Մերազնեայց մէջ մեծատուն մի Ապրօ Չէլէպի անուն՝ ազգային եկեղեցւոյն անհրաժեշտ հարկաւորութեամբն զգածեալ դիմեց 1663ին Քահանայապետական Նուիրակին որ ի Փլորենտիա, որուն միջնոր-

ղութեամբ ազերս մատոյց ի Հռոմ»: Բայց արդիւնք մը չտուին այս դիմումները[6]:

Աբրահամ Չէլէպի վախճանեցաւ յԱդրիանուպոլիս 15 Ապրիլ 1676: Իր որդին Մատթէոս տոհմին սեպհական ձեռագրի մը մէջ կ՚արձանագրէ ինքնագիր[7]. «Իզմիրու էկի էտրէնէ. ԺԱ օր վաղճանած գրաայ ողորմած հոգի հայրըս Աբրահամ չէլէպին. Քրիստոս միածին ընդ արդարըն դասեսցէ. ամէն: Թվին ՌՃԻԵ. ապրիլի ԺԶ: Աստուած լուսաւորէ հոգին բարեխօսութեամբ սուրբ կոյս Աստուածածնին եւ ամենայն սրբոց. ամէն»:

Տապանագիրը պահպանած է Եփրեմ պատրիարք Ադրիանուպոլսեցի էջմիածնի Թ. 1495 ձեռագրին մէջ՝ թղ. 152ա.

«Թուին ՌՃԻԵ. ապրիլի ԺԵ. Պէյլէրղատցի Ապրօ չէլէպին մեռաւ. եւ թաղեցաւ ի հող գերեզմանի. ի յարքայանիստ քաղաքն Անդրիանուպօլիս, որ է էտրէնէ: Եւ ի վերայ գերեզմանին այսպէս է գրված, տաճկի բառիւք.

ՊԷԼԸՐՂԱԹԼԻ ԽՕՃԱՅ ԱՊՐՕ ՉԷԼԷՊԻՆԸՆ ՏԸՐ. ՊՈՒ ՄԷԶԱՐ. ԿԵՕՐՆԻՃԷ ԽԱՔԻԼԷ. ԵՔՍԱՆԷՅԼԷ ԻՇ ՏԸՐ. ՌՈՒԶԻԿԵԱՐ:

Յ. Քիւրտեան, Բազմավէպ, 1926, էջ 42 երեւան բերած է տապանաքարը Ադրիանուպոլսոյ Եըլտըրըմ կոչուած Հայոց գե-

[6] Մեսրոպ Վ. Ուղուրլեան, Պատմութիւն Հայոց գաղթականութեան եւ շինութեան եկեղեցւոյ նոցա ի Լիվոռնոյ քաղաքի: Վենետիկ 1891, էջ 51:

[7] Ձեռագիր Յակոբ Թոխաթեցւոյ տաղաչափեալ Սաղմոսարանի. տեսայ 1930 Դեկտեմբերին ի Միւնիխէն L. Rosenthal հնավաճառին քով. հմմտ. Antiquariats-katalog 167, Nr. 13:

*րեզմանատան մէջ հետեւեալ արձանագրութեամբ:*

«ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՀԱՆԳՍՏԵԱՆ ՊԷԼԸՐԴԱՏՑԻ (*տպ. Պէլըկրատցի*) ՄԱՀՏԵՍԻ ՄՈՒՐԱՏԽԱՆԻ (*տպ. Մուրատեանի*) ՈՐԴԻ ՊՐՆ. ԱՊՐԱՀԱՄ ՉԷԼԷՊՈՒՆ (*տպ. չէլէպեան*), ՈՐ ՀԱՆԳԵԱՒ ԱՌ ՔՐԻՍՏՈՍ ԹՎԻՆ ՈՒՁԻԵ ՅԱՄԻ ՏԵԱՌՆ 1677ԻՆ ՅԱՊՐԻԼԻ Ժ ՀՆԿԻՆ (*տպ. կրկին*) \ • Λ ˥ ՍԷՆԷ ՏԱՃԿԱՑ»:

*Թուականը 1677 ուղիղ չէ եւ չի համապատասխաներ Հայկականին եւ Տաճկականին:*

*Աբրահամ Չէլէպիի գոյութիւնը կը հիւսէ Յովհաննէս դպիր, որ 1656ին օրինակած է ի վայելումն Սարգիս չէլէպիի Աստուածաշունչ մը. յառաջ կը բերեմ Յիշատակարանին կարեւոր տողերը*[8]*.*

*«Արդ ցանկացող եղեալ այսմ հոգենուագ մատենիս... այրս այս բարեպաշտ եւ աստուածասէր Պէլըրդատցի Աբրահամ չէլէպի, որ ունէր նախկնարար ի սրտի խորում զջերմեռանդ տարփումն ուսումնասիրութեան աստուածային գրոց, եւ փիլիսոփայական արհեստից հմուտ, մինչ զի յաւուրս յայս ոչ ոք գտաւ համեմատ սմա գրամատիկ(ո)ս ի մէջ հայասեռ ազանցս. եւ ունէր լիով զուսումն աստուածաշունչ տառից՝ զհնոց եւ զնորոց, ներտրամադրեալ յխորում սրտի սենեկին եւ արագ ի պատասխանիս ամենայնի, որ խնդրէ զբանն: Բայց եւ զսա եւս ստացաւ ի յարդար վաստակոց իւրոց:*

---

[8] *Հ. Բ. Սարգիսեան, Ցուցակ հայ. ձեռագրաց Մխիթ. Մատ. ի Վենետիկ, Ա.,* էջ 85—86:

*Ով որ հանդիպիք սմա կարդալով, աւրինակելով՝ յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զհայրն իմ զմահդեսի խօճայ Մուրատխանն եւ զմայրն իմ Եայրխանն եւ առ Աստուած հանգուցեալ մանուկ տիօք զեղբայրն իմ զՊետրոսն, եւ զվայելչագեղ զնորափթիթ հարազատ զորդիքն իմ զՍարգիս չէլէպին եւ զՄաթուսաղան եւ զամենայն արեան մերձաւորսն» ...:*

*Ստացող սորա յոյժ հոգելլի*
*Իմաստասէր Աբրահամի,*
*Ի վայելս մանկանն իւր գովելլի,*
*Սարգիս անուն չքնաղատպի,*
*Զոր տէր Աստուածն ամենայնի,*
*Անփորձ պահէ զսա յերկրի ...:*

5. *«Առ կենդանութեամբ Հօր իւրոյ ՄԱՏԹԷՈՍՆ եղեալ ի Կոստանդնուպօլսոյ գայ ի Զմիւռին ասա յամի* 1668 (*տպ.* 1688). *ուր յետ ամի միոյ սկսանի շինել տուն. զոր յետ պատշաճ յօրինուածով կատարման՝ լեալ սաստիկ գետնաշարժ՝ տապալէ ի հիմանց եւ ընդփլածով ճմլին չորեքին մանկունքն եւ այլն, ազատելով միայն ամուսնոյն իւրոյ ի պարտէզ: Այլ յետոյ պարգեւէ նմա Աստուած եւ դարձեալ չորս զաւակս՝* զԱբրահամ, զՊետրոս, զՍտեփաննոս *եւ* զԿիւլիան: *Եւ ինքն դարձեալ մեծանուն վաճառականութեամբ եւ իշխանաւոր պատուով ընդունի եւ ի Լուդովիկոս ԺԴ. արքայէ Գաղղիացւոց թուղթ ազնուութեան եւ*

հովանաւորութեան, 1687: Որում ժամանեալ եւք հասարակաց կենաց մարդկան՝ հանգչի ի Քրիստոս, թաղեալ ի մէջ սուրբ Ստեփաննոս եկեղեցւոյ Զմիւռնիոյ»:

= Աբրահամ չէլէպիի անդրանիկն է Սարգիս, որ նաեւ Մաղսուտ կը կոչուի. ան 1656ին «նորափթիթ» կը ներկայացուի. իսկ 1675ին երեսնամեայ. ուստի ծնած ըլլալու է 1644ին: Երեմիա գրած է իրեն 1658ին թուղթ մը, հաւանօրէն երբ կը գտնուէր Վենետիկ, ուր ուղարկուած էր ուսման համար (տե՛ս վերը, էջ 156—158): Սարգիս կենդանի էր 1675ին, թէ ի՞նչ եղաւ իր բախտը այս թուականէն ետքը, յայտնի չէ:

Հ. Ղ. Ալիշան իրեն հետ կը նոյնացնէ այն Սարգիս Չէլէպին, որ 1665ին ի Լիվոռնոյ գժտած էր Թէոդորոս Քթուչենց հայ վաճառականին հետ. «Սարգիս ոմն Չէլէպի թուի յԱպրոյեանց տոհմէ, որ գի գժտեալ էր ընդ Թէոդորի, առ ի խափանել զգայթակղութիւնն՝ խոհական կաթողիկոսն Յակոբ Դ. գրէր առ վաճառականսն եւ առանձինն առ Ստեփաննոս (1665, մարտ 10) ջանահնար լինել ի հաշտութիւն, յոր սակս գրեաց եւ առ նոյն ինքն մեծ Դուքսն[9]»: Թէ ո՛րքան ճիշդ է այս նոյնացումը, չեմ կարող վճռել. յամենայն դէպս Սարգիս այս միջոցին հազիւ 21 տարեկան կարող էր ըլլալ:

Սարգիս հաւանօրէն իր նիստը հաստա-

---

[9] Սիսական, 452:

անց Եւրոպա․ այս պատճառաւ ալ խօսք չըլ-
լար իր եւ իր ժառանգներու մասին հայ յիշա-
տակարաններու մէջ․ նաեւ Վկայականը կը
լռէ Ապրոյեան այս ճիւղի ազգաբանութիւնը։

Ինծի ծանօթ է Սարգիս Ապրոյեանի ճիւ-
ղէն՝ Ապրօ Չէլէպի, որ ի Լիվոռնոյ գործած
եւ հոն վախճանած է։ Սա 1705ին Աղա տէ
Մաթուս հայ վաճառականին դէմ դատ կը բա-
նայ, ամբաստանելով թէ Եկեղեցւոյ մը շինու-
թեան համար իրեն յանձնուած գումարը «հա-
ւատարմաբար չէ ծախսած ի պէտս շինուա-
ծոյն»։ Դատարանին 21 Օգոստ․ 1706 վճռով
Աղա տէ Մաթուս կ՚արդարանայ եւ Ապրօ Չէ-
լէպի կը պարտաւորուի վճարել կառավարու-
թեան ծախքերը[10]։

Վախճանած է Ապրօ Չէլէպի ի Լիվոռնոյ
1713ին․ տապանաքարը կը կրէ հետեւեալ ար-
ձանագրութիւնը[11]․

ԱՊՐՕ ՉԷԼԷՊԻ ՈՐԴԻ ՄԱԽՍՈՒՏԻ․ Դ․ ԱՊՐԻԼ
ՌՃԿԲ։

Ի Լիվոռնոյ 1689—1697 տարիներուն կը
յիշուի նաեւ Գէորգ Չէլէպի Ապրօ, որ 1689ին
հայ եկեղեցի մը կանգնելու համար գումա-
րուած ժողովին մէջ «ընտրուեցաւ ազգին կող-
մանէ իբր պատգամաւոր» տալով անոր լիա-
զօրութիւն եկեղեցւոյ մը շինութեան յարմար
հող մը գնելու համար բարերարներէ ողոր-
մութիւն հանգանակելու։

---

10 Ուղուրլեան, անդ, էջ 80։
11 Անդ, էջ 104։

*Գէորգ Չէլէպի կը յաջողի կարեւոր գումարն հաւաքել եւ գնել այս նպատակին համար Փրանկիսկեաններու պարտէզը*[12]*: Նոյն Գէորգի կը հանդիպինք նաեւ 1697, Մայիս 18 գրուած աղերսագրի մը տակ, ուր կը ստորագրէ. «Ես Գէորգ Ապրօ Չէլէպի*[13]*»: Հ. Ղ. Ալիշան ստորագրութիւնս կը կարդայ «Գորգ որդի Ապրոյ Չէլէպւոյ»*[14]*: Լիվոռնոյ հայ եկեղեցւոյ շինութեան համար 1700, Փետր. 8ին տրուած բազմաստորագիր աղերսագրի մը տակ ալ կը տեսնուի «Գէորգ Սարգիսեան», այս ինքն որդի Սարգսի*[15]*: Ո՞վ է այս Գէորգ Ապրօ: Ինձ կը թուի թէ տեղն եւ ժամանակը նկատի առնելով* Ապրօ Չէլէպի որդի Մախսուտի, Գէորգ Ապրօ Չէլէպի, *ինչպէս նաեւ* Գէորգ որդի Սարգսի *պէտք է նոյնացնել եւ նկատել Սարգիս–Մագսուտի, Աբրահամ Չէլէպիի որդւոյն միակ որդին, որ, ինչպէս կ՚երեւայ, անժառանգ վախճանած է:*

Մատթէոս, *զոր 1656ի յիշատակագիրը* Մաթուսաղա *կ՚անուանէ*, 1675*ին քանամեայ տարիքի մէջ էր. ուստի ծնունդը պէտք է դնել* 1654*ին: Աճեցաւ եւ զարգացաւ Երեմիայի դաստիարակութեան տակ: Մատթէոս իր վաճառականական տունը հաստատեց Զմիւռնիա: Հոս ամուսնացաւ* 1675*ին. այս մասին*

---

[12] *Ուղուրլեան, անդ, էջ* 64—66:
[13] *Անդ, էջ* 260:
[14] *Սիսական, էջ* 452:
[15] *Ուղուրլեան, անդ, էջ* 72:

*կը գրէ ինքնին Յակոբ Թոխաթեցւոյ Սաղմոսարանին վերջը·*

*«Թվին ՌՃԻԴ· Նոյեմբերի Ը· օրն երկուշաբթի էր, որ առավոտուն Ե սահաթ կայր որ ես Մաթէոս պսակվեցայ Իզմիր»:*

*Հարսանեաց ներկայ էր նաեւ ծերունի հայրը· առ այս կը գրէ Մատթէոս Չէլէպի վերոյիշեալ յիշատակագրութեան կից· «Ալվի նոյն թվին նոյեմբեր ԺԱ· օրն հինգշաբթի, աղան նաւըն ճանբեցինք, որ գընաց Ալլիկօռ-նայ· Աստուած բարի ճանապարհ տայ»:*

*Մատթէոս իւր նորահարս կնոջ անունը չի յիշեր: Այս ամուսնութենէն* 1680*ին ծնաւ Սարայ, որ կարճօրեայ վախճանեցաւ. եւ* 1682*ին՝ Հոխփսիմէ. այս մասին կ՚արձանագրէ հայրը ինքնագիր՝ վերոյիշեալ մատենին մէջ.*

*«Թվին ՌՃԻԹ: ունվարի Թ օրն ուրբաթ եաթսիէին Ա սահաթ եառյ ծընաւ Սարան· տանուտէր տարուն Կարիճըն. եօթներեակըն Դ: Քրիստոս միածին ընդ երկայն աւուրս արասցէ. ամէն: — Դ. ամսու էր կէնդանի· եւ ետ նորա ի մահ փոխեցաւ»:*

*«Ամենասուրբ Երրորդութեան փառք եւ պատիւ եւ գօվութիւն եւ երկրպագութիւն Հօր եւ Որդոյ եւ սուրբ Հոգոյն· որ իւր առատ ողորմութեամբն եւ բարեխօսութեամբ սուրբ կոյս ծընօղին իւրոյ· շնորհեաց դուստր իմ Հոփսիմէն թվին ՌՃԼԱ* (1682) *ունվարի ամսոյն Լ· օրն երկուշաբթի, կէս օրին: Աստուած ընդ երկայն աւուրս արասցէ բարեխօ-*

*սութեամբ սուրբ կոյս Աստուածածնին եւ ամենայն սրբոց նորայ. ամէն»։*

*Զմիւռնիոյ երկրաշարժը տեղի ունեցած է* 1688, *յունիս* 7*ին։ Աղէտին զոհ գացած են Մատթէոս Չէլէպիի երկու արու մանկահասակ զաւակները՝ Աբրահամ եւ Մուրատ. վիմագիրը նկատի ունի թերեւս — յաւանդութենէ — Սառա եւ Հռիփսիմէ դուստրները, որոնցմէ մին վախճանած էր* 1680*ին, իսկ Հռիփսիմէի բախտն անծանօթ կը մնայ մեզի։ Աղէտեալներու տապանագիրն է*[16].

ԱՅՍ Է ՏԱՊԱՆՔ ԱՊՐՕԵԱՆ ՄԱԹՈՍ
ԱՂԱՅԻ ՈՐԴԻՒՔ ԱԲՐԱՀԱՄ ԵՒ ՄՈՒՐԱՏ
ԽԱՆ ԱՂԱՅՆԵՐԱՑ ՈՐ ՀԱՆԳԵԱՆ
Ի ՇԱՐԺԷՆ Ի ԹՎԻՆ ՌՃԼԷ ՅՈՒՆԻՍԻ Է

6. «*Որդիք սորա* Աբրահամ, Պետրոս *եւ* Ստեփաննոս *ընդարձակեն զվաճառականութիւնն մինչեւ ի Հնդիկս եւ ի Պարսս եւ յԵւրոպիայ. եւ բազմօք ճոխանան. որոց տուեալ լինի եւ հրովարտակ ի յաւիտենական յիշատակաց արժանի ի Պետրոս կայսերէ Ռուսաց յամի Տեառն* 1717, *որ կայ այժմ ի ձեռս սոցա կնքեալ արքունի մեծ կնքով. ուր գի եւ Պետրոսն էր նախկին Թարգման Անգլիացւոց»։*

= *Աբրահամի մէկ նամակը, գրուած ԺԸ. դարու առաջին քառորդին, Թուրքերէնէ հայերէնի թարգմանելով հրատարակած է Չամուրճեան, Հայաստան Ա.* (1846/47), *Թ.* 33 *եւ* 34։

---

[16] *Հ. Յ. Քոսեան, Հայք ի Զմիւռնիա, Ա.։ Վիեննա* 1899, *էջ* 85։

Պետրոսին պատահած է 1714ին յԱմսդերտամ Թովմաս եպիսկոպոս, որ Հռոմէն կը վերադառնար, եւ յանձնած Աղեքսանդր կաթողիկոսի առ Կղեմէս ԺԱ. գրած թղթին մէկ պատճէնը. «արդ զօրինակ գրոյս ինքն Թօմաս եպիսկոպոսն առեալ էր Ապրօյեան Պետրոս աղային, որ էր յայնժամ յԱմսդերտամ քաղաքի. որ այժմ իսկ ի նորին հանդուցելոց որդւոցն, այսինքն ի Գալուստ եւ յԱռաքել ամիրայից, մեզ շնորհեալ եղեւ. որ եւ ըստ խնդրոյ տիրացու Աւետիսի սիրելոյն իմոյ օրինակեցաւ ի Սիմէոն սարկաւագէս հարազատաբար». Հմմտ. Հ. Գ. Գալէմքեարեան, Կենսագրութիւններ երկու հայ պատրիարքներու եւ տասն եպիսկոպոսներու. Վիեննա 1915, էջ 190: — Պետրոս Մեծի հրամանագիրն առ Ապրոյեան եղբարս՝ Պետրոս, Աբրահամ եւ Ստեփանոս, տրուած 28 Յունուար 1717, հրատարակուած է ի գիրս՝ Собраніе актовъ, относящихся къ обозрѣнію исторіи армянскаго народа. Մասն Ա, Մոսկուա 1833, էջ 158—160: Հմմտ. առ այս. «Մեծն Պետրոս հրամանագիր մը տուաւ յանուն Պետրոս Ապրոյի, հարուստ եւ պատուաւոր Զմիւռնիացի վաճառականին, որով ինքնակալը կը բանար իր կայսրութեան դուռը Տաճկաստանի Հայոց եւ հրաման կու տար իր երկիրը մտնելու: Վաւերական յիշատակարաններ կը հաստատեն, թէ տարի մ'ետքը 1718ին Հայք հաստատեցին Ռուսաստան մետաքսագործութեան տուն մը, եւ Ռուսաց սորվեցուցին կերպասի ոստայնան-

կութիւնը»․ Քօսեան, Հայք ի Զմիւռնիա, Ա․, էջ 32—33: — Պետրոս ունեցած է յաճախակի թղթակցութիւն Սիմէոն կաթողիկոսի հետ յընթացս 1763—1765 տարիներու․ հմմտ․ Դիւան Հայոց պատմութեան․ Բ․ 27, 34, 69 եւ 468․ վերջին թուղթս գրուած է 1765 Յունիսին Սիմէոն կաթողիկոսէն, որուն համառօտ բովանդակութիւնը այսպէս ներկայացուած է․ «Թուղթ եւս առ Ապրօյեան Պետրոս աղայն եւ յորդին իւր Աստուածատուրն եւ Գալուստն եւ Առաքելն, ի պատասխանի հարազատական թղթոյ նոցին․ եւ յորդորումն՝ ի յայն մնալ միշտ, որպէս մինչեւ ցայժմ»: — Պետրոս վախճանած է 1765ին, հաւանօրէն Յուլիսին․ Սիմէոն կաթողիկոս նոյն տարւոյն Օգոստոսին կը գրէ «գթուղթ առ որդիս Ապրօյեան Պետրոս աղային… որ այժմ վախճանեալ էր․ այս ինքն առ Աստուածատուրն, Գալուստն եւ Առաքելն․ մխիթարութիւն վասն մահուան հօրն․ եւ թոռանց նորին՝ Աւփիարին եւ Մարգարին ողջոյն գրեաց» (Դիւան, Բ․, 740):

Պետրոս Ապրոյեանէ ունինք պատմական-աշխարհագրական գրուածք մը Վիեննայի Մխիթարեան Մատենադարանի Թ․ 706 հայերէն ձեռագրին մէջ, օրինակուած Կ․ Պոլիս 1789ին, որուն համար կ՚ըսուի (թղ․ 1 բ) թէ է «Թարգմանեցեալ ի հեզահոգի դպրէ Պետրոս աղայէ, ի տանէ բարեպաշտօն ազնուազարմէ Ապրօյ չէլէպի կոչեցելոյ, ի Փլէմէնկի բարբառոյն ի հայ բարբառ․ յամի ներմարդու-

*թեանն Քրիստոսի* 1745 *եւ յամի* 1746 *ի Զմիւռին քաղաքի»:*

7. *«Արդ ծնանին ԱԲՐԱՀԱՄՈՒ չորք ուստերք՝* Մատթէոս, Ռափայէլ, Սէթ *եւ* Յովհաննէս. *եւ երկու դստերք՝* Գայիանէ *եւ* Թագուհի, *որք ոչ աճին ի սերունդս»:*

= *Շահան Ջրպետ կը գրէ Սէթի մասին.* «en 1730, Set Abro, arménien, etait à la tête de la compagnie des Indes à Madras». Recherches curieuses, *էջ* 330:

8. *«Ծնանին եւ ՊԵՏՐՈՍԻ ուստերք չորք՝* Աստուածատուր, Գալուստ, Առաքել եւ Մարգար. *եւ դստերք երկու՝* Սարայ *եւ* Մարթայ. *յորոց Գալուստ եւ Մարգար կուսակրօն զկեանս իւրեանց վճարեալ՝ թողուն յիշատակ զդպրատունն հոգեւոր մանկամբք:*

9. *«Ծնանին նաեւ ՍՏԵՓԱՆՆՈՍԻ երեք ուստերք՝* Բարդողովմէոս, Յակովբ *եւ* Յարութիւն. *եւ երկու դստերք՝* Սրբուհի *եւ* Բրաբիոն. *որք ոչ սերեն ի ծնունդս. յորոց Բարդողովմէոսն կայ ցարդ կենդանի: Այլ սոքա եւս լցեալ զկեանս իւրեանց՝ փոխին ի Քրիստոս. Աբրահամ ի Կ. Պոլիսն, եւ Պետրոսն եւ Ստեփաննոսն աստ, թաղելով Պետրոսի ի հայրենի շիրիմն ի միջի եկեղեցւոյն սրբոյ Ստեփաննոսի. եւ որդի սորա Գալուստ ի սուրբ Լուսաւորչին:*

10. *«Որդիք Պետրոսի Աստուածատուր եւ Առաքել ըստ հայրենի ճանապարհին ունին ընդ վաճառականութեան եւ զթարգմանութիւն. առաջինն՝ զՀոլլանդեայցն զնախկին թարգ-*

մանութիւն, եւ երկրորդն՝ զԱնգղիացւոց. ուր եւ Աստուածատուրն զազգասիրութեան հանդէս գգեցեալ՝ բազմաց բարեկարգութեանց առիթ լինի եւ պատճառ. եւ երկոքին իսկ գովանի ընծայեցին զանձինս յոլով բարեսիրութեամբ եւ փառաւորեցան յամենայնի իշխանապետական փառօք յազգս մեր»:

= Ինչպէս տեսանք Պետրոս Ապրոյեանի որդիք Աստուածատուր, Գալուստ եւ Առաքել արդէն իրենց հօրը կենդանութեան թղթակցութեան մէջ էին Սիմէոն կաթողիկոսի հետ. զոր շարունակեցին նաեւ յաջորդ շրջանին: Սիմէոն կաթողիկոս կը յիշէ թէ 1775 եւ 1776 տարիներուն երեք թուղթ գրած է առ Ապրոյեան եղբարս. Դիւան, Ը., 428, 452, 534. առաջին երկու թղթերը ուղղուած են «առ Ապրօղլի» Աստուածատուր են: Աստուածատուր 1787 Հոկտ. 8ին նորոգել կու տայ Աբրահամ Չէլէպիի Սիլիվրիի եկեղեցւոյն նուիրած ժամագիրքը, եւ մէջը կ'արձանագրէ իր անունը «Աստուածատուր Ապրօ, որ եմ թոռան որդի լուսահոգի Ապրօ չէլէպուն» (Բիւզանդիոն, 1909, Թ. 3891): — Առաքել Ապրօ, որ 1804ին դեռ կենդանի էր, 1801 Օգոստոս 20ին թղթակցած է Դաւիթ կաթողիկոսին հետ, որուն պատասխանած է կաթողիկոսը 1802 Յունուարին. «Թուղթ յԸզմիւռին առ Ապրոյեան Առաքել աղայն». Դիւան, Զ., 234—238:

11. «Եղեն ԱՍՏՈՒԱԾԱՏՐՈՅ ին որդիք. Ալփիար, Մարգար, Մատթէոս, Պետրոս.

*դարձեալ՝* Ալփիար, Յակովբ· *դարձեալ*· Պետրոս· *եւ երկու* Գալուստք *եւ չորս եւս դստերք՝* Մարիամ, *երկու* Սրբուհիք *եւ* Իսկուհի· *յորոց կան այժմ չորք որդիք՝ Մարգար, Մատթէոս, Յակովբ եւ Պետրոս. եւ դուստր մի Մարիամ»*:

12· *«Են եւ ԱՌԱՔԵԼԻՆ, որ տակաւին կենդանի է եւ նախկին Թարգման Անգլիացւոց, երեք որդիք՝* Գալուստ, Աբրահամ *եւ* Սէթ· *եւ երեք դստերք՝* Կիւլհան, Մէնէնտ *եւ* Աննա»:

13· *«Նոյն եւ ի քերց սոցա՝ ի ՍԱՌԱՅԷ եղեն որդի մի եւ դուստր մի՝* Յարութիւն *եւ* Ծաղիկ: *Եւ ի ՄԱՐԹԱՅԷ կան այժմ երկու որդիք՝* Պօղոս *եւ* Պետրոս, *եւ դուստր մի* Նազլու»:

14· *«Այլ ինքն Աստուածատուր եւս լնու զկեանս իւր եւ թաղի ի Հայրենի գամբարանի ի միջի սուրբ Ստեփաննոս եկեղեցւոյն Զմիւռնիոյ»*:

15· *«Որդիք Աստուածատրոյ՝ Մարգար, Յակովբ եւ Պետրոս, որ կան այժմ, նոյնպէս ըստ Հայրենի կրթութեանն վաճառականութեան լեալ հետամուտ, ունի Մարգար եւ զնախկին Թարգմանութիւնն Հոլլանտիոյ. եւ Յակովբ եղբայր իւր զերկրորդականն, արք առատամիտք եւ պայազատք՝ որք ջանան միշտ զսա ի նախնեացն շուք տոհմի իւրեանց յաւէտ բարգաւաճել ազնուասիրական իմն բարուք, որ արդարեւ փափաքելի իմն է ամենեցուն· յորոց միայն ՄԱՐԳԱՐՆ ամուսնացեալ*

ունի զերկու ազնուածին որդիս՝ զԱստուածատուր եւ զԴանիէլ. եւ զդուստր մի Տիրուհի: Նոյնպէս եւ քեռն սոցա ՄԱՐԻԱՄՈՒ կան երեք դստերք՝ Մարգարիտ, Կիւլ գատըն եւ Թագուհի»:

= Մարգար վերոյիշեալ ժամագրքին մէջ ստորագրած է իւր անունը 1795 Ապրիլ 28ին «Մարգար Ապրոյեան» (Բիւզանդիոն, անդ): Դաւիթ կաթողիկոս ունի «առ Ապրօյեան Մարգար աղայ յԻզմիր» թուղթեր 1801, Մայիս, Յունիս 12 եւ 1802 Յունուար թուակիր. Դիւան, Ջ., 179—180. 187, 282—285. Համմտ. եւ Դիւան, Է., էջ 393—394 (1803էն), ուր կաթողիկոսը իւր դժգոհութիւնը կը յայտնէ Զմիւռնիոյ առաջնորդին, Մարգարի պարտազանցութեան համար: Մարգար եւ եղբայրն Ալփիար կը յիշուէին արդէն 1665ին Սիմէոն կաթողիկոսի թղթին մէջ:

---

## ԱՇԽԱՏՈՒԹԵԱՆՍ ՄԷՋ
## ՆԿԱՏԻ ԱՌՆՈՒԱԾ ՁԵՌԱԳԻՐ ԱՂԲԻՒՐՆԵՐ

1. *Երուսաղէմ, Ս. Յակոբեանց Մատենադարան.*

| | |
|---|---|
| Թ. 33 | էջ 232 չ. |
| 605 | 121 |
| 605 բ. | 123 չ., 234 չ. |
| 892 | 82, 225 չ., 236 չ. |
| 959 | 121, 123 |
| 988 | 131 |
| 1030 | 86, 124 |
| 1042 | 37, 171 |
| 1058 | 141 |
| 1059 | 152, 189 եւն |
| 1076 | 130 |
| 1176 | 79 |
| 1893 | 89 |

2. *Երեւան, Պետ. Թանգարան.*

| | |
|---|---|
| Թ. 386 | էջ 124 |

3. *Էջմիածին, Պետ. Ձեռագրատուն.*

| | |
|---|---|
| Թ. 41 | էջ 187 |
| 72 | 126 |
| 114 | 54 |
| 158 | 56 |
| 348 | 21, 32, 36—37, 41, 219 |
| 349 | 39 |
| 1345 | 86 |
| 1502 | 26 |
| 1644 | 132 |
| 1645 | 118, 133 |
| 1675 | 77, 86, 124 |
| 1786 | 78, 81 |
| 2248 | 180 |
| 2503 | 58 |

4· *Լոնտոն, Բրիտ· Թանգարան·*
*Թ·* 180 (*Կոնիբիր*) = *էջ* 187

5· *Նոր–Ջուղայ, Ամենափրկչի Մատենադարան·*
*Թ·* 151 *էջ* 126

6· *Վենետիկ, Մխիթարեան Մատենադարան·*

| | |
|---|---|
| *Թ·* 85 (*Սարգիսեան*) = | *էջ* 132 |
| 509 | 86 |
| 556 | 184 |
| 621 | 125 |

7· *Վիեննա, Մխիթարեան Մատենադարան·*

| | |
|---|---|
| *Թ·* 88 | *էջ* 134 |
| 149 | 176 |
| 407 | 128—132 |
| 408 | 53 |
| 436 | 189 |
| 557 | 189 |
| 671 | 182 |
| 706 | 259 |
| 757 | 57 |
| 779 | 127 |
| 786 | 79 |
| 988 | 132 |

8· *Արմաշ, Դպրեվանուց Մատենադարան·*
*Մաշտոց* = *էջ* 119 *շ*·

9· *Ախալցխա, Լ· Բայրուրթցեանի ժողովածոյք·*
= *էջ* 121, 123, 124

10· *Պարիս, Յովհ· Զաւրեանի ժողովածոյք·*
*Թ·* 1 = *էջ* 74, 113

11· *Մինխէն, Լ· Ռոզէնթալի ժողովածոյք·*
*Թ·* 12 = *էջ* 96

12· Kansas, *Յ· Բիւրատեանի ժողովածոյք·*
*Տաղարան* = *էջ* 188

---

# ՑԱՆԿ ԱՆՈՒԱՆՑ

# Anhang:

## EREMIA ČELEBI KÖMÜRDJIAN.

### SEIN LEBEN UND SEINE LITERARISCHE TÄTIGKEIT.

EINE LITERARISCH-HISTORISCHE STUDIE.

VON

P. NERSES AKINIAN.

Über Eremias Entwicklungsgang unterrichten uns seine Tagebücher. Auch für das Leben und Erleben des Schriftstellers sind seine Schriften und Briefe die Hauptquelle. Neben Eremias Schriften sind die Kolophone der zeitgenössischen Handschriften als Quelle wertvoll. Die Tagebücher sind leider noch ungedruckt; uns sind nur die Auszüge, die Torkomian und Nšanian herausgegeben haben, zugänglich. Die Literatur, die das Thema behandelt, ist angegeben (§ 1).

Die Familie Kömürdjian, aus dem „Orient" (Persisch-Armenien) stammend, war im Dorfe Khodjayitz in Daranaghik' (Kamakh) ansässig. Gegen die Wende des 16. Jahrhunderts, als die Djelalis die armenischen Provinzen verheerten, übersiedelte die Familie nach Kallipolis. Dort erblickte Mar-

tyros, Eremias Vater, das Licht der Welt. Als er seine Mutter verlor, kam er mit seinem Vater nach Konstantinopel, wo er beim Bäckermeister Ambakum einen Posten fand. Er heiratete die Nichte Ambakums und kurz nachher empfing er in Jerusalem die Priesterweihe (1634). Die Ehe wurde mit drei Kindern gesegnet: Eremia, Georg (später Priester Martyros) und Komitas (später Priester und Märtyrer).

Eremia wurde am 13. Mai 1637 zu Konstantinopel geboren. Ambakum adoptierte ihn. Den ersten Schulunterricht genoß Eremia beim Priester Johann. Im Knabenalter bekam er die niederen Weihen (vor 1650); zu den höheren fühlte er sich nicht berufen. Im Jahre 1657 heiratete er. Dieser Ehe entsproßten ihm drei Söhne: Ambakum (später Gregoris Vardapet), Josef († um 1684?), Malachia dpir (Miniaturist) und einige Töchter. Als im Jahre 1658 sein Adoptivvater starb, schloß er mit dem Großkaufmann Abraham (Abro) Čelebi Freundschaft; dieser nahm ihn als Erzieher seiner Kinder zu sich, seither wurde Eremia als Mitglied der Familie betrachtet. Eremia war noch nicht 13 Jahre alt (1649), als ihn sein Adoptivvater nach Jerusalem mitnahm. Im Jahre 1653, als der Katholikos Philipp nach Konstantinopel kam, begleitete ihn Eremia

nach Brussa. In den Jahren 1661 und 1663 besuchte er das Armaškloster (bei Nikomedien). Um 1664 wurde er von Konstantinopel an den Patriarchen Eliazar in Alep gesandt, um diesen von seinem Vorhaben zurückzuhalten. Eliazar wollte sich nämlich zum Katholikos der im osmanischen Gebiet ansässigen Armenier weihen lassen. Eremias Bemühungen waren umsonst. Seither war er stark in die nationale Kirchenpolitik hineingezogen worden. Ihm wurde die große Aufgabe zuteil, die Parteien zu versöhnen. Um 1676 legte er in Konstantinopel eine Druckerei an; er scheint dazu von Thaddäus aus Djulfa angeregt worden zu sein. Die Druckerei gab nur zwei Broschüren heraus und stellte die weitere Tätigkeit ein. Im Jahre 1685 besuchte er mit seinem Sohne Malachia Etschmiatzin, wohin ihn die Sehnsucht nach seinem Sohn Gregoris Vardapet gezogen hatte.

Eremia starb im Jahre 1695 in Konstantinopel.

Es folgt eine Charakteristik des Autors.

Eremia Čelebi entwickelte eine vielseitige schriftstellerische Tätigkeit. Die meisten seiner Schriften sind uns in Originalhandschriften erhalten, teils in der Mechitharistenbibliothek zu Venedig, teils in der Jakobus-Kloster-Bibliothek zu Jerusalem.

Einige waren auch im Besitze der Familie Abro in Smyrna und Konstantinopel. Eremia verfaßte seine Werke in zwei Sprachen: armenisch mit einem Einschlag in Konstantinopolitaner Dialekt und türkisch in armenischer Schrift.

Es seien hier die wichtigsten seiner Werke kurz erwähnt: 1. Geschichte der osmanischen Sultane, in drei Redaktionen aus den Jahren 1678, 1695. 2. Geschichte der Feuersbrunst von Konstantinopel (1660). 3. Beschreibung von Konstantinopel, in Versen (1689). 4. Tagebuch (1648—1663). 5. Annalen (1680). 6. Geschichte der neuen Märtyrer (1686). 7. Widmungen an Abraham Čelebi, in Versen (1672). 8. Historisches zu der Eroberung von Kreta (1670). 9. Kolophon zum Evangeliar, welches sich im Besitze des Abraham Čelebi befand (1662). 10. Karte von Persien, Indien und Anatolien mit Erläuterungen, geschrieben im Auftrage des österreichischen Botschafters in Konstantinopel. 11. Der Antichrist (Sabathai Sevi, in Versen, 1666). 12. Über den Bäcker Timo, der eine Jüdin heiratete (in Versen). 13. Kontroverse mit den Juden und Griechen. 14. Kurze Fragen und Antworten (1681). 15. Eine Zuschrift an den Bischof Sukias (1692). 16. Predigten, armenisch und türkisch. 17. Heiligenlegenden,

türkisch (1685). 18. Alexander-Roman, türkisch (in Versen). 19. Geschichte Armeniens (Auszüge aus Moses Khorenaçi, türkisch). 20. Psalterium und Neues Testament, türkisch. 21. Roman de Paris et Vienne, türkisch (in Versen). 22. Briefe. 23. Gedichte.

ANHANG: 1. Eremias Gedichte zum Tode des Katholikos Jakob. 2. Drei Lieder über dasselbe Thema. 3. Das Kolophon der Etschmiadziner Nr. 348. 4. Ein Abschnitt aus der Geschichte der Feuersbrunst von Konstantinopel. 5—7. Beschreibung der Jerusalemer Hss. Nr. 33, 605 B, 892. 8. Genealogie der Familie Abroyan (1500—1805).

---

# ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

---

Ա. Գալէմքեարեան Հ. Գր. Վ., *Ուսումնասիրութիւնք Լեհահայոց դատաստանագրոյն*: 1. Պիշոփ, *Լեհահայոց հին իրաւունքը*. 2. Գոլէր, *Իրաւունք Հայոց*: 1890: *էջք է* + 85 + 59: *Ֆր*. 1·50

Բ. Մենէվիշեան Հ. Գ., *Ազգաբանութիւն ազն. գարմին Տիւզեանց*: 1890: *էջ* 50: *Ֆր*. 1·—

Գ. Տաշեան Հ. Յ., *Ագաթանգեղոս առ Գէորգայ ասորի եպիսկոպոսին եւ ուսումնասիրութիւն Ագաթանգեղեայ գրոց*: 1891: *էջ ԺԱ* + 159: *Ֆր*. 1·50

Դ. Տան Գ., *Արեւելեան Հայք ի Պուքովինա*: *Թրգմ. Հ. Գ. Վ. Գալէմքեարեան*: 1891: *էջ* 79: *Ֆր*. 1·—

Ե. Տաշեան Հ. Յ. Վ., *Ուսումնասիրութիւնք Ստոյն-Կալիսթենեայ Վարուց Աղեքսանդրի*: 1892: *էջ Դ* + 272: *Ֆր*. 3·—

Զ. Տըվլէ Ա. *եւ* Գ. փիսոն, *Ուղեւորութիւն ի Փոքր Ասիա*: *Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան*: 1892: *էջ* 82: *Ֆր*. 1·—

Է. Մառ Ն., *Ամառնային ուղեւորութիւնից դէպ ի Հայս*: *Թրգմ. Ո. Անոփեան*: 1892: *էջ* 89: *Ֆր*. 1·—

Ը. Կարրիէր Ա., *Նորագոյն աղբերք Մովսիսի Խորենացւոյ*: *Հտ. Ա*: *Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան*: 1893: *էջ Ժ* + 51: *Փր*. 1·—

Թ. Գալէմքեարեան Հ. Գ. Վ., *Պատմութիւն հայ լրագրութեան*: *Հտր. Ա*. 1794—1860: (1 *լուսատիպ պատկերով*:) 1893: *էջ* 232: *Սպառած*:

Ժ. Կոնիբիր Փր. Կ., *Քննութիւնք գրոց Դաւթի կամ Թարգմանութեան Արիստոտէլի*: *Թրգմ. եւ յու. Հ. Յ. Վ. Տաշեան*: 1893: *էջք է* + 92: *Ֆր*. 1·50

ԺԱ. Գովրիկեան Հ. Գ. Վ., *Հայք յԵղիսաբեթու-պոլիս Դրանսիլուանիոյ, Հատ. Ա. 1680—1779:* (1 *զնկատիպ պատկերով:*) 1893: *Էջ Ժ* + 533: *Գր.* 5·50

ԺԲ. Խալաթեան Գր., *Զենոբ Գլակ, Համեմատական ուսումնասիրութիւն:* 1893: *Էջ Զ* + 96: *Գր.* 1·—

ԺԳ. Տէր-Մովսէսեան Փ., *Հայ գիւղական տունը: Թրգմ. Հ. Բ. Վ. Պիլէզիկճեան:* (6 *տախտ.* 55 *պատկ.:*) 1894: *Էջ Ը* + 103: *Գր.* 2·50

ԺԴ. Կարրիէր Ա., *Նորագոյն տաղերք Մովսիսի Խորենացւոյ Հատ. Բ. կամ Յաւելուած: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան:* 1894: 8°: *Էջ ԺԱ* + 43: *Գր.* 1·—

ԺԵ. Տաշեան Հ. Յ. Վ., *Ուսումնասիրութիւնք հայերէն փոխառեալ բառից Ա.՝ Հ. Հիւբշ-ման, Սեմական փոխառեալ բառեր հին հայե-րէնի մէջ: Բ.՝ Բրոքէլման Կ., Յունական փո-խառեալ բառեր հայերէնի մէջ: Գ.՝ Հ. Հիւբշ-ման, Հայկական Յատուկ անուանք:* 1894: *Էջ Թ* + 145: *Գր.* 2·—

ԺԶ. Տաշեան Հ. Յ. Վ., *Մատենագրական մանր Ուսումնասիրութիւնք. Հատ. Ա. Ա—Զ. Նեմե-սիոս, Պրոկղ Դիադոխոս, Խոսրովիկ, Գիրք Հերձուածոց, Պրոկղ եւ Սեկունդոս:* 1895: *Էջ ԺԲ* + 296: *Գր.* 3·50

ԺԷ. Տաշեան Հ. Յ. Վ., *Հայկական աշխատասի-րութիւնք հայազգէտ Պ. Ֆէթթէրի, ամփո-փուած եւ թարգմ. ծանօթութեամբք:* 1895: *Էջ Թ* + 202: *Գր.* 2·50

ԺԸ. Տիրեան Կ., *Սեւ Ծովու ռուսական եզերքը:* 1895: *Էջ* 192: *Գր.* 2·—

ԺԹ. Գովրիկեան Հ. Գ. Վ., *Դրանսիլուանիոյ Հայոց Մետրապոլիսը կամ Նկարագիր Գերլա Հայա-քաղաքի:* 1896: *Էջ Թ* + 352: *Գր.* 4·—

Ի. Տաշեան Հ. Յ. Վ., *«Վարդապետութիւն առա-քելոց» անվաւերական կանոնաց մատեանը: Թուղթ Յակոբայ առ Կոդրատոս եւ կանոնք Թադդէի:* 1896: *Էջ Թ* + 442: *Գր.* 6·—

ԻԱ. Տոմաշէկ Վ., *Սասուն եւ Տիգրիսի ակերաց սահմանները: Պատմական եւ տեղագրական հետազօտութիւն: Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան:* 1896: *Էջ Է* + 62: *Գր.* 1·—

ԻԲ. Կարրիէր Ա., *Արգարու զրոյցը Մովսէս Խորենացւոյ Պատմութեան մէջ: Թրգմ. Հ. Գ. Վ. Մէնէվիշեան:* 1897: *էջ ԺԶ* + 107: *Ֆր.* 1·50

ԻԳ. Յովնանեան Հ. Ղ. Վ., *Հետազօտութիւնք նախնեաց ռամկօրէնի վրայ: Մասն Ա. Ռամկօրէն մատենագրութիւն: Տետր Ա:* 1897: *էջ Ը* + 272: *Ֆր.* 4·—

ԻԴ. Յովնանեան Հ. Ղ. Վ., *Հետազօտութիւնք նախնեաց ռամկօրէնի եւն: Տետր Բ:* 1897: *էջ Ը* + 273—522: *Ֆր.* 3·—

ԻԵ. Գելցէր Հ., *Համառօտ Պատմութիւն Հայոց: Թրգմ. Հ. Գր. Վ. Գալէմքեարեան: Յաւելուած* 1. *Ցանկ* 1895*էն*—1897 *Հայոց կոտորածներու առթիւ լոյս տեսած գրքերու:* 2. *Գաւազանագիրք Կաթողիկոսաց եւ Պատրիարքաց Հայոց:* 1897: *էջ Ը* + 130: *Ֆր.* 2·—

ԻԶ. Մէնէվիշեան Հ. Գ. Վ., *Գիրք կամ՝ յօդուած գրելու արուեստը: Յաւելուած՝ Գիրք կարդալու արուեստը: Բ. տպ.* 1926: *էջ Ը* + 168: *Ֆր.* 2·—

ԻԷ. Խալաթեան Գր., *Մ. Խորենացւոյ նորագոյն աղբիւրների մասին քննադատական ուսումնասիրութիւնք:* 1898: *էջ Է* + 56: *Ֆր.* 1·—

ԻԸ. Տաշեան Հ. Յ. Վ., *Ակնարկ մը հայ հնագրութեան վրայ:* (10 *գնկատիպ պատկերով:*) 1898: *էջ ԺԱ* + 202: *Ֆր.* 2·50

ԻԹ. Դաղբաշեան Յ., *Փ. Բիւզանդացի եւ իւր պատմութեան խարդախողը: Խորենացու աղբիւրների ուսումնասիրութիւն:* 1898: *էջ Թ* + 175: *Ֆր.* 2·50

Լ. Մսերեանց Լ., *Հայերէն բարբառախօսութիւն: Թրգմ. ի ռուսերէնէ Հ. Գ. Վ. Մէնէվիշեան:* 1899: *էջ Է* + 26: *Ֆր.* —·50

ԼԱ. Քոսեան Հ. Յ. Վ., *Հայք ի Զմիւռնիա եւ ի շրջակայս: Հատոր Ա. Զմիւռնիա եւ Հայք.* (53 *գնկատպ. պատկերով:*) 1899: *էջ ԺԲ* + 369: *Ֆր.* 5·—

ԼԲ. Քոսեան Հ. Յ. Վ., *Հայք ի Զմիւռնիա եւ ի շրջակայս: Հատոր Բ. Զմիւռնիոյ վիճակին գլխաւոր քաղաքներն եւ Հայք:* (15 *պատկերով:*) 1899: *էջ Ժ* + 161: *Ֆր.* 2·50

ԼԳ. Գովրիկեան Հ. Գ. Վ., *Հայք յԵղիսաբեթուպոլիս Տրանսիլուանիոյ. Հտր. Բ.* 1780—1825: 1899: *էջ Է* + 558: *Ֆր.* 6·—

ԼԴ. Գազանճեան Յ., *Եւդոկիոյ Հայոց գաւառաբարբառը*։ 1899։ *էջ Է* + 124։ *Ֆր.* 1·50

ԼԵ. Կարրիէր Ա., *Հեթանոս Հայաստանի ութ մեհեանները Ագաթանգեղոսի եւ Մ. Խորենացւոյ համեմատ*։ *Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան* (1 *աշխարհագրական տախտակով*։) 1899։ *էջ* 48։ *Ֆր.* 1·—

ԼԶ. Տաշեան Հ. Յ. Վ., *Ժողովածոյք առակաց Վարդանայ, ըստ Ն. Մառի. տեղեկագրութիւն եւ քաղուածքներ*։ 1900։ *էջ ԺԱ* + 198։ *Ֆր.* 2·50

ԼԷ. Տաշեան Հ. Յ. Վ., *Մատենագրական Մանր Ուսումնասիրութիւնք* (*տես ԺԶ*)։ *Հատոր Բ. Է—Ժ. Խիկար եւ իւր իմաստութիւնն, Ագապետոս եւ իւր Յորդորականք առ Յուստինիանոս՝ հանդերձ հրատարակութեամբ, Թղթակցութիւն Աբգարու եւ Քրիստոսի ըստ նորագիւտ արձանագրութեան Եփեսոսի, եւ Գէորգայ Պիսիդեայ Վեցօրեայք*։ 1901։ *էջ ԺԲ* + 388։ *Ֆր.* 4·50

ԼԸ. Տէր-Պօղոսեան Գր., *Նկատողութիւններ Փաւստոսի Պատմութեան վերաբերեալ. Մասն Ա.*։ 1901։ *էջ Ը* + 110։ *Ֆր.* 1·50

ԼԹ. Վէբէր Ս., *Արարատը Ս. Գրոց մէջ*։ *Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան*։ 1901։ *էջ Ե* + 77։ *Ֆր.* 1·—

Խ. Սանտալճեան Յովսէփ Վ., *Ասորեստանեայ եւ Պարսիկ սեպագիր արձանագրութիւնք*։ 1901։ *էջ* 262։ *Ֆր.* 4·—

ԽԱ. Խալաթեանց Բագրատ, *Հայ ժողովրդական դիւցազնական վէպը*։ 1903։ *էջ Ը* + 72։ *Ֆր.* 1·—

ԽԲ. Մէնէվիշեան Հ. Գ. Վ., *Արդի լեզուագիտութիւնը*։ *Հտր. Ա*։ 1903։ *էջ Ը* + 204։ *Ֆր.* 3·—

ԽԳ. Մարկուարտ Յ., *Հայ Բդեաշխք*։ *Թրգմ՝ Հ. Թ. Կէտիկեան*։ 1903։ *էջ* 44։ *Ֆր.* —·50

ԽԴ. Գելցէր Հ., *Սկզբնաւորութիւնք Բիւզանդեան բանակաթեմերու դրութեան* (1 *աշխարհացոյցով*)։ *Թրգմ. Հ. Գ. Գարանֆիլեան*։ 1903։ *էջ Է* + 83։ *Ֆր.* 2·—

ԽԵ. Կիւլէսէրեան Բ. Վ., *Ծովք, Ծովք-Տլուք եւ Հոռմ-Կլայ*։ (1 *աշխարհացոյցով*։) 1904։ *էջ Ը* + 124։ *Ֆր.* 2·—

ԽԶ. Կիւլէսէրեան Բ. Վ., *Կոլոտ Յովհաննէս Պատրիարք*։ 1904։ *էջ ԺԴ* + 227։ *Ֆր.* 3·50

ԽԷ. Պեդերսըն Հ., *Նպաստ մը հայ լեզուի պատմութեան*։ *Թրգմ. Հ. Գ. Գարանֆիլեան*։ 1904։ *էջ Ը* + 87։ *Ֆր.* 1·—

ԽԸ. Տէր-Մկրտչեան Գ. *եւ* Աճառեան Հ. Յ., *Քննութիւն եւ համեմատութիւն Եզնկայ նորագիւտ ձեռագրին*։ 1904։ *էջ Է* + 110։ *Ֆր.* 1·50

ԽԹ. Գովրիկեան Հ. Գ. Վ., *Հայք յԵղիսաբեթուպոլիս Դրանսիլուանիոյ. Հատ. Գ.* 1825—1904։ *էջ Ժ* + 666։ *Ֆր.* 7·—

Ծ. Շտրէֆ Մ., *Հայաստան, Քրդաստան եւ արեւմտեան Պարսկաստան, բաբելական—ասորեստանեայ սեպագրերու համաձայն*։ *Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան*։ 1904։ *էջ Է* + 222։ *Ֆր.* 3·—

ԾԱ. Խալաթեանց Գր., *Հայ Արշակունիք ըստ Մովսէս Խորենացւոյ*։ *Թրգմ. Արսէն Ս. Սիմոնեանց*։ 1904։ *էջ* + 124։ *Ֆր.* 1·50

ԾԲ. Պեդերսըն Հ., *Հայերէն եւ դրացի լեզուները*։ *Թրգմ. Հ. Թ. Կէտիկեան*։ 1907։ *էջ ԺԱ* + 264։ *Ֆր.* 5·—

ԾԳ. Հիւբշման Հ., *Հին Հայոց տեղւոյ անունները*։ *Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան*։ 1907։ *էջ ԺԶ* + 443։ *Ֆր.* 7·—

ԾԴ. Պեդերսըն Հ., *Հին հայերէնի ցուցական դերանունները*։ *Թրգմ. Հ. Յ. Տաշեան*։ 1907։ *էջ Է* + 90։ *Ֆր.* 2·—

ԾԵ. Գալէմքեարեան Հ. Գ. Վ., *Կենսագրութիւն Սարգիս Արքեպիսկոպոսի Սարաֆեան եւ ժամանակին հայ կաթողիկեայք* (1720—1775)։ 1908։ *էջ ԺԴ* + 433։ *Ֆր.* 6·50

ԾԶ. Աճառեան Հ., *Հայերէն նոր բառեր նորագիւտ Մնացորդաց գրոց մէջ*։ 1908։ *էջ* 38։ *Ֆր.* —·50

ԾԷ. Կիւլէսէրեան Բ. Ծ. Վ., *Եղիշէ, քննական ուսումնասիրութիւն*։ 1909։ *էջ ԻԸ* + 461։ *Ֆր.* 7·—

ԾԸ.[1] Ակինեան Հ. Ն.. *Տիմոթէոս Կուզ հայ մատենագրութեան մէջ*։ *էջ Ը* + 60։

ԾԸ.[2] Աճառեան Հր., *Հայերէն նոր բառեր Տիմոթէոս Կուզի Հակաճառութեան մէջ*։ 1909։ *էջ* 61—106։ *Ֆր.* 1·50

ԾԹ. Ակինեան Հ. Ն.. *Զաքարիա Եպ. Գնունեաց եւ իւր տաղերը*։ 1910։ *էջ ԺԲ* + 87։ *Ֆր.* 1·—

Կ. Ակինեան Հ. Ն., *Կիւրիոն Կաթողիկոս Վրաց.* 1910։ *էջ ԻԷ* + 315։ *Ֆր.* 5·—

ԿԱ. Մէնէվիշեան Հ. Գ. Ծ. Վ., *Հայերէն լեզուի ուղղագրութեան խնդիրը*: 1910: Էջ 73: Ֆր. 1.—

ԿԲ. Գիւտերբոք Կ., *Բիւզանդիոն եւ Պարսկաստան եւ անոնց դիւանագիտական եւ ազգային-իրաւական յարաբերութիւնները Յուստինիանոս ժամանակ*: Թրգմ. Հ. Հ. Համբարեան: 1911: Էջ Ը + 162: Ֆր. 2·50

ԿԳ. Սամուէլեան Խ., *Մխիթար Գօշի Դատաստանագիրքն ու հին Հայոց քաղաքացիական իրաւունքը*: 1911: Էջ ԺԲ + 344: Ֆր. 5.—

ԿԴ. Առաքելեան Հ., *Պարսկաստանի Հայերը, նրանց անցեալը, ներկան եւ ապագան*: Մասն Ա. 1911: Էջ Ը + 97: Ֆր. 1·50

ԿԵ.[1] Յովնանեան Հ. Ղ. Վ., *Միջնադարեան ազգային տաղաչափութիւն ռամկախառն*: Էջ Ը + 1—48:

ԿԵ.[2] Ակինեան Հ. Ն., *Յովնաթան Նաղաշ եւ Նաղաշ Յովնաթանեանք եւ իրենց բանաստեղծական եւ նկարչական աշխատութիւնք*: 1911: Էջ 49—117: Ֆր. 1·50

ԿԶ. Մէնէվիշեան Հ. Գ. Ծ. Վ., *Գրիգորի Մագիստրոսի «Գամագտականի» ամբողջական լուծումը*: 1912: Էջ ԺԱ + 162: Ֆր. 2·—

ԿԷ. Գաբրիէլեան Դկտ. Մ. Ս., *Ակնայ Գաւառաբարբառը եւ արդի Հայերէն լեզուն*: 1912: Էջ Է + 416: Ֆր. 6·—

ԿԸ. Մարկուարտ Պրոֆ. Դկտ. Յ., *Պատմութիւն հայերէն նշանագրերու եւ վարուց Ս. Մաշթոցի*: Թրգմ. Հ. Ա. Վարդանեան: 1913: Էջ Է + 59: Ֆր. 1·—

ԿԹ. Աճառեան Հ., *Հայոց գրերը*: 1913—1927: 8°: Էջ 504: Ֆր. 7·—

Հ. Մատիկեան Հ. Ա., *Անանունը կամ Կեղծ-Ներէոս, քննական ուսումնասիրութիւն*: 1913: Էջ Է + 91: Ֆր. 1·50

ՀԱ. Թորգոմեան Տ. Վ. Յ., *Երեմիա Չէլէպիի Քէօմիւրճեան Ստամպօլոյ Պատմութիւն*: Հատոր Ա. 1913: Էջ ԼԵ + 412: Ֆր. 6.—

ՀԲ. Վարդանեան Հ. Ա., *Դասական մանր բնագիրներ եւ ձեռագրական համեմատութիւններ*, Ա., 1913: Էջ Ը + 155: Ֆր. 2·—

ՀԳ.[1] Մարկուարտ Պրոֆ. Դկտ. Յ.. *Հայ Բագրատունեաց ճիւղագրութիւնը ծանօթութիւններով*: Թրգմ. Հ. Մ. Հապոզեան: 1913: Էջ 68:

ՀԳ.[2] Մարկուարտ Պրոֆ. Դկտ. Յ., *Վրական Բա-*

դրատունեաց ծագումը: Թրգմ. Հ. Մ. Հապոդեան: 1913: էջ 69—150: Գր. 2.—

ՀԴ. Վարդանեան Հ. Ա., Բառաքննական դիտողութիւններ, Ա: 1913: էջ 120: Գր. 1·50

ՀԵ. Գիւտերբոք Կ., Հռովմէական Հայաստան եւ հռովմէական սատրապութիւնները Դ—Զ դարերուն: Թրգմ. Հ. Մկրտիչ Վ. Նորշուեան: 1914: էջ Է + 94: Գր. 1·50

ՀԶ. Վարդանեան Հ. Ա., Բառաքննական դիտողութիւններ, Բ: 1914: էջ 110: Գր.1·50

ՀԷ. Սրապեան Հ. Ս., Ս. Յակոբ ազգային հիւանդանոց: 1915: էջ ԻԳ + 477: Գր. 6·50

ՀԸ. Գալէմքեարեան Հ. Գր. Ծ. Վ., Կենսագրութիւններ երկու հայ պատրիարքներու եւ տասն եպիսկոպոսներու եւ ժամանակին հայ կաթուղիկեայք: 1915: էջ Ը + 384: Գր. 4·50

ՀԹ. Դաւիթ—Բէկ Մ. Ս., Արա կ՚ըլլէ դաւառաբարբառը: 1919: էջ ԺԱ + 292: Գր. 4.—

Ձ. Տաշեան Հ. Յ. Վ., Արշակունի դրամներ, Ա: 1919: էջ Է + 192: Գր. 3.—

ՁԱ. Տաշեան Հ. Յ. Վ., Պոնտական ուսումնասիրութիւնք: Մասն Ա.՝ Հետազօտական ուղեւորութիւն ի Պոնտոս Յ. Գ. Կ. Անդերսընի: Մասն Բ.՝ Ուղեւորութիւն հնախօսական հետազօտութեան ի Պոնտոս եւ ի Փոքր—Հայս Փր. եւ Եւգ. Կիւմոն Եղբարց: 1919: էջ Է + 420: Գր. 6.—

ՁԲ. Ֆէրհաթեան Հ. Պ., Ցուցակ Եւրոպական—Հայկական հրատարակութեանց 1896—1910: 1919: էջ Է + 273: Գր. 3·50

ՁԳ. Գալէմքեարեան Հ. Գր. Ծ. Վ., Նորագոյն ագրերք Եզնկայ Կողբացւոյ. 1919: էջ ԺԱ + 98 + 42: Գր. 2.—

ՁԴ. Խալաթեանց Բ., Արաբացի մատենագրեր Հայաստանի մասին: 1919: էջ Է + 147: Գր. 2.—

ՁԵ. Տէր—Պօղոսեան Գր., Նկատողութիւններ Փաւստոսի պատմութեան վերաբերեալ. Մասն Բ.: 1919: էջ 126: Գր. 2.—

ՁԶ. Ակինեան Հ. Ն. Վ., Գաւազանագիրք կաթողիկոսաց Աղթամարայ: Պատմական ուսումնասիրութիւն: 1920: էջ ԺԱ + 200: Գր. 3.—

ՁԷ. Մատիկեան Դկտ. Հ. Ա., Կրօնի ծագումը եւ դիցաբանութիւն ըստ համեմատական կրօնագիտութեան: 1920: էջ ԺԲ + 334: Գր. 4.—

ՁԸ. Վարդանեան Հ. Ա., *Նիւթեր հայերէն բառագրութեան*: 1920: էջ 80: Գր. 1·—

ՁԹ. Վարդանեան Հ. Ա., *Ցերոնիմեայ Վասն ի քսան եւ յերկուս գիրս առ ի Հեբրայեցւոց զպատմութիւնս բաժանելոյ*. 1920: էջ 82: Գր. 1·—

Ղ. Տաշեան Հ. Յ., *Հայ բնակչութիւնը Սեւ ծովէն մինչեւ Կարին*: 1921: էջ 84: Գր. 2·—

ՂԱ. Վարդանեան Հ. Ա., *Բառաքննական դիտողութիւններ, Գ*: 1921: էջ 120: Գր. 1·50

ՂԲ. Ակինեան Հ. Ն., *Հինգ պանդուխտ տաղասացներ*: 1921: էջ 223: Գր. 3·—

ՂԳ. Ոսկեան Դկտ. Հ. Հ., *Յովհաննէս Վանական եւ իւր դպրոցը*: 1922: էջ է + 122: Գր. 1·50

ՂԴ. Ակինեան Հ. Ն., *Մատենագրական Հետազօտութիւններ, Ա*: 1922: էջ Զ + 230: Գր. 3·—

ՂԵ. Մովսէսեան Հ. Ղ., *Լօռի եւ Բագրատունի տան կորիկեան ցեղի պատմութիւնը*: 1923: էջ է + 95: Գր. 1·—

ՂԶ. Երեմեան Ա., *Զահարմահալի հայ ժողովրդական բանահիւսութիւնը*: 1923: էջ Ը + 81: Գր. 1·—

ՂԷ. Վարդանեան Հ. Ա., *Դասական մանր բնագիրներ, Բ*: 1923: էջ 162: Գր. 2·—

ՂԸ. Սաղաթէլեան Յ., *Բնութեան աւերումը Անդրկովկասում, յատկապէս Հայաստանում*: 1923: էջ 66: Գր. 1·—

ՂԹ. Կոզեան Դկտ. Հ. Ս., *Մակաբայեցւոց Բ. գրքին հայերէն թարգմանութիւնը*: 1923: էջ է + 207: Գր. 3·—

Ճ. Վարդանեան Հ. Ա. *Բառաքննական դիտողութիւններ, Դ*: 1923: էջ 130: Գր. 1·50

ՃԱ. Վարդանեան Հ. Ա., *Յովհաննէս Ժ. Բար–Շուշանի Հայոց կաթողիկոսին գրած թուղթը*: 1923: էջ 102: Գր. 1·50

ՃԲ. Թէրլէմէզեան Ռ., *Կոմիտաս վարդապետ, կեանքը եւ գործունէութիւնը*: 1924: էջ 96: Գր. 1·50

ՃԳ. Քօսեան Հ. Ռ., *Լիակատար Ցուցակ Հայերէն լրագիրներու, որոնք կը գտնուին Մխիթ. Մատենադարանի մէջ ի Վիեննա* 1794—1921: 1924: էջ Զ + 79: Գր. 1·50

ՃԴ. Ակինեան Հ. Ն. Վ., *Մատենագրական հետազօտութիւններ, քննութիւն եւ բնագիր: Հատոր Բ*: 1924: էջ 150: Գր. 2·—

ՃԵ. Վարդանեան Հ. Ա., *Հայ գրչագիրները*: 1924: էջ 55: Ֆր. 1·—

ՃԶ. Երեմեան Ա., *Պարսկահայ նորագոյն աշուղներ*: 1925: էջ 120· Ֆր. 1·50

ՃԷ. Ոսկեան Դկտր. Հ. Հ., *Երգ Երգոցի առաջին եւ երկրորդ թարգմանութիւնը*: 1924: էջ 80: Ֆր. 1·—

ՃԸ. Թէրլէմէզեան Ռ., *Քրիստափոր Կարա-Մուրզա, նրա կեանքը եւ գործունէութիւնը*: 1925: էջ 68: Ֆր. 1·—

ՃԹ. Բիւզանդացի Նորայր Ն., *Քննադատութիւն հայրուսակի*: 1925: էջ ԻԴ + 215: Ֆր. 3·50

ՃԺ. Կոզեան Դկտր. Հ. Ս., *Կամսարականները, «Տեարք Շիրակայ եւ Արշարունեաց». պատմական ուսումնասիրութիւն*: 1926: էջ 176: Ֆր. 2·—

ՃԺԱ. Ադոնց Պրոֆ. Ն., *Մաշթոց եւ նրա աշակերտները, ըստ օտար աղբիւրների*: 1925: էջ 56: Ֆր. 1·—

ՃԺԲ. Ոսկեան Դկտր. Հ. Հ., *Մատենագրական քննութիւններ*: 1926: էջ 192: Ֆր. 2·—

ՃԺԳ. Կուրտ Էքհարդ, *Տիգրան Բ. եւ հայ-լուկուլլեան պատերազմները: Աշխատասիրեց Հ. Գ. Վ. Գարանֆիլեան*: 1926: էջ 250: Ֆր. 3·—

ՃԺԴ. Սարուխան Առ., *Հոլանդան եւ Հայերը: ԺԶ.—ԺԹ. դարերում: Պատմ. ուսումնասիրութիւն, պատկերազարդ*: 1926: էջ 196: Ֆր. 3.—

ՃԺԵ. Աւդալբէգեան Թ., *Անյայտ աղանդաւորներ Հայոց մէջ ԺԶ. ու ԺԷ. դարերում*: 1926: էջ 76: Ֆր. 1·—

ՃԺԶ. Տաշեան Հ. Յ. Վ., *Բառախօսական դիտողութիւններ հայերէն գիտական լեզուի մասին*: 1926: էջ 221: Ֆր. 3·—

ՃԺԷ. Ոսկեան Դկտ. Հ. Հ., *Եղիա Աստուածատուրեան-Մուշեղեան եւ իր գրական արտադրութիւնները*: 1927: էջ 90: Ֆր. 1.—

ՃԺԸ. Ատրպետ, *Ճորոխի աւազանը*: 1929: էջ 242: Ֆր. 2·50

ՃԺԹ. Մանանդեան Պրոֆ. Յ., *Յունաբան դպրոցը եւ նրա զարգացման շրջանները*: 1928: էջ 303: Ֆր. 3·50

ՃԻ. Աւդալբէկեան Թ., *Միհրը Հայոց մէջ*: 1929: էջ 164: Ֆր. 2·—

ՃԻԱ. Գիւտ Եպսկ., *Սեւանայ վանքը*: 1929: էջ 134: Ֆր. 1·50

ճԻԲ. Սարուխան Ա., *Յարգանք հայ նահատակին: Յիշողութիւններ Յաւխանեան Բաղաքից: Մէկ պատկերով*: 1930: էջ Ը + 128: Ֆր. 1·50

ճԻԳ. Կիւլէսէրեան Բ. Եպս., *Իսլամը հայ մատենագրութեան մէջ: Ա. Գր. Տաթեւացւոյ ընդդէմ Տաճկաց. Բ. Ի Բաչունէ քաղածու: 4 տախտակով*: էջ 240: Ֆր. 3·—

ճԻԴ. Շուր Վ., *Ներոն կայսեր արեւելեան քաղաքականութիւնը: Թրգմ. Հ. Մ. Հապոզեան*: (Ընդ մամլով:)

ճԻԵ. Օսվալդ Ֆ., *Երկրախօսութիւն Հայաստանի: Թրգմ. Հ. Յ. Տաշեան*: (Ընդ մամլով:)

ճԻԶ. Մատիկեան Դկտ. Հ. Ա., *Արայ Գեղեցիկ. համեմատական—քննական ուսումնասիրութիւն*: 1930: էջք ԺԱ + 351: Ֆր. 4·—

ճԻԷ. Ակինեան Հ. Ն., *Մատենագրական հետազօտութիւններ: Հտր. Գ: Ղեւոնդ երէց եւ Մ. Խորենացի*: 1930: էջք ԺԱ + 334: Ֆր. 4·—

ճԻԸ. Ակինեան Հ. Ն. Վ., *Թուղթ Մակարայ Բ. Երուսաղեմի հայրապետի առ Վրթանէս եպիսկոպոսապետ Սիւնեաց Յաղագս կարգաց Եկեղեցւոյ: Բնագիր եւ քննութիւն*: 1930: էջ 128: Ֆր. 1·50

ճԻԹ. Երեմեան Արամ, *Փշրանքներ Ջուղահայ եւ Հնդկահայ բանահիւսութիւնից: (Տաղեր եւ ժողովրդական երգեր:)* 17—19րդ դար: 1930: էջ 80: Ֆր. 1·—

Լ. Թորգոմեան Դկտ. Վահրամ Յ., *Ծանօթագրութիւնք Ստամպօլոյ պատմութեան Երեմիա Չէլէպիի Քէօմիւրճեան: Հատոր Բ.* 1932:

ճԼԱ. Սարուխան Ա., *Աղեքսանդր Մանթաշեանց, մեծ վաճառականն եւ բարեգործը: Երեք պատկերով*: 1931: էջ 223: Ֆր. 2.50

ճԼԲ. Ֆամէր Ռ., *Հայաստանի ոստիկաններու ժամանակագրութիւնը 833—887 տարիներու շրջանին: Թրգմ. Հ. Վ. Ինգլիզեան*:

ճԼԳ. Ակինեան Հ. Ն., *Եղիշէ Վարդապետ եւ իր Պատմութիւնն Հայոց պատերազմին. քննական ուսումնասիրութիւն: Հատոր Ա.* 1932:

ճԼԴ. Ակինեան Հ. Ն., *Դասական հայերէնն եւ Վիեննական Մխիթարեան Դպրոցը*: 1932:

---